ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք







# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922Թ.

7

ՀՈՒԼԻՍ  1989

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ՀՈՒԼԻՍ
7
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Երկու շաբաթ տևեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագու-
մարը: Այն համընդհանուր ուշադրության արժանացավ: Համագումարի նյութերը, որ
հասարակական-քաղաքական մեծ արժեք են ներկայացնում, դարձան մեր երկրի
քաղաքական և սոցիալ-տնտեսական հետագա զարգացման, դեմոկրատացման, ազ-
գամիջյան հարաբերությունների կատարելագործման, ԽՄԿԿ XIX համամիութենական
կոնֆերանսի մշակած գաղափարների կենսագործման հիմնադրույթները:

Ստորև տպագրում ենք համագումարում ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտու-
ղար, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահ Մ. Ս. Գորբաչովի՝ ԽՍՀՄ ներքին և
արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների մասին զեկուցումը, նրա
եզրափակման խոսքը, ինչպես նաև ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներ ՀԿԿ
Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանի, ՀԽՍՀ գիտությունների ա-
կադեմիայի պրեզիդենտ Վ. Հ. Համբարձումյանի և ԼՂԻՄ-ից Բ. Վ. Դադամյանի ե-
լույթները:

## Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Հարգելի ընկեր դեպուտատներ:

Այս ամբիոնից մեկ անգամ չէ, որ հայտարարվել է, թե Կրեմլի այս դահլիճին
է սևեռված համընդհանուր ուշադրությունը: Չենք հաշվի, թե դա ինչ դեպքերում է
համապատասխանել իսկական իրավիճակին և ինչ դեպքերում է ցանկալին ներկա-
յացվել իրականի տեղ: Այսօր մենք կարող ենք, հենվելով մեր իմացածի վրա, լիա-
կատար իրավունքով պնդել, որ մեր համագումարին է սևեռված ամբողջ խորհրդա-
յին ժողովրդի, բովանդակ համաշխարհային հասարակայնության ուշադրությունը:

Այս օրերին Կրեմլում տեղի են ունենում այնպիսի իրադարձություններ, որոնք
նշանավորում են, որ Խորհրդային Միության քաղաքական պատմությունը երկուն-
քով, դժվարությունների ու բարդությունների դեմ մղվող պայքարում թևակոխում է
մի նոր դեմոկրատական փուլ: Հակասություններում և հաճախ բախումներում ծըն-
վում է նոր խորհրդային պառլամենտը, ձևավորվում պետական մեխանիզմի նոր հա-
մակարգը, բոլոր քաղաքացիներին գործնականում ընդգրկելով ինքնակառավարման
ոչ դյուրին աշխատանքի մեջ: Սա մեր չեխոսլովակցի բարեկամների կարծիքն է,
որն արտահայտված է «Ռուդե պրավո» թերթում:

Հինգերորդ օրն է աշխատում մեր համագումարը: Հինգերորդ օրն է, ինչ եռում
են կրքերը այս դահլիճում: Կարծում եմ, մենք բոլորս համաձայն ենք, որ համա-
գումարի աշխատանքն ընթանում է կյանքի դեմոկրատական նորացման, հասարա-
կության մեջ հեղափոխական խոր պրոցեսների բարձր ալիքով:

Այսօր հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ հենց համագումարը և այն ամե-
նը, ինչ նրան նախորդեց, սկսված բանավեճի բնույթը վերակառուցման համոզիչ
հաղթանակն են, ըստ էության մի նոր էջ մեր պետության ճակատագրում:

Ճշմարտությանը բոլորիս կողմից և մեզանից յուրաքանչյուրի կողմից վերահա-
սու լինելը դյուրին պրոցես չէ: Սակայն այդ պրոցեսը, ընկեր դեպուտատներ, մեզ
կենսականորեն անհրաժեշտ է: Եվ միանգամայն բնական է, որ մեր բոլոր գործերի
անկեղծ քննարկումը, ստեղծված կացության պատճառների, սկսված վերափոխում-
ների ընթացքի անկողմնակալ վերլուծությունը՝ այս ամենը հասարակությանը ձեր-
բազատում է ապատիայի և անտարբերության կապանքներից, առաջ է բերում մըտ-
քերի խմորում, դիրքորոշումների և առաջարկությունների բախում:

Կարծիքների բազմազանությամբ հանդերձ, համագումարում տեղի ունեցող
դիսկուսիան համահունչ է 1985 թվականի ապրիլից հետո, հատկապես XIX կուսակ-
ցական կոնֆերանսում, կուսակցության նախընտրական ծրագրում ԽՄԿԿ-ի առաջ
քաշած հիմնարար գաղափարներին: Սա ես արձանագրում եմ հսկայական գոհու-
նակությամբ, քանի որ սրանում տեսնում եմ վերակառուցման քաղաքականությանը
ժողովրդի կարևոր պաշտպանության արտահայտությունը:

Մեր համագումարը արդեն առաջին օրերին պարզորոշ արտացոլեց երկրում
տեղի ունեցող բարդ ու հակասական պրոցեսները: Այլ կերպ չէր էլ կարող լինել:
Երկարամյա լճացման հետևանքով 80-ական թվականների սկզբին երկիրը գտնվում
էր լուրջ ճգնաժամի վիճակում, որը ներառել էր կյանքի բոլոր ոլորտները: Իրավի-
ճակը կուսակցությունից պահանջեց կտրուկ շրջադարձ: Դա պատասխանատու ընտ-
րություն էր, և կուսակցությունը այն կատարեց:

Այսօր մենք բոլորս տեսնում ենք այդ ընտրության ճշտությունը: Նորացման
ալիքը արթնացրել է երկիրը: Սկսվել է, ընկերներ, հասարակական կյանքի նոր
ձևերի յուրացման պրոցես էկոնոմիկայի, քաղաքականության, մշակույթի ասպարե-
զում:

Համագումարը մեկ անգամ էլ ցուցադրեց այն բանի խոր ըմբռնումը, որ վե-
րակառուցումը մեր ճակատագիրն է, մի հնարավորություն, որ մեզ ընձեռում է
պատմությունը: Այդ հնարավորությունը չի կարելի և չպետք է ձեռքից բաց թող-
նվի: Կարծիքների ողջ բազմազանությամբ և հակասականությամբ հանդերձ, յուրօրի-
նակ համազգային համաձայնություն է առաջացել այն բանում, որ սոցիալիզմի ար-
մատական նորացման քաղաքական կուրսը այլընտրանք չունի:

Այս ամենն այսպես է: Բայց այսօր երկիրը համագումարից սպասում է այն
բանի ճշմարտացի վերլուծությունը, թե ինչպես է իրագործվում վերակառուցումը,
թե այն արդեն ինչ է տվել, որտեղ և ինչու դեռևս չի արդարացրել ակնկալիքները,
որտեղ և ինչ դժվարություններ ու պրոբլեմներ են ծագել: Իսկ գլխավորը՝ մարդիկ
սպասում են առաջընթաց ապահովող կոնկրետ վճիռների:

Ահա թե ինչու այնքան կարևոր է համագումարում սկսված խոսակցությունը, որը
ազատության և անկաշկանդության տոն տվեց նրա աշխատանքին: Մեզ բոլորիս
սպասում են ոչ հասարակ վճիռներ, մենք բոլորս պետք է դրանց համար պատաս-
խանատվություն կրենք խորհրդային ժողովրդի առջև: Բայց ես վստահ եմ, համա-
գումարը կշռադատություն և պետական իմաստություն կցուցաբերի իրավիճակը
գնահատելիս և գործնական միջոցառումները սահմանելիս:

Իհարկե, չի կարելի ակնթարթային փոփոխություններ ակնկալել կյանքի բոլոր
բնագավառներում: Հիմա հարկավոր է անհետաձգելիորեն կենտրոնացնել բոլոր
ջանքերը, որպեսզի ամենակարճ ժամկետներում լուծենք ճչացող պրոբլեմները:
Սրանում ես տեսնում եմ համագումարի, Գերագույն խորհրդի և նոր կառավարու-
թյան հիմնական խնդիրներից մեկը:

## I

Վերակառուցման հիմքը և նրա նպատակներին հասնելու վճռական գործոնը
խոր վերափոխումներն են տնտեսական և սոցիալական ոլորտներում: Այդ բնա-
գավառի աշխատանքի ամբողջ իմաստն այն է, որ էկոնոմիկան շրջվի դեպի մար-
դը, ստեղծվեն խորհրդային մարդկանց աշխատանքի և կյանքի՝ մեր ժամանակին
վայել պայմաններ: Խոսքը նախ և առաջ վերաբերում է այնպիսի հարցերի, ինչպի-
սիք են պարենավորումը, բնակարանը, սպասարկումները, առողջության պահպա-
նումը, բնության պաշտպանությունը, կրթության, գիտության և մշակույթի վերելքը:

Մեզ հարկավոր է կոլեկտիվորեն խորամուխ լինել ստեղծված իրավիճակում,
դրա գնահատմանը մոտենալով ճշմարտացի, իրատեսական և խստապահանջ դիր-
քերից: Կարևոր է տեսնել ամբողջ պատկերն այնպես, ինչպես կա, որպեսզի ամ-
րապնդենք, ավելի մեծ դինամիկա և կայունություն հաղորդենք այն ամեն դրակա-
նին, ինչ հաջողվել է անել, և միևնույն ժամանակ վճռականորեն ազատվենք նրա-
նից, ինչ եղել է պրակտիկ գործունեության քաղաքականության մեջ ինչպես կենտ-
րոնում, այնպես էլ տեղերում թույլ տրված սխալմունքների հետևանքը:

Կարծում եմ, մենք իրավունք ունենք ասելու, որ սկսվել է էկոնոմիկան դեպի
ժողովրդի սոցիալական կարիքներ վերակողմնորոշելու ռեալ պրոցես:

Վերջին երեք տարիների բնակարանային շինարարության միջին տարեկան
ծավալը նախընթաց հնգամյակի համեմատությամբ մեծացվել է 15 տոկոսով: Սա
նշանակում է, որ խորհրդային մարդիկ լրացուցիչ ստացել են շուրջ 900 հազար



բնակարան: Անցյալ տարի անհատական բնակարանային շինարարության համար
հատկացվել է 1,9 միլիարդ ռուբլու վարկ, ինչը 1985 թվականի համեմատությամբ
վեց անգամ ավելի է: Ծավալվում է բնակարանային շինարարությունը:

Ոչ դյուրին տնտեսական պայմաններում վեց միլիարդ ռուբլի լրացուցիչ հատ-
կացումներ արվեցին առողջապահության և ավելի քան վեց միլիարդ ռուբլի՝ կրթու-
թյան համար: Ավելացել է ուսուցիչների աշխատավարձը, շարունակվում է բժիշկ-
ների և մյուս բժշկական աշխատողների աշխատավարձի բարձրացումը: Ձեռնարկ-
ված միջոցների շնորհիվ այս հնգամյակում անցյալ հնգամյակի համեմատությամբ
տարեկան միջին հաշվով ավելի են գործարկվել. պոլիկլինիկաներ՝ 39 տոկոսով,
դպրոցներ՝ 37, մանկական և նախադպրոցական հիմնարկներ՝ 14, հիվանդանոցներ՝
20, ակումբներ և մշակույթի տներ՝ 54 տոկոսով: Զառամյալների և հաշմանդամների
համար 3 տարում կառուցվել է այնքան գիշերօթիկ տուն, որքան ամբողջ նախըն-
թաց հնգամյակում:

Վերջին հնգամյակում առաջին անգամ ժողովրդական սպառման ապրանքների
թողարկման աճը երկրորդ տարին անընդմեջ գերազանցում է ամբողջությամբ
վերցրած արդյունաբերության զարգացմանը: Նախորդ տարիների համեմատությամբ
կրկնապատիկ արագ՝ տարեկան 15 տոկոսով, ընդարձակվում է սպասարկումների
ոլորտը: Վերջին երեք տարում ավելի քան հինգ միլիոն ընտանիքներ ստացել են
այգեհողամասեր և կոլեկտիվ բանջարանոցներ:

Վերակառուցման արդեն առաջին տարիներին մեր առջև ծառացավ աշխատան-
քի արտադրողականությունը գիտատեխնիկական առաջադիմության միջոցով բարձ-
րացնելու պրոբլեմը: Միայն այդ հիման վրա կարելի էր էկոնոմիկայի զարգացման
և մարդկանց ապրուստի բարելավման իրական պլաններ մշակել: Ռեսուրսների ա-
պարեզում, ողջ լարվածությամբ հանդերձ, մեքենաշինության և էլեկտրոնիկայի ա-
ռաջնային ուղղությունների զարգացմանը տասներկուերորդ հնգամյակում հատկաց-
վել են փաստորեն երկու անգամ շատ կապիտալ ներդրումներ, քան նախընթաց
հինգ տարում: Եվ սա անհրաժեշտ էր անել, որովհետև այստեղ մենք խիստ հետ
ենք մնացել:

Մեր նոր ինվեստիցիոն քաղաքականության մեջ շեշտը դրվում է սոցիալական
հարցերի լուծման վրա: Բայց մենք ձգտում ենք ժամանակ չկորցնել նաև ժողովր-
դական տնտեսության գիտատեխնիկական մակարդակի բարձրացման հետ կապ-
ված նախապաշարների ստեղծման համար, որպեսզի ապագայում ևս ռեսուրսներ
ունենանք ժողովրդի ապրուստի բարելավման համար:

Մենք առայժմ չենք զգացել այդ միջոցառումների իրական հատույցը: Ժողո-
վըրդական շատ դեպուտատների հետ կայացած զրույցներում մշտապես ներկա է
առաջադիմական տեխնիկայի և սարքավորումների դեֆիցիտի թեման, ինչը կասեց-
նում է ժողովրդական տնտեսության արդիականացումը: Բայց, այնուամենայնիվ,
մեքենաշինական արտադրանքի նորացման տեմպերը սկսել են արագանալ: Արա-
գացել է աշխատանքի արտադրողականության աճը, սկսվել է նյութական արտա-
դրության ոլորտում զբաղվածների թվակազմի կրճատումը: Սա նույնպես առաջին
անգամ է մեր էկոնոմիկայի պատմության մեջ:

Ինչի՞ համար եմ այս մասին խոսում: Դուք հասկանում եք՝ ոչ նրա համար,
որ գունազարդեմ մեր գործերը, դրանք ներկայացնեմ վարդագույն երանգով: Դա
պարզապես լուրջ չէր լինի,ի նկատի ունենալով թե՛ նրանց, ովքեր նստած են այս
դահլիճում և թե՛ այն միլիոնավոր մարդկանց, ովքեր ուշի-ուշով հետևում են մեր
համագումարի աշխատանքին:

Դա անհրաժեշտ է նրա՛ համար, որ խորամուխ լինենք տեղի ունեցող պրոցես-
ների մեջ, ի հայտ բերենք ցավոտ կետերը, լարվածության յուրատեսակ հանգույց-
ները, որոնք առաջացել են ծնունդ առած դրական միտումների ու պրոցեսների
ճանապարհին:

Իսկ ինչո՞ւմն է բանը, ինչո՞ւ մենք դեռ չենք զգում նույնիսկ արդեն կատարված
դրական գործը: Նախ և առաջ այն պատճառով, որ լրջորեն կազմալուծված է երկրի
ֆինանսական համակարգը, ապակարգավորված սպառողական շուկան: Հնարավոր
ամեն տեսակ դեֆիցիտները, ապրանքային խուճապը մարդկանց մեջ առաջացնում
են խիստ ու օրինական դժգոհություն, հասարակության մեջ՝ սոցիալական լարվա-
ծություն:

Այստեղ պատճառները տարբեր են, դրանցից են թե անցյալի ծանր ժառան-
գությունը, թե վառելիքի ու հումքի համաշխարհային գների անկման, Չեռնոբիլի
ողբերգության, տարերային աղետների հետ կապված մեծ կորուստները: Բայց ընշ-

մարիտ է նաև այն, որ էկոնոմիկայի իրավիճակը մեծ չափով կապված է մեր սեփական գործողությունների հետ, իսկ երբեմն էլ արդեն վերակառուցման տարիների անգործունեության հետ:

Սկսենք նրանից, որ պետությունը շարունակում է ապրել ոչ ըստ միջոցների: Այս հնգամյակում բյուջեի ծախսերը ազգային եկամտից ավելի արագ են աճում: Այստեղից էլ բյուջեի մեծացող դեֆիցիտը: Տնտեսագիտորեն դա պարզապես անթույլատրելի է և չի կարելի դիտել այլ կերպ, քան որպես տնտեսական քաղաքականության մեջ լուրջ վրիպում, ինչի համար առաջին հերթին պատասխանատվություն են կրում ԽՍՀՄ ֆինանսների մինիստրությունն ու նրա ապարատը:

Կապիտալ շինարարության մեջ թերավարտ աշխատանքների ճակատը ոչ միայն չի կրճատվում, ինչպես որ նախատեսվում էր XXVII համագումարի որոշումներով, այլև, ընդհակառակը, զգալիորեն մեծացել է՝ 30 միլիարդ ռուբլով: Թե ԽՍՀՄ պետպլանը և թե պետշինը չդիմացան գերատեսչությունների ու տեղական մարմինների ճնշմանը, իսկ կառավարությունը հարկ եղած պահանջկոտությունը չցուցաբերեց:

Չի լուծված տնտեսական ռեֆորմի մի այնպիսի արմատական հարց, ինչպիսին է կարգավորման մեխանիզմի ստեղծումը և աշխատանքի վարձատրության ֆոնդի հետ դրա վերջնական արդյունքների շաղկապումը, առանց որի անհնար է առաջ ընթանալ տնտեսական բնագավառում: Ստեղծվում է մի այնպիսի իրավիճակ, երբ աշխատավարձի համար ծախսումները շատ ավելի արագ են աճում, քան աշխատանքի արտադրողականությունը:

Մենք բոլորս էլ կողմնակից ենք այն բանին, որ մարդիկ լավ վաստակեն, որ նրանց վաստակը ազնվորեն աճի: Բայց դա պետք է կապվի նրանց աշխատանքի ռեալ վերջնական արդյունքների հետ: Հակառակ դեպքում փողը շատ կլինի, ապրանքը՝ քիչ: Իրավիճակը բարդ է, ինչպես որ կա: Մի խոսքով, ընկերնե՛ր, հարկավոր է անհապաղ ձեռնամուխ լինել այնպիսի տնտեսական մեխանիզմի մշակմանը, որը լուծեր այդ պրոբլեմը: Առաջին քայլերն արված են, նախնական առաջարկություններ կան: Ես հույս ունեմ, որ այդ պրոբլեմները խորապես, բանիմացորեն կքննարկվեն համագումարում: Հարկավոր են նաև առաջարկներ:

Ստեղծված իրավիճակի պատճառների վերլուծությունը լիակատար չէր լինի, եթե չնշենք, որ առաջվա պես մեծ են անտնտեսվարության, աշխատանքի ցածր կարգապահության պատճառած կորուստները: Իհարկե, այս ամենը նույնպես կապված է նոր մեխանիզմի յուրացման հետ: Բայց այդ յուրացումն էլ տարբեր ձևով է տեղի ունենում: Ոմանք հարկ եղածին պես սկսել են զբաղվել տնտհաշվարկային հարաբերություններով, ինչն արդեն իր արդյունքներն է տալիս, իսկ ոմանք էլ շարունակում են ապրել հին ձևով և պարզապես դոփում են տեղում: Այստեղ ծագում է բոլոր մակարդակներում կադրերի պատասխանատվության, նրանց բանիմացության, ժամանակի պահանջներին համապատասխանության հարցը:

Մեր բոլոր թերամշակումները, վրիպումներն ու դժբախտությունները հանգեցրել են այսօրվա մեկ գլխավոր պրոբլեմի՝ շուկայի անհաշվեկշռվածության: Հենց դա է ի չիք դարձնում էկոնոմիկայի մեջ, սոցիալական ոլորտում, թող որ առայժմ ոչ մեծ, բայց արդեն սկսված դրական տեղաշարժերը: Այս հարցը քաղաքական բնույթ է ստացել:

**Անհապաղ կասեցնել բացասական երևույթների անազնացումը և առաջին հերթին կարգավորել իրադրությունը շուկայում՝ ահա սա է այսօր ամենաանհետաձգելի խնդիրը: Գլխավորն այստեղ ապրանքների արտադրության ու սպասարկումների արագ ընդլայնումն է, նպատակ ունենալով ապահովել ապրանքային ֆոնդերի առաջանցիկ աճ դրամական եկամուտների համեմատությամբ:**

Այս տարվա համար խնդիր է դրված ապրանքների արտադրությունն ավելացնել 37,5 միլիարդ ռուբլով: Իսկ որպեսզի արդեն եկող տարի զգալիորեն բարելավվի իրավիճակը, հարկավոր է, գիտնականների ու մասնագետների հաշվումների համաձայն, այդ աճը հասցնել 55—60 միլիարդ ռուբլու:

Դրան համապատասխան, արդեն մեծ աշխատանք է ծավալվել ճյուղերում ու հանրապետություններում: Կպահանջվեն հսկայական, կարելի է ասել, չափազանց մեծ ջանքեր թե՛ կենտրոնում, թե՛ տեղերում, թե՛ աշխատավորական կոլեկտիվներում: Բայց այդ պրոբլեմի վրա կատարվող աշխատանքը ցույց է տալիս, որ մենք ռեալ հնարավորություններ ունենք: Պետք է օգտագործվեն ոչ միայն թեթև ու սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության, այլև մեր էկոնոմիկայի բոլոր հատվածների ռեսուրսները, ներառյալ ծանր արդյունաբերությունն ու պաշտպանական ձեռնարկությունները: Մի խոսքով, բոլոր արտադրական կարողությունները, որոնք այ-



սօր կարելի է վերակողմնորոշել դեպի բնակչությանն անհրաժեշտ ժողովրդական
սպառման ապրանքների թողարկում, պետք է օգտագործվեն այդ նպատակով:
Կա, ճիշտ է, նաև ուրիշ տեսակետ: Գտնում են, որ այդ պրոբլեմը հարկավոր է
լուծել շուկայական էկոնոմիկայի մեխանիզմների լրիվ ներգրավման միջոցով. թող
շուկան ամեն ինչ տեղը դնի: Մենք համակարծիք չենք նման մոտեցմանը, սա մի-
անգամից կպայթեցներ ամբողջ սոցիալական իրավիճակը, կխախտեր երկրի բոլոր
պրոցեսները:

Տեղերից շատ առաջարկություններ են արվում, թե ինչպես գործի դնել առկա
ռեզերվները, շուկան հագեցնել ապրանքներով: Կառավարության նոր կազմը հան-
րապետությունների մասնակցությամբ պետք է ավարտի այդ աշխատանքը, մշակի
գործողության կոնկրետ պլան և այն ներկայացնի Գերագույն խորհրդին: Ինչ վերա-
բերում է հասարակ ապրանքների պակասությանը, ապա ըստ երևույթին, համա-
գումարում մենք պետք է մեր կառավարությունից կոնկրետ պատասխան լսենք այդ
մասին:

Եվ, իհարկե, ամենավճռական միջոցները պետք է ձեռնարկվեն **երկրի ֆինան-**
**ներն առողջացնելու և դրամական շրջանառության կարգավորման** համար: Այստեղ
գործը գլուխ չի գա առանց անհրաժեշտ ճշգրտումներ մտցնելու երկրի ամբողջ տըն-
տեսական գործունեության մեջ, առանց մշակելու արտակարգ խնայողական բյուջե:
Ըստ երևույթին, այս հարցի առթիվ էլ համագումարը կարող էր հստակ հանձնարա-
րություններ տալ կառավարությանը:

Վերջապես, չպետք է հաշվից դուրս նետել ներմուծման հնարավորությունները,
ինչպես թեթև և սննդի արդյունաբերության զարգացման, այնպես էլ սպառողական
ապրանքներով շուկայի հագեցման համար՝ կանխապայմաններ դնելով, որոնց մա-
սին արդեն մեկ անգամ չէ, որ հայտարարվել է:

Որպես առաջնահերթ կարևորության խնդիր հարկավոր է առանձնացնել Կենտ-
կոմի մարտյան պլենումի որոշումների կատարումը, որոնք նվիրված են **ագրարա-**
**յին քաղաքականության և պարենային պրոբլեմի հարցերին:** Ե՛վ այն պատճառով,
որ դա անհետաձգելի, համաժողովրդական ջանքեր պահանջող գործ է, և՛ այն
պատճառով, որ գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցումը, տըն-
տեսավարման նոր պայմանների անցումը ընթանում են մեծ դժվարությամբ, հան-
դիպում թյուրըմբռնման, իսկ երբեմն էլ ուղղակի դիմադրության:

Եկեք մեկ անգամ էլ քննարկենք պետական կարևորություն ունեցող այս հարցը,
հաշվի առնելով մարտյան պլենումի քաղաքական հիմնադրույթները, կյանքի պա-
հանջմունքները: Մենք բոլորս հանգել ենք այն հետևությանը, որ առանց գյուղում
տնտեսական հարաբերությունների վերակառուցման գործն առաջ չի գնա, պարե-
նային պրոբլեմը չի լուծվի: Որքան միջոց էլ որ մենք հատկացնենք, դա պատշաճ
արդյունք չի տա, եթե չլուծվի այդ արմատական հարցը:

Բայց եթե մենք դրան համաձայն ենք, իսկ այսպիսի համաձայնություն ձեռք
բերվեց թե՛ պլենումի նախօրեին, թե՛ հենց պլենումում, արտացոլում գտավ նրա
որոշումների մեջ, այդ դեպքում բանն ինչո՞ւմն է: Այս օրերին ես մի քանի անգամ
զրուցել եմ ագրարային հատվածում աշխատող դեպուտատների հետ: Բավական
հետաքրքրական ու հակասական պատկեր է ստացվում: Երբ զրուցում ես կոլտըն-
տեսությունների և խորհտնտեսությունների ղեկավարների ու մասնագետների հետ,
լսում ես, որ հարկավոր է էլի տեխնիկա ավելացնել, մեծացնել կապիտալ ներդրում-
ները, արագացնել գյուղի սոցիալական ապահովումը: Սա ճիշտ է, այս մասին մենք
խոսեցինք նաև մարտյան պլենումում: Հարկավոր է նախ և առաջ ամեն ինչ անել
գյուղի սոցիալական զարգացման, գյուղական աշխատավորի նորմալ կենսապայ-
մանների ստեղծման համար: Ընդ որում անել շտապ:

Բայց ես զգացել եմ, որ որոշ ընկերներ այնքան էլ հակված չեն տնտեսավար-
ման նոր ձևերին անցնելուն՝ «կոոպերատիվների կոոպերատիվներ» ստեղծելուն,
վարձակալությանը, գյուղացիական տնտեսություններին: Նրանցից մեկը ինձ նույ-
նիսկ ասաց. «Այդ ո՞վ է Ձեզ, Միխայիլ Սերգեևիչ, վարձակալության գաղափարը
հուշել»:

Իսկ երբ խոսում ես վարձակալների հետ (իսկ նրանք այստե՜ղ նույնպես ներ-
կա են ժողովրդական դեպուտատների հետ), նրանց կարծիքն ուրիշ է: Նրանք
կողմնակից են տնտեսական հարաբերությունների վերակառուցմանը գյուղում, շա-
հագրգիռ կերպով պաշտպանում են Կենտկոմի մարտյան պլենումի հիմնադրույթ-
ները դրա վերաբերյալ: Բայց դրա հետ մեկտեղ ասում են, որ չնայած այդ որոշում-
ներին, վարձակալության հրամանագրին, կառավարության համապատասխան որո-

շումներին, տնտեսավարման նոր ձևերը ձգձգվում են, դեմ առնում ամեն կարգի բյուրոկրատական խոչընդոտների:

Վարձակալներն ասում են, որ տեղական մարմինները շարունակում են հրամաններ արձակել կոլտնտեսություններին և խորհտնտեսություններին, իսկ կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները, իրենց հերթին, չեն ցանկանում հրաժարվել հենց գյուղացիների, խորհտնտեսությունների աշխատողների նկատմամբ այդ նույն հրամայական մեթոդներից: Նրանցից շատերը գերադասում են գործը վարել հին ձևով, խանգարում են տնտհաշվարկային հարաբերությունների ծավալմանը գյուղում, պատճառաբանելով, թե գյուղացիները չեն ցանկանում վարձակալել հողն ու արտադրության միջոցները: Դա ես նույնպես լսել եմ տնտեսական աշխատողների հետ կայացած զրույցներից մեկում:

Ըստ երևույթին, այստեղ բախվում են տարբեր շահեր: Հարկավոր է, ընկերներ, որ մենք կարծիքներ փոխանակենք դրա շուրջը, շիտակ խոսենք, թե ինչ է հարկավոր, որպեսզի պլենումի կարևոր որոշումները չմնան օդում առկախ, իսկ ամենագլխավորը՝ որ բարելավվի պարենի գործը:

Չէ՞ որ Կենտկոմի մարտյան պլենումի քաղաքական հիմնադրույթների և որոշումների ամբողջ իմաստն այն է, որ տնտեսավարման նոր ձևերի միջոցով մարդը վերադարձվի իր հողի վրա, նրա ձեռքը տրվեն արտադրության միջոցները, նրան դարձնեն հողի տերը և դրանով իսկ անձնական շահագրգռություն արթնացնեն, ուժեղացնեն նյութական շահագրգռությունը գյուղատնտեսական արտադրանքի ավելացմամբ:

Դրա հետ մեկտեղ ուզում եմ ընդգծել առաջնահերթ կարգով գյուղի սոցիալական բարեկարգմամբ, գյուղում առևտրի, բնակարանային շինարարության, կոմունալ տնտեսության, ամբողջ ենթակառուցվածքի, հատկապես ճանապարհների զարգացմամբ զբաղվելու անհրաժեշտությունը: Երկրի բոլոր ռեգիոններում գյուղական բնակիչները սրությամբ դնում են գազիֆիկացման հարցը: Ունենալով վիթխարի հնարավորություններ, մենք իրավունք չունենք խուսափելու նաև այդ հարցերի լուծումից:

Ագրարային հատվածը ներկայացնող ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատները ասում են, որ շատ դանդաղ են վերակառուցվում այն մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնք գյուղի համար արտադրում են տեխնիկա և պարարտանյութեր: Այստեղ մենք պետք է պարզենք: Մի կողմից երկրում արտադրվում է շատ տեխնիկա, մյուս կողմից համատարած ճիչեր են այն մասին, որ այն չի բավականացնում: Նշանակում է, արտադրում են ոչ այն տեխնիկան: Ուրեմն եկեք վերջապես անհրաժեշտ ուղղումներ մտցնենք մեր ծրագրերում, որպեսզի արդեն առաջիկա տարիներին կազմակերպենք այնպիսի մեքենաների համակարգերի թողարկումը, որոնք անհրաժեշտ են բոլոր ռեգիոնների կոլտնտեսություններին ու խորհտնտեսություններին, վարձակալներին, անձնական օժանդակ տնտեսություններին: Եվ, ինչը պակաս կարևոր չէ, մատչելի գնով: Ագրարային հատվածի ներկայացուցիչները ասում են, որ մեքենաշինարարները բառացիորեն ուռճացրել են ամբողջ տեխնիկայի գները, թեև որակական առումով այն իր արտադրողական հնարավորություններով քիչ է փոխվել:

Հարկավոր է խորհրդակցել, ընկերներ, առաջիկա ժամանակաշրջանում սոցիալական քաղաքականության նաև մյուս գերակայությունների շուրջը: Առաջին տեղերից մեկում պետք է դնել բնակչության **սակավ ապահովված** մասի՝ կենսաթոշակառուների, բազմազավակ ընտանիքների, որբերի և հաշմանդամների **կենսամակարդակի բարձրացման** հարցը:

Այս պրոբլեմը արդի պայմաններում ունի հսկայական սոցիալ-քաղաքական նշանակություն: Չէ՞ որ խոսքը ցածր եկամուտներ ունեցող ավելի քան 40 միլիոն մարդու մասին է: Որքան էլ դա դժվար լինի լուծել ներկայիս ծանր ֆինանսական վիճակի պայմաններում, դա պետք է անել, ըստ որում՝ հնարավորին չափ շուտ: Այս ուղղությամբ կարևորագույն միջոցառումների թվում է՝ կենսաթոշակների մասին նոր օրենքի ընդունումը, որի նախագիծը պատրաստում է կառավարությունը: Այն կներկայացվի ԽՍՀՄ Գերագույն խորհրդին և կդրվի համաժողովրդական քննարկման: Կարծում եմ, որ նման կարևորություն ունեցող օրենքը պետք է այնուհետև ընդունվի համագումարում:

Յուրաքանչյուր մարդու շահերն է շոշափում բուժսպասարկման որակը: Ազգի առողջությունը բոլոր գործերում նրա հաջողության կարևորագույն պայմանն է: Ջանքեր չենք խնայի, ընկերներ, որ ամբողջ երկրում ծավալվի արդիական ապա-



րատներով հանդերձավորված հիվանդանոցների ու պոլիկլինիկաների ցանց, մեկընդմիշտ լուծվի դեղամիջոցներով բնակչության ապահովման պրոբլեմը:

Բոլոր դժվարություններով հանդերձ, մենք այդ նպատակների համար միջոցներ գտնում ենք և, ես հույս ունեմ, կգտնենք: Բայց ահա այդ միջոցների իրացման գործը առայժմ խիստ անբավարար է: Իսկ չէ՞ որ մենք նոր ենք, ինչպես հարկն է, ծավալում երկրում առողջապահության արդիական բազայի ստեղծման աշխատանքը: Այստեղ մեղքը շինարարներինն է և, ես գտնում եմ՝ իշխանության տեղական մարմիններինը:

Մեկ այլ հանգամանք էլ: Արմատական տնտեսական ռեֆորմի կապակցությամբ ձեռնարկություններում և կառավարման տեղական մարմիններում կուտակվում են ֆինանսական և նյութական ռեսուրսներ: Ինձ թվում է, որ աշխատավորական կոլեկտիվները կարող էին միավորել իրենց ջանքերը բնակչության բուժսպասարկման բազան ընդլայնելու գործում:

Այս բոլոր հարցերը պետք է առնել դեպուտատական խիստ հսկողության տակ:

Առողջ ապրելակերպի հաստատումը պահանջում է առանձնահատուկ **ուշադրություն բնական միջավայրի պահպանության** նկատմամբ կամ, ինչպես հիմա ընդունված է ասել, էկոլոգիական անվտանգության նկատմամբ: Այստեղ վիճակը տագնապալի է, եթե չասենք ավելին: Երկրի հարյուրից ավելի քաղաքների մթնոլորտում վնասակար նյութերի քանակը գերազանցում է թույլատրելի նորմաները: Տագնապալի իրադրություն է ստեղծվել ջրային ռեսուրսների, գետերի, անտառների պահպանության, բնական հանածոների օգտագործման ասպարեզում, ամենուրեք սուր է ծառացած հողի, անգամ ոռոգելի հողի պահպանման պրոբլեմը: Հարկավոր է գործել, ընդ որում՝ անհապաղ:

Այստեղ մենք պետք է գնանք երկու ուղիով: Նախ և առաջ, հարկավոր է ունենալ արդեն կուտակված պրոբլեմների լուծման հստակ ծրագիր: Դա վերաբերում է արդյունաբերությանը, գյուղատնտեսությանը, ջրային ռեսուրսներին, մի խոսքով՝ բնակության ամբողջ միջավայրին:

Ինչպես ինձ թվում է, ազգային ծրագիրն այս առումով ձգձգվում է: Մենք պետք է համագումարում միանգամայն որոշակի պահանջներ ներկայացնենք նրանց, ովքեր պետք է արագացնեն այդ աշխատանքը: Այնուհետև, կարևոր է, որ այդ գործի համար հատկացվող միջոցները լիովին իրացվեն: Ահա մենք ասում ենք, թե շատ պրոբլեմներ են կուտակվել, որ դրանք հարկավոր է լուծել անհետաձգելիորեն, այնպես, ինչպես բնակարանի, պարենի, ապրանքների հարցերը: Սա ճիշտ է: Եթե այժմ չզբաղվենք բնակության միջավայրով, ապա մեզ փորձանք է սպասում: Այն արդեն մեր դուռն է ծեծում, մենք արդեն դրան, այսպես ասած, ընդհուպ բախվել ենք: Բայց նայեք. բնապահպանական նպատակներով ռեսուրսներն առայժմ քիչ են հատկացվում, թեև դրանք ամեն տարի ավելացվում են և բացի այդ, դրանք կեսից պակաս չափով են օգտագործվում: Այնպես որ, ընկերներ, եկեք ոչ միայն այդ հարցերը բարձրացնենք քննադատության առումով, այլև զբաղվենք կոնկրետ գործերով, դրանք լուծենք պրակտիկայում: Ավելի շատ գործարարություն ու պահանջկոտություն:

Եվ երկրորդ, ոչ պակաս կարևոր ուղղությունը: Պետք է գործն այնպես դնել, որ յուրաքանչյուր նախագիծ և գիտատեխնիկական լուծում ապահովի էկոլոգիական անվտանգությունը: Դրա համար դրանք պետք է խիստ ստուգման ենթարկվեն էկոլոգիական մաքրության տեսակետից: Իսկ մենք, որպեսզի էժանացնենք շինարարությունը, շարունակում ենք անցկացնել էկոլոգիական անվտանգության տեսակետից ոչ պիտանի նախագծեր: Ես զրուցել եմ Ամուրի Կոմսոմոլսկի դեպուտատներից մեկի հետ, որտեղ մի ժամանակ եղել եմ: Այնտեղ աշխատավորները գանգատվում էին, թե հարկ է լինում կահույքն այդ երկրամաս բերել կենտրոնից: Եվ մինիստրը, այն ժամանակ ընկեր Բելոուսովն էր, ասաց, որ հնարավորություններ կան այստեղ թողարկելու 20 միլիոն ռուբլու կահույք: Լավ բան է: Վերցրել, արտասահմանից սարքավորումներ ենք գնել, բայց միայն չենք վերցրել այն մասը, որը կապված է էկոլոգիայի հետ: Ու՞մ է պետք այսպիսի խնայողությունը: Եվ Ամուրի Կոմսոմոլսկում արդեն միտինգներ են տեղի ունենում այս առիթով: Մի խոսքով, կրկնում եմ ասածս, հարկավոր է, որ բոլոր նախագծերը էկոլոգիական մաքրության առումով խիստ ստուգման ենթարկվեն:

Ինչպես դուք գիտեք, նախընտրական կամպանիայի ընթացքում սրությամբ քննարկվել են մի շարք ջրանցքների, ատոմակայանների, քիմիական ձեռնարկությունների շինարարության հարցերը էկոլոգիական անվտանգության տեսակետից:

տեգրացնող ուժի դերը, առանց որի չի կարող հաջող ավարտի հասցվել սոցիալիզմի նորացման գործը: **(Ծափահարություններ):**

Վերակառուցումը խորապես դեմոկրատական հիմքերի վրա փոխում է կուսակցության դերը, նրա փոխգործողությունը պետության հետ, հասարակական կազմակերպությունների հետ: Կուսակցության համար այսօր գլխավորն է արտահայտել և ներդաշնակեցնել բնակչության, ամբողջ ժողովրդի հիմնական սոցիալական խմբերի, խավերի շահերը, համախմբում ապահովել հասարակության քաղաքական սիստեմի բոլոր օղակների գործունեության մեջ:

Կուսակցությունը երկխոսություն և համագործակցություն է առաջարկում բոլոր հասարակական կազմակերպություններին ու շարժումներին, նրանց հրավիրում հասարակության վերակառուցման ու նորացման համատեղ գործողությունների:

Քաղաքական ռեֆորմի երկրորդ փուլի կենտրոնական հարցը **հանրապետություններում, երկրամասերում և մարզերում, քաղաքներում ու շրջաններում իշխանության և կառավարման մարմինների նոր կառուցվածքի ստեղծումն է:** Դա պահանջում է նախ և առաջ անհրաժեշտ շտկումներ մտցնել ընտրական համակարգի մեջ, հաշվի առնելով տեղի ունեցած ընտրական կամպանիայի արդյունքներն ու դասերը: Այդ աշխատանքին պետք է ձեռնամուխ լինել անհետաձգելիորեն, քանի որ, ինչպես ես եմ հասկանում, դրա օգտին արտահայտվեցին այստեղ ելույթ ունեցող բոլոր ժողովրդական դեպուտատները:

Արդյունքում մենք պետք է ստանանք այնպիսի ընտրական օրենք, որը ներառներ ամբողջ լավը, ինչն ապահովեց անցած ընտրությունների դեմոկրատական բնույթը, և, իհարկե, վերացներ բացահայտված թերությունները:

Մյուս, ոչ պակաս կարևոր հարցը: Ներկայացուցչական նոր մարմինները պետք է ստանան ոչ միայն իրավաբանական լիարժեք լիազորություններ, այլև իշխանության իրական լծակներ: Իսկ դրա համար հարկավոր է, որ Գերագույն խորհուրդը անմիջապես էլ ձեռնամուխ լինի հանրապետական տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման մասին, ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին օրենքների նախապատրաստմանը: Ըստ երևույթին, հարկ է հանձնաժողովների և պալատների աշխատանքն այնպես կառուցել, որ այդ կարևոր փաստաթղթերը քննարկելու և ընդունելու համար նախապատրաստվեին արդեն մինչև ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարը:

Խոսքը այն սկզբունքային հարցերի մասին է, որոնք վերաբերում են ֆեդերատիվ պետության կառուցվածքին, տեղական խորհուրդների իրավունքներին ու հնարավորություններին, մեր ամբողջ քաղաքական համակարգում ինքնակառավարման հիմունքների ընդլայնմանը: Ես ուղղակի կասեմ. «Ամբողջ իշխանությունը խորհուրդներին» կարգախոսը առանց այդ օրենքների մշակման և ընդունման կկախվի օդում, կմնա սոսկ կարգախոս, կոչ: **(Ծափահարություններ):** Ակներև է, որ այս համագումարում ևս ժողովրդական դեպուտատները սանելիք կունենան այդ առթիվ: Դա արժեքավոր ներդրում կլինի փաստաթղթերի վրա հետագայում տարվելիք աշխատանքում:

Նման մոտեցման համատեքստում պետք է որոշել հանրապետական և տեղական խորհուրդների ընտրությունների անցկացման ժամկետները: Ինչպես հիշում եք, մենք մտադիր էինք դրանք անցկացնել այս տարվա աշնանը: Համենայնդեպս, դրանից էինք մենք ելնում XIX կուսակցական կոնֆերանսում՝ քննարկելով առաջիկա քաղաքական ռեֆորմի հարցերը:

Բայց, ըստ երևույթին, մենք ամեն ինչ չէ, որ կարողացել էինք կշռադատել ու կանխատեսել: Քաղաքական ռեֆորմի իրական պրոցեսները հանգեցնում են նրան, որ ընտրությունների անցկացման համար իրավական բոլոր նախադրյալների ստեղծումը, դրանց հիմնավոր նախապատրաստումը էլ ավելի մեծ աշխատանք են պահանջում: Այն պետք է սկսել արդեն այժմ, բայց, ըստ երևույթին, միայն աշնանը՝ երկրորդ համագումարում, մենք կկարողանանք ընդունել հանրապետական և տեղական խորհուրդներին վերաբերող օրենքներ:

Պետք է ասեմ, որ կուսակցական և խորհրդային մարմիններից առաջարկություններ են ստացվում հերթական ընտրությունները անցկացնել սահմանադրությամբ նախատեսված ժամկետներում, այսինքն գալիք գարնանը, երբ լրանում են գործող խորհուրդների լիազորությունները:

Ինչպես քաղաքական ռեֆորմի առաջին փուլը, այնպես էլ այն ամենը, ինչ արվելու է նրա հերթական փուլերում, առաջընթաց է **սոցիալիստական իրավական պետություն ստեղծելու ճանապարհին:** Բայց, հասկանալի է, դրանով չեն սպառվում



նրա շինարարության հետ կապված խնդիրները: Այդ խնդիրը զգալիորեն ավելի մասշտաբային է, ընդգրկում է հասարակության կյանքի դեմոկրատական կարգավորման լայն շրջանակ:

Այստեղ առաջին գիծ է դուրս գալիս անձի իրավական պաշտպանվածությունը, բոլոր պայմանների ապահովումը, որպեսզի քաղաքացին կարողանա օգտվել բոլոր իրավունքներից և, բնականաբար, կատարի իր պարտականությունները պետության հանդեպ:

Իրավական պետության կառուցման մեր բոլոր քայլերը, դրանց արդյունավետությունը պետք է չափել գլխավոր չափանիշով՝ թե դրանք ինչ են տալիս խորհրդային մարդուն:

Հայտնի է, թե ընտրողները ընտրությունների ընթացքում ինչ սրությամբ էին դնում քաղաքացու արժանապատվության, նրա իրավական պաշտպանվածության հարցը: Դա մեծապես նախորդ քաղաքական պրակտիկայի հետևանքն է, որը ելնում էր մարդկանց շահերի նկատմամբ պետության շահերի առաջնայնությունից: Պետական շահերի պաշտպանության դրոշով հաճախ արդարացվում էին կամայականության, քաղաքացիների սահմանադրական իրավունքների խախտումների, նրանց նկատմամբ բյուրոկրատական վերաբերմունքի փաստերը:

Մենք վճռականորեն մերժում ենք նման մոտեցումը՝ որպես անհամատեղելի ընդհանուր դեմոկրատական և սոցիալիստական արժեքների ու իդեալների հետ: **(Ծափահարություններ):** Չի կարող ընդհանուրի բարօրությունը կառուցվել անարդարության վրա, որ թույլ տրված լինի թեկուզև մեկ մարդու նկատմամբ: **(Ծափահարություններ):** Յուրաքանչյուր քաղաքացի իր արարքների համար պատասխանատվություն է կրում հասարակության հանդեպ, բայց հասարակությունը, պետությունը ևս քաղաքացիների հանդեպ պատասխանատվություն են կրում նրա օրինական իրավունքների պահպանման, անձի և ունեցվածքի անձեռնմխելիության համար:

Այս բոլորը ընդհանուր սկզբունքներ են, ընկերներ: Որպեսզի դրանք իսկապես գործեն, մտնեն մեր հասարակական պրակտիկայի մեջ, հարկ կլինի ընդունել մի ամբողջ շարք օրենքներ: Մենք պետք է ժամանակին, նոր պատկերացումներին ու խնդիրներին համապատասխանեցնենք թե քրեական, թե քաղաքացիական, թե ընտանեկան օրենսդրությունը: Այլ կերպ ասած, նորացված հասարակությունը պետք է հենվի նորացված օրենսդրության վրա: Դրանց մի մասն արդեն մշակվում է և մոտ ապագայում կարող է դրվել Գերագույն խորհրդի հանձնաժողովների քննարկմանը: Դրանք են խղճի ազատության մասին, մամուլի մասին, հասարակական կազմակերպությունների մասին, երիտասարդության մասին և մի շարք այլ օրենքների նախագծերը:

Մարդու իրավունքների հարցերի վերաբերյալ մեր օրենսդրության նորացման անհրաժեշտությունը պայմանավորվում է նաև նրանով, որ Խորհրդային Միությունը դարձել է Վիեննայի համաձայնագրերի մասնակիցը, և մեզանում գործող իրավական նորմերը պետք է համապատասխանեն միջազգային պայմանագրերին:

Մի խոսքով, Գերագույն խորհուրդը, ապա նաև համագումարը պետք է հիմնավորապես աշխատեն, որպեսզի իրավական կայուն հիմք ստեղծեն հասարակական կյանքի բոլոր կողմերի համար: Չգիտեմ, ինչ-որ մեկը ճիշտ էր հաշվել, թե ոչ, բայց երեկ այստեղ հնչեց, որ մենք պետք է 50 օրենք մշակենք: Դա վերաբերում է ոչ միայն անհատի վիճակին, քաղաքացիական հարաբերություններին, այլև իշխանության ու կառավարման, տնտեսության, հասարակական կարգուկանոնի բուն մարմինների գործունեությանը և այլն:

Ուզում եմ ընկերներ, արտահայտել իմ դրական վերաբերմունքը դեպուտատների այն հարցադրմանը, որ օրենքների համաժողովրդական քննարկման հետ մեկտեղ, ինչը մեզանում սովորական պրակտիկա է դարձել, դրանցից ամենակարևորները դրվեն հանրաքվեի: **(Ծափահարություններ):**

Սոցիալիստական իրավական պետության ստեղծման ճանապարհին շատ կարևոր փուլ է դատաիրավական ռեֆորմը: Ինչպես գիտեք, անցած աշնանը սահմանադրության մեջ լրացումներ անելիս նրա մեջ մտցվեցին ժողովրդական դեպուտատների վերադաս խորհուրդների կողմից ժողովրդական դատավորներ ընտրելու դրույթները: Դատարանի անկախության այս կարևորագույն պայմանը, ի դեպ, համաժողովրդական պահանջ է:

Բայց այդ ուղղությամբ լուծվելու են դեռևս կարևոր շատ հիմնախնդիրներ ու նախ և առաջ բարձրացվելու է այն կադրերի մակարդակը, որոնք կոչված են ար-

դարադատություն իրագործելու, ապահովելու խստագույն օրինականությունը, պահպանելու հասարակական կարգը: Հարկավոր է մշակել և իրականացնել երկրում իրավաբանական կրթության ընդլայնման լայն ծրագիր, հոգ տանել դատաքննչական մարմինների նյութական բազայի, այդ ոլորտի աշխատողների նյութական վիճակի մասին: Պետք է գտնվեն շատ հարցերի լավագույն լուծումներ, որոնք ներկայումս վեր են հանվում դատական ռեֆորմի առնչությամբ: Դրանք շոշափվեցին նաև մեր համագումարի նիստերում:

Ես նկատի ունեմ երդվյալ ատենակալների դատարան մտցնելու հնարավորությունը, քննության կարգը, դրա վերահսկողությունը և այլն: Այս ամենը հարկավոր է քննարկել: **(Ծափահարություններ):**

Դատական ռեֆորմի ուղղությամբ կատարվելիք ամբողջ հսկայական աշխատանքը հարկավոր է, իհարկե, ոչ ինքնըստինքյան, այլ ելնելով երկրում իրավակարգի ամրապնդման շահերից: Այս խնդիրը առանձնակի հրատապություն է ձեռք բերել հանցագործությունների, այդ թվում այնպիսի վտանգավոր հանցագործությունների քանակի ավելացման կապակցությամբ, ինչպիսիք են ծախվածությունը, մաֆիան, դրամաշորթությունը, կաշառակերությունը: Հրատապ պրոբլեմ է պայքարը խուլիգանության դեմ, որը խաթարում է մարդկանց կյանքի, աշխատանքի ու հանգստի բնականոն պայմանները:

Կարծում եմ, դեպուտատները կհամաձայնեն այն բանի հետ, որ մենք պետք է ամրապնդենք, աջակցենք իրավապահ մարմիններին, բայց և նրանցից արդյունավետ միջոցներ պահանջենք հանցագործություններն արմատախիլ անելու համար: Դեմոկրատիան կարող է գոյություն ունենալ միայն բոլորի՝ պետության, հասարակական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոլեկտիվի և յուրաքանչյուր քաղաքացու կողմից իրենց իրավունքների ու պարտականությունների հստակ իրականացմամբ: Սա աքսիոմա է:

Չեմ կարող չասել նաև այն մասին, ինչն այժմ մեր մարդկանց հարանում անհանգստության առարկան է: Ես նկատի ունեմ առանձին անձանց ու խմբերի փորձերը՝ իրենց անձնական կամ խմբային նպատակներին հասնելու զանգվածային անկարգությունների կազմակերպման, բռնացման գործողությունների հրահրման միջոցով: Նմանօրինակ բաներն անհանդուրժելի են իրավական պետության մեջ: **(Ծափահարություններ):**

Օրինական նպատակները կարող են և պետք է ձեռք բերվեն հենց օրինական միջոցներով, ապօրինիները՝ խափանվեն: Եթե մենք չկարողանանք պաշտպանել դեմոկրատիան, հրապարակայնությունը, դա կարող է ամենադրամատիկ կերպով անդրադառնալ երկրի ու ժողովրդի ճակատագրի վրա:

Մի խոսքով, հարկավոր է բոլոր հակաիրավական գործողություններին հակադրել ոչ միայն բանականության փաստարկները, խղճին ուղղված կոչերը, հասարակայնության կարծիքը, որն, իհարկե, պետք է լինի առաջին պլանում, այլև իրավունքի ուժը: Միայն այսպես կարող է ապրել ու զարգանալ դեմոկրատական հասարակությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

Մեր համագումարը չի կարող անուշադրության մատնել նաև վերաբերմունքը այն հարցի նկատմամբ, որի առթիվ հասարակայնության մեջ լուրջ անհանգստություն է առաջանում: Ես նկատի ունեմ կարգապահության և կարգուկանոնի ներկա վիճակը: Եթե ուղղակի ասենք, ապա այն մեզ չի բավարարում, վճռական բարեփոխումներ է պահանջում: Ցածր կարգապահության, պաշտոնական պարտականությունների վատ կատարման պատճառով մենք կրում ենք մեծ կորուստներ՝ թե՛ տնտեսական, թե՛ բարոյական: Աշխատանքի ոլորտում՝ առաջին հերթին:

Սա ծայրահեղ ատիճան բացասաբար է անդրադառնում մեր ամբողջ հասարակության վրա, անպատասխանատվությունն ու կարգուկանոնի բացակայությունը կազմալուծում են մարդկանց ամենօրյա կյանքը, անհարկի լարվածություն մտցնում նրա մեջ, իսկ այլ կերպ ասած, մարդկանց հանում են ափերից, դժգոհություն առաջացնում նրանց մեջ: Ընդ որում չգիտես ինչու պախարակելի է դարձել հարց բարձրացնել կարգապահության մասին, կարգուկանոն պահանջել: Ոմանք այդպիսի, շատ երկչոտ, փորձերում համարյա տեսնում են դեմոկրատիայի խարխլում, հրամայական համակարգը, մարդկանց մեջ ստրկական հոգեբանությունը վերածնելու ձգտում:

Իհարկե, ոմանց համար կարգապահության մասին խոսակցությունները ոչ այլ ինչ են, եթե ոչ հին ժամանակների նկատմամբ կարոտ: Այս բանը երևի կա, ընկերներ: Ի՞նչ ասես այստեղ. խոսում է կարգապահության մասին, այնինչ մտածում



է ուժեղ ձեռք: «Ասված է՝ արա և էլ մի քննարկիր» կարգին վերադառնալու մասին: Սա երևի կա:

Բայց, ընկերներ, այսօր գլխավորն այլ է: Մենք բոլորս սեփական օրինակով զգում ենք, թե ինչի է հանգեցնում ցածր կարգապահությունը, ուստի և համագումարում պետք է անսասան դիրք բռնենք. առանց կարգապահության, առանց կարգուկանոնի վերակառուցման գործն առաջ չի գնա: **(Ծափահարություններ):**

Դեմոկրատացումը մարդկանց սոցիալական ակտիվության աճի հիման վրա կարգապահության բարձրացման կարիք ունի: Ամեն տեսակ անկազմակերպվածության մենք պետք է հակադրենք բարձր պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Եվ չընկրկենք բարձրացնելու պահանջկոտությունը կարգապահության ու կարգուկանոնի համար:

## III

Ընկերներ, համագումարի աշխատանքի արդեն առաջին օրերին վերստին ի հայտ եկան **ազգային հարցի** սրությունը, ազգամիջյան հարաբերությունների բարդությունը: Բազմազգությունը մեր պետության և հասարակության իսկապես եզակի հատկանիշն է: Մի կողմից դա նրա ուժի աղբյուրն է, մյուս կողմից՝ ազգային քաղաքականության մեջ նվազագույն շեղվածքների դեպքում այդ ուժը նաև կարող է դառնալ պետության թուլության, հասարակության մեջ անկայունության պատճառ՝ անկանխատեսելի ծանր հետևանքներով:

Ժամանակը լույս սփռեց Վլադիմիր Իլյիչ Լենինի մշակած ազգային քաղաքականության ճշտության վրա: Մեր բոլոր ժողովուրդներին այդ քաղաքականության տված արդյունքները անկարելի է գերագնահատել: Կատարվել է ազգային ճնշման ու անհավասարության հաղթահարման, մեր երկրում բնակվող բոլոր ազգերի էկոնոմիկայի վերելքի և մշակույթի զարգացման հսկայական աշխատանք: Մեր փորձի նկատմամբ ուշադրություն է ցուցաբերվել ամբողջ աշխարհում, և դա ոչ մի դեպքում չպետք է մոռանալ:

Սակայն 30-ական թվականներին լենինյան ազգային քաղաքականությունը ենթարկվեց շատ կոպիտ խեղաթյուրումների և ձևախեղումների: Դրանք իրենց վրա զգացին փաստորեն բոլոր ժողովուրդները: Ազգային հարաբերությունների բազմանիստ բնույթի պարզունակացված ըմբռնումը, ունիտարիզմի միտումների խրախուսումը, ազգային զարգացման յուրահատկության բացասումը, ամբողջ ազգերի ներկայացված քաղաքական մեղադրանքները՝ սրանից բխող կամայականությամբ ու անօրինականությամբ հանդերձ, մարդկանց ազգային զգացմունքների անթույլատրելի նույնացումը ազգայնական դրսևորումների հետ՝ այս ամենը եղել է մեր կյանքում: Այստեղ, ինչպես ասում են, ոչ կարելի է ավելացնել, ոչ էլ պակասեցնել:

Մենք շատ բարդ ժառանգություն ստացանք, ընդ որում ճահճացման ժամանակներում ազգային հարաբերությունների բացասական պրոցեսները կամ անտեսվում էին, կամ էլ լռության մատնվում, ինչը հանգեցնում էր այդ պրոցեսների էլ ավելի մեծ սրման:

Դրանք վաղ թե ուշ պետք է ջրի երես դուրս գային: Դեմոկրատացումը և հրապարակայնությունը հնարավորություն ընձեռեցին տեսնել ողջ ճշմարտությունը և սկսել թույլ տրված շեղվածքների շտկումը, անարդարության վերացումը: Բայց, հարկ է խոստովանել, որ վերակառուցման սկզբում մենք ամենևին էլ լրիվ չէինք գնահատում ազգային քաղաքականության նորացման անհրաժեշտությունը: Հավանաբար, նաև հապաղում թույլ տրվեց մի շարք անհետաձգելի հարցերի լուծման գործում: Մինչդեռ տնտեսական ու սոցիալական պրոբլեմների պատճառով կուտակված բնական դժգոհությունը սկսեց ընկալվել որպես ազգային շահերի ոտնահարում: Չարարկելով այդ ընդհանուր դժվարությունները, որոշակի տարրեր ձգտեցին էլ ավելի բարդացնել իրավիճակը: Դա մի շարք հանրապետություններում հանգեցրեց անկարգությունների, առաջացրեց բոլորին հայտնի ողբերգական հետևանքները՝ մարդկային զոհերով հանդերձ:

Թույլ տվեք այս ամբիոնից՝ ժողովրդական դեպուտատների համագումարի ամբիոնից, մեր ընդհանուր վիշտն ու ցավը հայտնել անմեղ մարդկանց զոհվելու առթիվ: Դա չպետք է կրկնվի:

Պարզ է, որ մենք պարտավոր ենք լիովին առողջացնել ազգային հարաբերությունները, դրանք ազատել այն ամենից, ինչը հակասում է մեր բարեկամությանն ու գաղափարախոսությանը, սոցիալիզմի մարդասիրական սկզբունքներին:

Խոսելով ազգային քաղաքականության նորացման մասին, մենք ի նկատի ու-

նենք ներկա օրվա իրականություններին այդ քաղաքականության համապատասխանեցման անհրաժեշտությունը: Փոխվել են բոլոր հանրապետությունների էկոնոմիկան, ժողովրդագրությունը, սոցիալական և ազգային կառուցվածքը: Աճել է ազգային ինքնագիտակցությունը, հոգևոր կյանքում երևան են եկել նոր պահանջմունքներ: Ազգային քաղաքականության շատ կողմեր այսօր ներկայանում են նոր լույսով:

Կարելի է ասել հիմա ստեղծվում է այնպիսի քաղաքական մեխանիզմ, որը կոչված է ապահովել բանական և արդարացի մոտեցում ազգամիջյան հարաբերությունների հարցերի նկատմամբ, այնպիսի վճիռների մշակում, որոնք համապատասխանեին ինչպես խորհրդային ազգերից յուրաքանչյուրի շահերին, այնպես էլ համաժողովրդական շահերին: Ես ի նկատի ունեմ թե՛ այդ հարցերի վերաբերյալ արդեն հրապարակված օրենքների նախագծերը, թե՛ Կենտկոմի հատկապես այդ հարցերին նվիրված պլենումի նախապատրաստման մեծ աշխատանքը և թե՛, ինչը հատկապես կարևոր է, Գերագույն խորհրդի, նրա հանձնաժողովների առաջիկա աշխատանքը, որի շրջանակներում ազգային պրոբլեմները պետք է ստանան կոմպլեքսային և համակողմանի լուծում: Ազգային ինքնորոշման Լենինի առաջ քաշած սկզբունքը եղել է և մնում է կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության գլխավոր տարրերից մեկը: Այդ սկզբունքն է սոցիալիստական պետականության հիմքում դրվել Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը ստեղծելիս:

Թե՛ պատմական կարգի փաստարկները, թե՛ տնտեսագիտական հաշվարկը, թե՛ քաղաքական գիտակցությունը, թե՛ պարզապես ողջախոհությունը, ժողովուրդների փորձը, վկայում են բոլոր խորհրդային ազգերի զարգացման կենսական անհրաժեշտությունը ֆեդերատիվ դաշնակցային պետության շրջանակներում: Դրա օգտին ամենածանրակշիռ փաստարկը վերակառուցումն է, որը պայմաններ է ստեղծում անցյալում թույլ տրված ամեն տեսակ սխալների ու ձևախեղումների շտկման, ազգամիջյան հարաբերութունների իսկական ներդաշնակեցման, յուրաքանչյուր մարդու ազգային նորմալ ինքնազգացողության համար, որտեղ էլ նա ծնված, բնակվելիս և աշխատելիս լինի:

Բայց հիմա պետք է պետության ֆեդերատիվ կառուցվածքը տոգորել քաղաքական և տնտեսական իրական բովանդակությամբ, որպեսզի այդ ձևը ամբողջովին բավարարի ազգերի պահանջմունքներն ու իղձերը, համապատասխանի արդիականության իրականություններին:

Վերակառուցման ազգային քաղաքականության հանգուցային պարագաները մենք տեսնում ենք հետևյալ կերպ.

**Քաղաքական բնագավառում** դրանք միութենական ու ինքնավար հանրապետությունների, մյուս ազգային կազմավորումների իրավունքների էական ընդլայնումն են. կառավարչական ավելի ու ավելի լայն ֆունկցիաների հանձնումը տեղերին. հանրապետական ու տեղական մարմինների ինքնուրույնության և պատասխանատվության ուժեղացումը: Ֆեդերատիվ պետության մեջ պետք է հստակորեն սահմանված լինի թե ինչն է դասվում միության իրավասությանը և ինչն է հանրապետության, ինքնավարության սուվերեն իրավունքը: Անհրաժեշտ է մշակել շահերի այն բախումների լուծման իրավական մեխանիզմներ, որ կարող են ծագել նրանց փոխհարաբերություններում:

**Տնտեսական բնագավառում** անհրաժեշտ է Միության և հանրապետությունների հարաբերությունները ներդաշնակեցնել նրանց տնտեսական ինքնուրույնությունը և աշխատանքի հասարակական բաժանմանը նրանց ակտիվ մասնակցությունը օրգանապես զուգակցելու հիման վրա: Այս տեսանկյունով պետք էր վերակառուցել երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի կարգավորումը, հանրապետությունների, ռեգիոնների, երկրամասերի ու մարզերի ինքնակառավարման և ինքնաֆինանսավորման փոխադրումը օրգանապես ընդգրկելով խորհրդային էկոնոմիկայի նորացման ընդհանուր պրոցեսի մեջ:

Սկզբունքորեն կարևոր է, որ հանրապետական տնտեսության և տեղական ինքնակառավարման զարգացման նկատմամբ նոր մոտեցումը չհանգեցնի տնտեսական ինքնապարփակման, ինչը ժամանակավրեպ է արդի աշխարհում, այլ նպաստի յուրաքանչյուր հանրապետության և ամբողջ երկրի շահերին համապատասխանող կոոպերացիայի խորացմանը:

Տնտեսական պրոբլեմներին սերտորեն հարում են ժողովրդագրական և էկոլո-



գիական պրոբլեմները: Այստեղ նույնպես հարկավոր է հմտորեն զուգակցել ընդհանուր միութենական և հանրապետական-ռեգիոնալ շահերը:

**Հոգևոր բնագավառում** մենք ելնում ենք ազգային մշակույթների բազմազանության՝ որպես սոցիալական և պատմական մեծագույն արժեքի, մեր ամբողջ Միության հարստության ճանաչումից: Այդ մշակույթներից ոչ մեկը մենք իրավունք չունենք թերագնահատել կամ առավել ևս կորցնել, որովհետև դրանցից յուրաքանչյուրն անկրկնելի է:

Մենք կողմնակից ենք յուրաքանչյուր ժողովրդի, ազգային լեզվի ու մշակույթի ազատ, **համակողմանի** զարգացմանը, բոլոր ազգերի, ազգությունների, ազգային խմբերի իրավահավասար և բարեկամական հարաբերություններին:

Ժողովրդական դեպուտատների համագումարը, ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը պետք է լուծեն ազգամիջյան հարաբերությունների ոլորտի ոչ քիչ թվով բազմաբարդ հարցեր: Եվ թույլ տվեք վստահություն հայտնել, որ այդ հարցերի խոր մշակումը մեզ հնարավորություն կտա լենինյան ազգային քաղաքականությունը հարստացնել խորհրդային բազմազգ պետության այսօրվա իրականությունների առնչությամբ, դրանով իսկ հուսալի քաղաքական հիմք ստեղծել երկրի հետագա հաստատուն զարգացման համար:

## IV

Ընկերներ, Խորհրդային Միությունում վերակառուցումը չէր կարող չազդել մեր ամբողջ **միջազգային գործունեության** վրա, բայց այն չէր էլ կարող իրագործվել, եթե պահպանվեր նախկին արտաքին քաղաքականությունը:

Արտաքին քաղաքական կուրսի արմատական փոփոխումը կապված է նոր քաղաքական մտածողության հետ, որը մշակվում էր դոգմատիկ պատկերացումներից, այնպիսի հետևություններից ազատվելու համեմատ, որոնք ճիշտ էին իրենց ժամանակի համար, բայց դադարել էին համապատասխանել մեր օրերի իրականություններին:

Նոր մտածողությունը դինամիկ կոնցեպցիա է, որը շարունակում է զարգանալ ու խորանալ: Իսկ դրա գլխավոր ելակետը մնում է ԽՄԿԿ XXVII համագումարի հետևությունը միջուկային զենքի և սպառազինությունների մրցավազքի մահացու վտանգի մասին մարդկության գոյատևման համար, ժամանակակից աշխարհի ամբողջականության ու փոխկապվածության մասին, նրա հակասությունների բնույթի և համաշխարհային առաջադիմության բովանդակության փոփոխության մասին:

Նոր մտածողության հիմքում ընկած է համամարդկային շահերի ու արժեքների ճանաչումը, բարոյականության համընդհանուր նորմերի՝ որպես ամեն մի քաղաքականության պարտադիր չափանիշի ճանաչումը. սոցիալ-քաղաքական ընտրության ազատության ճանաչումը, որը բացառում է միջամտությունը ցանկացած պետության գործերին. միջպետական հարաբերությունների ապագաղափարացման անհրաժեշտության ճանաչումը: Չնայած սոցիալական սիստեմների խոր տարբերություններին, դրանցից յուրաքանչյուրում օբյեկտիվ հնարավորություններ են երևան եկել մարդկության պատմության սկզբունքորեն նոր, խաղաղ ժամանակաշրջան դուրս գալու համար:

Մեզ շրջապատող իրականության մեջ ինչքան ասես փաստեր կան, որոնք, թվում է թե, չեն զետեղվում նոր մտածողության հունի մեջ: Կան անցյալի ուժեր և անցյալից ժառանգված հակասություններ: Ուստի մենք չենք կարող հրաժարվել բանակից և հրաժեշտ տալ զենքին: Նույնը կարելի է ասել ռազմական դաշինքների մասին, որոնց պահպանումը կախված է ոչ միայն մեզանից:

Բայց որքան էլ դեռևս անհրաժեշտ լինեն հին ձևերն ու միջոցները, չի կարելի թույլ տալ, որ դրանք շրջափակեն նոր մոտեցումները միջազգային հարաբերությունների կառուցման նկատմամբ: Սրանում է ամեն մի մեծ քաղաքականության իմաստությունը: Եվ սրանում է վերակառուցման ժամանակաշրջանի արտաքին քաղաքականության որակական զանազանությունը: Մենք այժմ այն կարող ենք պաշտպանել՝ հենվելով իրական արդյունքների վրա: Շատ բան արդեն դարձել է սովորական, թվում է նորմալ: Բայց մենք որտեղ կլինեինք, եթե ամեն ինչ մնար նախկինի պես:

Իջել է միջազգային լարվածության տենդը: Չկա միջուկային պատերազմի ուղղակի սպառնալիք: Տարբեր երկրների մարդիկ ասես նայեցին միմյանց երեսի և հասկացան թշնամանքի անհեթեթությունը: Սկսվեց միջուկային զինանոցների կրճատում: Եվրոպացիները ձեռնամուխ եղան աշխարհում ամենավտանգավոր ռազմա-

Մեր սիստեմում եզակի մարմին է նախ և առաջ ժողովրդական դեպուտատների հենց համագումարը: Սա իսկը համագումար է: Նրա առջև խնդիր չի դրված աշխատել մշտապես: Համագումարը պետք է հրավիրվի, ինչպես մենք պայմանավորվել ենք, տարեկան առնվազն երկու անգամ, որպեսզի երկրի համար ամենակարևոր օրենքներն ու որոշումներն ընդունի պետության ներքին ու արտաքին քաղաքականության արմատական հարցերի վերաբերյալ, գնահատի և վերահսկի իշխանության մյուս մարմինների աշխատանքը, ըստ անհրաժեշտության ուղղումներ մտցնի Սահմանադրության մեջ և փոխի բուն քաղաքական սիստեմը:

Նոր Գերագույն խորհուրդը, ըստ քաղաքական ռեֆորմի մտահղացման, պետք է լինի իշխանության մշտապես գործող մարմին, կատարելով ինչպես օրենսդիր, այնպես էլ հիմնական կարգադիր ֆունկցիաները:

Այժմ օրենսդիր և գործադիր իշխանության հարաբերակցության մասին: Այս հարցը շատ կարևոր է, պահանջում է հատուկ մշակում և ուսումնասիրում: Բայց արդեն այսօր կարելի է ասել, որ մի կողմից Գերագույն խորհրդի պալատների, հանձնաժողովների ու կոմիտեների և, մյուս կողմից, գործադիր մարմինների հարաբերությունները պետք է էապես փոխվեն այն հարաբերությունների համեմատությամբ, որ եղել է մինչև հիմա:

Ըստ երևույթին Գերագույն խորհրդի հանձնաժողովներում և կոմիտեներում պետք է քննարկվեն պետական պլանի առաջադրանքները և պետական բյուջեի հոդվածները, գնահատվի դրանց համապատասխանությունը ժողովրդական դեպուտատների համագումարի և հենց Գերագույն խորհրդի սկզբունքային կողմնորոշիչներին:

Հանձնաժողովների կողմից լուծվելիք մյուս կարևոր հարցը հանգուցային պետական պոստերի համար առաջադրվող թեկնածությունների քննարկումն է: Օրինակ՝ մինիստրների, արտասահմանյան երկրների դեսպանների և այլն: Դժվար չէ տեսնել, որ այս երկու ֆունկցիաները մեր պառլամենտին հնարավորություն են տալիս իր ձեռքին պահել իշխանության իրական լծակները:

Վերահսկելով կառավարության գործունեությունը ստրատեգիական նշանակություն ունեցող հարցերում, համագումարը և Գերագույն խորհուրդը պետք է հոգան այն մասին, որ կառավարությունը կարողանա պետական կառավարման խնդիրները լիովին լուծել Սահմանադրության շրջանակներում, դրա համար ստանձնելով լիակատար պատասխանատվություն:

Ըստ ռեֆորմի, մեր քաղաքական սիստեմում պետք է կարևոր դեր խաղա սահմանադրական հսկողության կոմիտեն, որն ըստ էության գործելու է որպես սահմանադրական դատարան: Առաջ նայելով ասեմ, որ բոլոր մակարդակներում վարչական մարմինների գործունեության դատական վերահսկողության զարգացումը ըստ երևույթին պետք է դառնա սոցիալիստական իրավական պետականության անկապտելի տարրերից մեկը: **(Ծափահարություններ):**

Նախորդ օրերին համագումարում ակտիվորեն քննարկվում էր ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատի կարգավիճակի հարցը: Մենք ձեզ հետ արդեն պայմանավորվել և որոշում ենք ընդունել, որ անհրաժեշտ է մշակել դեպուտատի վիճակը, նրա իրավունքները և պարտականությունները կարգավորող նոր փաստաթուղթ և ներկայացնել համագումարին: Բայց կան որոշ սկզբունքային պարագաներ, որոնց շուրջը հարկավոր է պայմանավորվել հիմա, որպեսզի բոլոր ընկերները կարողանան ներգրավվել ակտիվ աշխատանքի մեջ:

Այստեղ ի՞նչը պետք է ի նկատի ունենալ: Առաջինը դեպուտատական կարգավիճակի միասնությունն է: Բոլոր դեպուտատները, անկախ նրանից՝ ընտրվել են տերիտորիալ, ազգային տերիտորիալ օկրուգներում, թե հասարակական կազմակերպություններից, ունեն հավասար իրավունքներ:

Հաջորդ պարագան վերաբերում է աշխատանքի բաժանմանը իրենց՝ դեպուտատների միջև: Բնական է, որ համագումարի կողմից Գերագույն խորհրդի կազմում ընտրված ընկերների վրա լրացուցիչ բեռ է ընկնում և նրանք պետք է համապատասխան լրացուցիչ հնարավորություններ ունենան իրենց վրա դրվող պարտականությունների կատարման համար:

Գերագույն խորհրդի անդամներին հատուկ ֆունկցիաներով օժտելը բնավ չպետք է նշանակի մյուս ժողովրդական դեպուտատների դերի նսեմացում: Նախ և առաջ նրանցից յուրաքանչյուրին հնարավորություն է թողնվում Գերագույն խորհրդի կազմում ընտրվելու նրա մեկ հինգերորդ մասը ամեն տարի նորացնելիս:

Ծառ դեպուտատներ են ընդգրկվելու Գերագույն խորհրդի հանձնաժողովների



և կոմիտեների կազմի մեջ, կազմելով դրանց անդամների մինչև կեսը և դրանցում օգտվելով վճռական ձայնի իրավունքից: Բանական է թվում, որ նրանք կարողանան հանձնաժողովների, կոմիտեների ղեկավարման մեջ ևս ընդգրկվել, ասենք՝ որպես դրանց նախագահների տեղակալներ, ասես ներկայացնելով այդ կեսը:

Ինչպես ես եմ հասկանում, մենք բոլորս այն կարծիքին հանգեցինք, որ յուրաքանչյուր ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ կարող է ցանկության դեպքում մասնակցել այս կամ այն հանձնաժողովի կամ կոմիտեի աշխատանքին, Գերագույն խորհրդի պալատների նիստերին: Յուրաքանչյուրը պետք է լիարժեք ինֆորմացիա ստանա Գերագույն խորհրդի, կառավարության և իշխանության մյուս մարմինների ընթացիկ աշխատանքի մասին: Վերջապես, յուրաքանչյուրը հնարավորություն ունի քաղաքական ակտիվ աշխատանք կատարելու իր ռեգիոնում կամ հասարակական կազմակերպության մեջ, մշտական կապ պահպանելով ընտրողների հետ, այս կամ այն հարցադրմամբ և առաջարկությամբ դիմելու իշխանության տեղական և կենտրոնական մարմիններին: Դեպուտատները պետք է անհրաժեշտ պայմաններ ունենան քաղաքացիներին ընդունելու, ընտրողների հետ հանդիպումներ ունենալու համար, և այդ մասին պետք է հոգան տեղական մարմինները: Ըստ որում, այդ բոլոր հարցերը հարկավոր է լուծել անհապաղ:

Այսպիսով, մենք կկարողանանք պահպանել խորհրդային սիստեմի արժեքավորագույն հատկանիշը՝ ժողովրդի ներկայացուցիչների մշտական կապը աշխատավորության հետ, Լենինի բառերով ասած՝ պառլամենտարիզմի օգուտները միացնել ուղղակի և անմիջական դեմոկրատիայի օգուտների հետ:

Երկու խոսք համագումարի և Գերագույն խորհրդի աշխատանքի կազմակերպման մասին: Ժողովրդական դեպուտատները այստեղ՝ Կրեմլ են բերել բազմազան հայացքներ ու կենսափորձ, որոնք պայմանավորված են սոցիալական, ազգային, քաղաքամունքային, տարիքային, ռեգիոնալ տարբեր շահերով: Բնական է, որ համատեղ աշխատանքում անկարելի է խուսափել տարակարծություններից, վեճերից ու դիսկուսիաներից: Նման դիսկուսիաներ սկսվեցին համագումարի աշխատանքի առաջին իսկ օրվանից, նույնիսկ՝ առաջին ժամից: Եվ ես դրանում ոչ մի վատ բան չեմ տեսնում: Ընդհակառակն, կարծիքների բազմակիությունը ընդարձակում է հնարավոր վճիռների դիապազոնը, հնարավորություն է ընձեռում ավելի ծավալային պատկերացում ստանալու քննարկվող առարկայի մասին:

Եվ կարծիքների տարբերությունը, իհարկե, չպետք է խոչընդոտ դառնա բանական վճիռներ ընդունելու ճանապարհին:

Ինչպես այստեղ ճիշտ ասաց ընկերներից մեկը՝ կարծիքները կարող են լինել տարբեր, բայց մեր քաղաքականությունը պետք է լինի մեկը՝ հեղափոխական վերակառուցման քաղաքականությունը: **(Ծափահարություններ):** Ուստի անհրաժեշտ է ամեն ինչ անել համաձայնության հասնելու համար, ջանալ հասկանալ միմյանց, ինչ-որ փոխադարձ զիջումների դիմել ի շահ գործի: Եվ միայն այն ժամանակ, երբ դա հաջողվի, վերջին խոսքը, բնականաբար, մնում է մեծամասնությանը: Այսպին է դեմոկրատիայի օրենքը:

Եվս մեկ կարևոր պարագա, որ այստեղ նույնպես արծարծվեց: Դեպուտատները տարբեր առիթներով առաջարկում էին այս կամ այն փոփոխությունը մտցնել ԽՍՀՄ սահմանադրության մեջ: Ես միանում եմ նրանց, ովքեր զգուշացնում էին հիմնական օրենքի հապճեպ շտկումից: Սահմանադրությունը այնքան կարևոր քաղաքական փաստաթուղթ է, որ չպետք է նրա տեքստը հարմարեցնել ծագող այս կամ այն իրավիճակին:

Մյուս հարցը, և մենք այստեղ համակարծիք ենք, գոնե ես այսպես ընկալեցի համագումարի տրամադրությունը, այն է, որ անհրաժեշտություն կա մշակել և ընդունել երկրի նոր սահմանադրություն: Դրա մեջ վերակառուցման ընթացքում իրագործվող հեղափոխական վերափոխումների վավերագրումը կդառնա դրանց անշրջելիության կարևորագույն երաշխիքներից մեկը: Բայց հիմա՝ ռեֆորմների եռուզեռում, մենք դեռևս հնարավորություն չունենք հաշվի առնելու այն հարցերի ողջ համալիրը, որ պետք է արտացոլում գտնեն նոր հիմնական օրենքի մեջ:

Համառոտակի սրանք են, ընկերներ, երկրի դրության գնահատականները, մեր պետության ապագա ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղություններին վերաբերող նկատառումները:

Վերջում ի՞նչ կցանկանայի ասել:

Մենք մեր աշխատանքը դատարկ տեղում չենք սկսում: Մեզանում կազմավորվել է վերակառուցման, տնտեսական և քաղաքական ռեֆորմի կոնցեպցիան: Այդ

հարցերը այս կամ այն ձևով, այս կամ այն աստիճանի խորությամբ ու քննադատականությամբ քննարկվել են կուսակցական, պետական, հասարակական կազմակերպությունների զանազան համաժողովներում, աշխատավորական կոլեկտիվներում, մասսայական ինֆորմացիայի միջոցներում: Արվել են նաև որոշակի գործնական քայլեր:

Բայց ժամանակն արագ է փոխում իրավիճակը, ծագում են նոր խնդիրներ, նոր պահանջմունքներ: Եվ ես ուզում եմ վստահություն հայտնել, որ մեր համագումարը, որն արտահայտում է ժողովրդի կոլեկտիվ միտքը, կկարողանա մշակել խորհրդային պետության առաջիկա տարիների գործունեության արդյունավետ ծրագիր, նոր եռանդ կհաղորդի մեր հասարակության հեղափոխական նորացման ամբողջ պրոցեսին: **(Երկարատև ծափահարություններ):**

# Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ

Հարգելի ընկեր դեպուտատներ:

Մենք ավարտում ենք ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների քննարկումը ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում: Համագումարի աշխատանքը մոտենում է ավարտին: Կցանկանայի ամենանախնական առումով տպավորություններս հաղորդել համագումարի աշխատանքի մասին: Կարծում եմ, որ նրա արդյունքներով, այստեղ կայացած բանավեճերով մենք դեռ հիմնավորապես կզբաղվենք: Եվ նա, ով կփորձեր հիմա, դեռ համագումարի ընթացքում կամ նրանից անմիջապես հետո ստանձնել վերջնական գնահատականներ տալու առաքելություն, ես կարծում եմ, նա անձնապաստանություն հանդես բերած կլիներ: Մանավանդ որ այստեղ ելույթ չունեցած շատ ընկերներ իրենց խոսքը հանձնելու են քարտուղարությանը: Մի խոսքով, մենք ձեզ հետ միասին ունենք մի հսկայական նյութ, որը պահանջում է խոր, լուրջ վերաբերմունք և ուսումնասիրում:

Այնուամենայնիվ, ես համոզված եմ, որ սույն համագումարը մեզ դուրս է բերում դեմոկրատիայի և հրապարակայնության, հենց վերակառուցման պրոցեսի զարգացման մի նոր փուլ: Յուրաքանչյուրը հավանաբար ունի իր կարծիքը համագումարի մասին, իր դիտողությունները, իր գնահատականները այս կամ այն ելույթի և որոշման առթիվ: Կարծում եմ, որ սա միանգամայն նորմալ է և բնական: Բայց, ըստ երևույթին, դուք կհամաձայնեք, որ համագումարը, նրա գնահատման բոլոր տարբերություններով հանդերձ, կարելի է դասել խորհրդային պետության պատմության խոշորագույն իրադարձությունների շարքին: **(Ծափահարություններ):**

Մենք ձեզ հետ միասին այն բանի կենդանի վկաները և մասնակիցներն ենք, թե ինչպես համագումարի մթնոլորտում կատարվում է հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսների, հասարակության անցյալի, ներկայի և ապագայի վերաբերմամբ եղած հայացքների, տեսակետների ազատ համադրում:

Սա մեզ եզակի հնարավորություն է տալիս և ոչ միայն մեզ՝ դեպուտատներիս, այլև բոլոր աշխատավորներին, ամբողջ հասարակայնությանը, պատկերացում կազմել մեր կյանքում տիրող ռեալ իրավիճակի մասին, նվաճումների ու թերությունների մասին, այս կամ այն բացասական երևույթի պատճառների մասին: Սա մեզ հնարավորություն է տալիս մեկ անգամ էլ համոզվել, որ լայն դեմոկրատացման և հրապարակայնության շրջանակներում ռեալ հնարավորություններ են ստեղծվում հաշվի առնելու և իրագործելու հասարակության բոլոր խավերի ամենաբազմազան շահերը:

Հենց այսպիսի մթնոլորտում է իրագործվում կարծիքների բազմակիության սկզբունքը: Իսկ սա վկայում է մեր քաղաքական սիստեմի, մեր հասարակարգի պոտենցիալ մեծ հնարավորությունների մասին: Ես անհրաժեշտ համարեցի սա ընդգծել, քանի որ ոմանք մեզ ակնարկում են կոնստրուկտիվ ընդդիմության, քաղաքական բազմակիության գաղափարը: Ես կարծում եմ, որ համագումարը, նրա ամբողջ աշխատանքը համոզիչ փաստարկ են այն բանի օգտին, որ խորհրդային քաղաքական սիստեմի շրջանակներում, դեմոկրատացման և հրապարակայնության ուղիներում հնարավոր են հայացքների ամենալայն համադրումը, այլախոհությունը, համաձայնեցված որոշումների մշակումը տարբեր տեսակետների հիման վրա, փոխզիջումներ



գտնելը երկրի, մեր բոլոր ժողովուրդների բախտին վերաբերող բոլոր հարցերի սորընչությամբ: Համագումարը հսկայական հնարավորություններ ցուցադրեց սոցիալիստական զարգացումն արագացնելու ասպարեզում անհրաժեշտ վճիռների կոլեկտիվ որոնման համար:

Մենք այսուհետև էլ պետք է դեմոկրատացման և հրապարակայնության ուղիով, հեղափոխական վերափոխումների խորացման ուղիով ընթանանք դեպի ժողովրդապետություն: Ես այն կարծիքին եմ, և ուզում եմ այս մասին ասել, որ համագումարը անսասանորեն բռնում է այդ գիծը: **(Ծափահարություններ):**

Մի բան էլ, ընկերներ: Եթե ճիշտ խոսենք, ապա մեզանից շատերը հոգեբանորեն, իսկ գուցեև բանականորեն պատրաստ չէին համագումարում ծավալվելիք բանավեճի այսպիսի ընթացքին: Սա վերաբերում է նաև սոցիալական կյանքի պրոբլեմներին, տնտեսական ու քաղաքական ռեֆորմին, օրենսդրական գործունեությանը, մեր դաշնակցային պետության էությանն ու հեռանկարներին, հին և նոր պատմության որոշ իրադարձությունների գնահատմանը: Ես այս ամենը դրամա չէի համարի, քանի որ այն ամենը, ինչ տեղի է ունենում, այն հուժկու դեմոկրատական հոսանքի արտացոլումն է, որը գնալով արագանում է մեր երկրում:

Մենք պետք է հանգիստ, կշռադատված կերպով խորամուխ լինենք ամեն ինչին, խելացիորեն գնահատենք ամեն ինչը և կոլեկտիվ քննարկումների հիման վրա հանգենք համաձայնեցված հետևությունների, դրանք կերպափոխենք քաղաքականության և պրակտիկ գործունեության: Ես կարծում եմ, մենք ճիշտ վարված կլինենք, եթե լրջորեն մոտենանք դեպուտատների ելույթներում հնչած քննադատական ադիտողությունների և առաջարկությունների գնահատմանը, ինչի մասին արդեն ասացի ելույթիս սկզբում:

Ամենայն բանականը, նորարարականը, կոնստրուկտիվը, գործի համար օգտակարը պետք է օգտագործվի առանց որևէ կանխակալության: Այստեղ չափանիշը մեկն է՝ վերակառուցման շահերը, ժողովրդի շահերը:

Հավանաբար հարկավոր է մեկ անգամ էլ ասել նաև ահա թե ինչի մասին: Ցանկացած բեկումնային ժամանակաշրջանը պահանջում է պրպտումներ, ոչ սովորական վճիռներ, պահանջում է ճեղքում կատարել մտածողության, գիտության և պրակտիկայի ասպարեզում: Վերակառուցումը իր խնդիրը համարում է հենց այն, որ գտնի հասարակության նորացումն ապահովող նոր ուղիներ: Անհրաժեշտ է, որ այդ ուղիները մենք փնտրենք միասին, առանց վախենալու նորությունից և համարձակությունից, եթե դրանք մեզ առաջ են մղում հասունացած պրոբլեմների լուծման ճանապարհով: Եվ այս օրերին ուշադրությամբ լսելով դեպուտատների սուր, երբեմն կրքոտ, հուզական ելույթները, նորից ու նորից զգում ես թե՛ պրոբլեմների բեռը, թե՛ դրանց հսկայական ծանրությունը և թե՛ այն, որ մեր ամբողջ հիմնական, ըստ էության ամենագլխավոր աշխատանքը դեռ առջևում է:

Դեպուտատները համագումարի ամբիոն բերեցին խոշոր և կոնկրետ հարցեր, քննադատական ոգի, մտքի թարմություն, բայց որ ամենագլխավորն է՝ դժգոհություն թե՛ աշխատանքային կոլեկտիվներում, թե՛ ռեգիոններում, թե՛ ճյուղերում և թե՛ ամբողջությամբ վերցրած երկրում տիրող իրավիճակից: Ճիշտ է, կան նաև այն կարգի դատողություններ, թե համագումարում անչափ շատ խոսվեց չլուծված պրոբլեմների մասին, բայց զգացվում է կոնկրետ առաջարկությունների պակաս: Ես դա տեսնում եմ նաև համագումարի հասցեով ստացվող որոշ հեռագրերից: Նշում են, որ անչափ շատ է քննադատությունը կենտրոնի հասցեին և քիչ է ինքնաքննադատությունը:

Ես ինչպե՞ս կվերաբերվեի նման դատողություններին:

Կարծում եմ, մեր համագումարի ծառայությունը հենց այն է, որ լայն դիսկուսիայի հիման վրա մենք ասես առավել լրիվ պատկերացում կազմեցինք երկրի կյանքում տեղի ունեցող իրական պրոցեսների, բնակչության տարբեր խավերի տրամադրությունների մասին: Սա առաջին:

Եվ երկրորդ, համագումարը թույլ է տալիս տեսնել, թե ինչպես է ընթանում վերակառուցումը բուն կյանքում, ինչպես են կենսագործվում քաղաքական հիմնադրույթները, ընդունված որոշումները: Ինչպե՞ս է գնահատվում վերակառուցումը, ինչ է կանգնած ռեֆորմների իրականացման ճանապարհին, ինչն է նվազեցնում դրանց արդյունավետությունը, դանդաղեցնում, իսկ երբեմն էլ պարզապես արգելակում աշխատավորների վերափոխիչ գործունեությունը: Այս ամենը, ընկերներ, մեզ տալիս է գիտելիք, առանց որի մենք չենք կարողանա արգասավոր կերպով և հաջողությամբ լուծել պրոբլեմները, առաջ շարժվել, բարելավել մեր աշխատանքը:

Նման գիտելիքը մեզ հնարավորություն է տալիս գնահատել անցյալի մեր աշ-

խատանքը, բացահայտել թերությունները, դասեր առնել, այդ ամենը նկատի ունենալ նոր քաղաքականություն մշակելիս, ճշգրտումներ մտցնել ընդունված որոշումների մեջ, եթե դրա կարիքը կա:

Ժողովրդական դեպուտատները սրությամբ և անզիջում կերպով խոսեցին այն մասին, որ ոչ մի վերակառուցման մասին խոսք անգամ լինել չի կարող, եթե արմատական վերափոխումներ տեղի չունենան արտադրության և սպառման ոլորտում, եթե խանութների վաճառասեղաններին չհայտնվեն բավարար քանակությամբ պարեն և ապրանքներ, եթե չբարելավվի բնակարանների, կենսաթոշակային ապահովման, առողջապահության, սպասարկումների ոլորտի վիճակը և այլն:

Եվ այն փաստը, որ այդ հարցերը գլխավորներն էին թե՛ զեկուցումներում և թե՛ դեպուտատների ելույթներում, ես ճիշտ եմ համարում: Թեև գիտեմ, որ որոշ դեպուտատների զեկուցումներից դժգոհ են այն առումով, որ դրանք չափից ավելի էին հաղորդակցված:

Իմ կարծիքով, զեկուցումները նպատակամղված էին այն բանին, ինչն այսօր ամենից շատ է մտահոգում հասարակությանը: Անհասկանալի կլիներ, եթե երկրում գոյություն ունեցող, սոցիալական լարվածություն ստեղծող սուր պրոբլեմների պայմաններում մենք զբաղվեինք միայն այնպիսի դատողություններով, թե ինչպես ենք պատկերացնում նորացված հասարակության բնույթը, որն են դրա հիմնական գծերը, ինչ փուլերով պետք է անցնենք: Այդ դեպքում մենք կշեղվեինք ժողովրդի առաջնակարգ հոգսերից:

Ես կարծում եմ, կենսականորեն կարևոր, անհետաձգելի այդ հարցերին առնչվող դիսկուսիան մեծացնում է վստահությունը, որ ինչպես մենք ենք ասում, աղաղակող խնդիրների լուծումը արդեն մոտ ժամանակներս հնարավոր է:

Ինչու՞ եմ սա ասում: Ընդհանուր առմամբ այդ հարցերի առթիվ ես սկզբունքային տարաձայնություններ չեմ նկատել: Փաստորեն հնչում էին նույն թեմաները, որոնք վաղուց հասարակայնության ուշադրության կենտրոնում էին վերջին տարիներին: Բայց տարբերություններ կային մոտեցումներում և հատկապես կառավարության և դեպուտատների կողմից առաջարկվող միջոցների այս կամ այն աստիճանի արմատական լինելու հարցում: Այդ տարբերությունները մի շարք դեպքերում էական են և արժանի են լուրջ վերլուծության ու գնահատման: Հարկավոր է շարունակել ամբողջ էկոնոմիկայի առողջացման հրատապ պրոբլեմների լուծման անհետաձգելի միջոցառումների ծրագրի վրա կատարվող աշխատանքը: Ըստ որում, դրանով պետք է զբաղվեն թե՛ ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը և թե՛ կառավարությունը, ներգրավելով գիտնական տնտեսագետների և պրակտիկ աշխատողների:

Ես չէի ուզենա, ընկերներ, կրկնել, բայց էկոնոմիկայի զարգացման նկատմամբ առկա մոտեցումների շուրջը կարծիքների այստեղ կայացած փոխանակումը անհրաժեշտ է դարձնում արտահայտվել որոշ հարցերի առթիվ:

Համագումարում դեպուտատները շատ խոսեցին ժողովրդական տնտեսության վիճակի մասին: Դա վերաբերում էր թե աշխատանքային կոլեկտիվներին, թե ռեգիոններին, թե ճյուղերին և թե բուն տնտեսավարման սկզբունքներին: Ես այդ ամենը ընկալում եմ լրջորեն և համարում կարևոր ավանդ մեր զարգացման արագացման ուղիների որոնման գործում:

Այս կապակցությամբ կուզենայի ասել ահա թե ինչ: Մենք առաջ չենք շարժվի և չենք կարողանա հասնել նախատեսված նպատակներին, եթե չիրականացնենք սոցիալիստական սեփականության հարաբերությունների արմատական վերակառուցում:

Մեզ հարկավոր է վերակառուցում, որի պայմաններում մարդը, աշխատավորական կոլեկտիվը ռեալ կերպով դրված լինեն արտադրության տիրոջ վիճակում, այստեղից բխող բոլոր խոր, լուրջ հետևանքներով: **(Ծափահարություններ)**: Առանց դրա, ընկերներ, մենք ոչինչ չենք լուծի: Որևէ բան չեն տա ո՛չ մեր կառուցվածքային միջոցառումները, ո՛չ կառավարման վերակազմակերպումը, ո՛չ էլ մեր բոլոր կոչերը: Բայց եթե կենդանի շիթ ներարկենք մարդկանց և կոլեկտիվների տնտեսական գործունեության մեջ, ապա իրադրությունը արմատապես կփոխվի: Սրանում ես խորապես համոզված եմ և կիսում եմ նրանց կարծիքները, ովքեր կանգնած են նման դիրքերում: Եվ առհասարակ, իմ կարծիքով, դա ոչ միայն գիտական, մտավոր վարժանքների արգասիք է, այլև արդեն կուտակված փորձի արդյունք:

Եվ այստեղ պետք է ասեմ, որ մենք առայժմ դժվարությամբ ենք զգում այս արմատական պրոբլեմի լուծման ուղիները: Դժվարությամբ է ընթանում տնտհաշվարկի առավել արդյունավետ ձևերի, դրա առաջադիմական մոդելների որոնումը: Բայց, ինչ-



պես ինձ թվում է, այնուամենայնիվ, աստիճանաբար ընդհանուր մոտեցում է ուրվագծվում սոցիալիստական սեփականության բարենորոգման նկատմամբ:

Ես կպաշտպանեի այն նկատառումները, որ դեպուտատներն այստեղ արտահայտեցին պետական սեփականության իրոք համաժողովրդական բնույթի վերածնման վերաբերյալ, քանիս ամենալայն իմաստով սոցիալիստական վարձակալման հարաբերությունների միջոցով մարդու և կոլեկտիվի հետ այդ սեփականության միավորման վերաբերյալ: Այլ կերպ ասած, հարցը դրված է այսպես. հասարակությունը, մնալով համաժողովրդական ունեցվածքի սեփականատերը, դրա հիմնական մասը վարձակալական բազմապիսի հարաբերությունների միջոցով հանձնում է աշխատավորական կոլեկտիվների և առանձին անձանց տնօրինությանը, որոնք ստանձնում են դրա օգտագործման համար ամբողջ պատասխանատվությունը, պետության հանդեպ ունեն որոշակի տնտեսական պարտավորություններ, իրենց տնտեսությունը վարում են ինքնուրույնաբար, ինչպես իրենց հաշվին, այնպես էլ վարկերի միջոցով: Նրանք իրենց տնտեսական գործունեության արդյունքների հիման վրա գոյացնում են եկամուտ, սոցիալիստական շուկայում հանդես գալով որպես ինքնուրույն ապրանք արտադրողներ: **(Ծափահարություններ)**:

Նման մոտեցման դեպքում հաղթահարվում են համաժողովրդական և կոոպերատիվ ձեռնարկությունների էական տարբերությունները, թեև հասկանալի է, որ տնտեսավարման այդ ձևերը կարող են և կլինեն տարբեր: Վարձակալական հարաբերությունների լայն արմատավորման, կոոպերացիայի զարգացման հիման վրա խթաններ կստեղծվեն արդյունավետ, դինամիկ, շահագրգիռ տնտեսավարման համար:

Ես նաև կասեի այն մասին, թե մենք ինչպես պետք է մոտենանք սոցիալիստական շուկայի պրոբլեմին: Ես հաստատակամորեն արտահայտվում եմ շուկայի օգտին, բայց, և այդ մասին ես արդեն ասել եմ, չի կարելի համաձայնել այն ընկերների հետ, որոնք գտնում են, թե ամեն ինչ պետք է կարգավորի շուկան: Կարծում եմ, շուկայի դերի նման ըմբռնումը, որը բոլոր պրոբլեմները լուծում է ինքնաբերաբար, չի ընդունի նույնիսկ տնտեսավարման արդի կապիտալիստական համակարգը:

Այդպես անել՝ նշանակում է վաղը էլ ավելի մեծ լարվածություն ստեղծել հասարակության մեջ, ծնել անկասելի ինֆլյացիա: Նշանակում է պետք է զարգացնել սոցիալիստական շուկան, պահպանելով պլանային կարգավորումը, ներգործության տնտեսագիտական մեթոդները, միևնույն ժամանակ առավելագույնս խթանելով սկզբնական արտադրական կոլեկտիվների տնտեսական ինքնուրույնությունը:

Ընկերներ, մենք ըստ երևույթին ընդհուպ մոտեցել ենք տնտեսական ռեֆորմի զարգացման մեջ սկզբունքային շրջադարձի: Դա մենք պետք է գիտակցենք: Մեզ մոտ կան դրական և բացասական բաներ, կա կուտակված փորձ, և մենք այդ ամենը պետք է իմաստավորենք, որպեսզի ընդունենք սկզբունքային որոշում, թե այսուհետև ինչպես ենք գործելու: Եվ այս իմաստով ես բարձր եմ գնահատում կարծիքների այն փոխանակումը, որ այդ հարցերի առթիվ տեղի ունեցավ այստեղ՝ համագումարում: Կառավարությունը պետք է հիմնավորապես մշակի այդ բոլոր հարցերը և ԽՍՀՄ Գերագույն խորհրդի քննարկմանը ներկայացնի իր առաջարկությունները: Սա առաջինն է, որ կուզենայի ընդգծել:

Եվ այնուհետև: Վերակառուցման բախտի, տնտեսական ռեֆորմի իրականացման համար վճռական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության ֆինանսական առողջացումը: Պաշտպանելով կառավարության առաջարկությունները, դրա հետ մեկտեղ նպատակահարմար եմ համարում ուշադրությամբ քննության առնել նաև այդ հարցի առթիվ դեպուտատների արտահայտած նկատառումները:

Ինձ թվում է, որ արված առաջարկությունների խորացված մշակման, հաշվառման շնորհիվ մենք կկարողանանք հասնել լավագույն լուծումների, որոնք կհամապատասխանեն ռեալ իրավիճակին և երկրի ֆինանսադրամական իրադրության կայունացման խնդիրներին: Իրավացի են այն դեպուտատները, որոնք ասում էին, որ այստեղ կիսամիջոցներով յոլա չես գնա, և դրա համար նրանք արդարացիորեն քննադատում էին կառավարությանը և մեր տնտեսական գերատեսչություններին: Այս առումով տնտեսագետ գիտնականների ասածներից շատերը արժանի են ամենաուշադիր քննարկման:

Ընկերներ, կուզենայի արտահայտվել նաև ագրարային հարցի առթիվ: Համագումարում այն լուրջ հնչողություն ստացավ. և ոչ միայն նրա համար, որ երկիրը մտահոգված է պարենավորման վիճակով, այլև հողագետ դեպուտատների այն ակտիվ դիրքորոշման շնորհիվ, որ նրանք դրսևորեցին համագումարում: Սկզբունքային առումով կուզենայի պաշտպանել նրանց, բայց, ինչպես ասում են, միայն աջակցու-

թյան խոսքերն այստեղ քիչ են։ Այս հարցը արմատական է, մասշտաբային, քանի որ խոսքը գյուղացիության բախտի մասին է, իսկ ընդհանուր առմամբ՝ երկրի բախտի մասին։ Դրան հենց այդպես էլ պետք է մոտենալ գործնական աշխատանքում քաղաքականությունը ձևավորելիս։ Մենք վաղուց արդեն ասում ենք, որ գյուղի վերածնումը, ագրոարդյունաբերական համալիրը երկիրն անհրաժեշտ ամեն ինչով ապահովելու ընդունակ էկոնոմիկայի բարձր զարգացած հատվածի վերածելը համաժողովրդական գործ են։ Բայց ամենուրեք գյուղի բնակիչներին մեն-մենակ ենք թողնում բազմաթիվ պրոբլեմների՝ թե՛ գյուղական կյանքի անկարգավորվածության և թե՛ գյուղատնտեսական արտադրության վարման անհրաժեշտ միջոցներով ապահովված չլինելու հետ։

Կենտկոմի մարտյան պլենումը, ես համոզված եմ, ճիշտ ուղի է ընտրել։ Մենք պետք է տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման հիման վրա ձերբազատենք կոլտնտեսություններն ու խորհտնտեսությունները, գյուղատնտեսության աշխատողներին, նրանց ընձեռենք լիակատար ինքնուրույնություն։ Պլենումում անհրաժեշտ համարվեց հնարավորին չափ շուտ լուծել գյուղի սոցիալական զարգացման հարցերը, ըստ որում այդ նպատակներին հատկացվում են խոշոր ռեսուրսներ։ Մարդիկ արդեն մոտ ժամանակներս պետք է իրենց կենսապայմաններում զգան ռեալ փոփոխություններ, գյուղում կյանքի հուսալի հեռանկարի վստահություն ստանան։

Անհետաձգելի գործերից մեկն է ճանաչված պահպանման ու վերամշակման բազայի փութացված զարգացումը, քանզի գյուղատնտեսական արտադրանքի ավելացման ամեն տեսակ ջանքերը պարզապես կորցնում են իմաստը, եթե այդ հարցերը չլուծվեն անհետաձգելիորեն։ Այստեղ նույնպես արդեն շատ բան է արվում։ Բայց, ինչպես ես հասկացա ագրարագետ դեպուտատների ելույթներից, ագրարային հատվածի նյութատեխնիկական բազայի ամրապնդման կարիքները պահանջում են լրացուցիչ ուշադրություն ու քննարկում թե՛ կառավարության մեջ և թե՛ Գերագույն խորհրդում։ Դրանք պահանջում են ամբողջ հասարակության ուշադրությունը, յուրաքանչյուր շրջանի, մարզի, հանրապետության ուշադրությունը։ Մենք պետք է այդպիսի շրջադարձ կատարենք։ **(Ծափահարություններ)։**

Ընկերներ, հարկավոր է, օգտագործելով մեր էկոնոմիկայի ամբողջ հզորությունը, անհապաղ լուծել գյուղի զարգացման կարևորագույն պրոբլեմները։ Կարծում եմ, որ այդ առթիվ մեր համագումարում ընդհանուր կարծիք կա։ **(Ծափահարություններ)։**

Մենք բոլորս էլ այն միահամուռ կարծիքին ենք, որ հարկավոր է վճռականորեն իրականացնել սոցիալ-տնտեսական և քաղաքական վերափոխումներ, իսկ դա օրենսդրական մեծ աշխատանք է պահանջում։ Ես համաձայն եմ ելույթ ունեցողների, այդ թվում նաև դեպուտատ Ալեքսեևի այն կարծիքին, որ օգտակար կլիներ մշակել որոշակի ստրատեգիա ու ղեկավարվել դրանով։ Համոզված եմ, որ օրենսդիր գործունեության ասպարեզում հետ մնալը արդեն խանգարում է մեր ֆեդերատիվ պետության մեջ վերափոխիչ պրոցեսների զարգացմանը։ Այստեղից էլ առաջանում են արհեստական բախումներ կենտրոնի և հանրապետությունների միջև, ամեն կարգի թյուրիմացություններ։ Այս ամենը արգելակում է մեր աշխատանքը։ Մենք պետք է արագացնենք այնպիսի օրենսդրական ակտերի նախապատրաստումը, որոնք համապատասխանեին տնտեսական ու քաղաքական ռեֆորմի նոր փուլին, որն այժմ շոշափում է ֆեդերացիայի շահերը, հանրապետությունների, ինքնավար կազմավորումների, ազգային օկրուգների, տեղական խորհուրդների սուվերենության շահերը։

Ընկերներ, մեր համագումարում երևի ոչ մի հարց այնքան լայնորեն չքննարկվեց, որքան ազգամիջյան հարաբերությունների հարցը։ Դա մենք բոլորս ուժեղ զգացինք, տագնապալից քիչ պահեր չապրեցինք նույնիսկ համագումարի ընթացքում։ Այստեղ շատ բան տագնապ է հարուցում։ Անհրաժեշտ է այդ հարցերը լուծել կոմպլեքսայնորեն, համընդգրկուն, համարձակորեն և միևնույն ժամանակ վայելուչ ու հարգալից կերպով։ Բայց դա, ընկերներ, ենթադրում է, որ մենք չպիտի հաշտվենք այդ պրոբլեմները լուծելու, ազգամիջյան հարցերը հանցավոր մեթոդներով այսպես ասած «կարգավորելու» որոշ խմբերի փորձերի հետ, քամահրելով բարոյականությունը, օրենքները, երբեմն բռնելով անարխիայի ուղին։ Դա անընդունելի է ոչ միայն ազգամիջյան գործերում, այլև մեր ամբողջ կյանքում։ Մենք պետք է ընթանանք կոնստրուկտիվ ուղիով, դեմոկրատիայի, հրապարակայնության, փոխըմբռնման, համագործակցության, երկխոսության ուղիով։

Ես՝ որպես ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահ, դիմում եմ ձեզ՝ թանկագին ընկեր ժողովրդական դեպուտատներ, մեր երկրի բոլոր քաղաքացիներին. եկեք այդ





շատ կարևոր հարցերը լուծելիս իմաստություն, պատասխանատվություն, զսպվածություն և հեռատեսություն հանդես բերենք։ **(Ծափահարություններ)։** Եկեք թույլ չտանք, որ ալյարոպեական էմոցիաների բռնկումները գերակշռեն մեր ժողովուրդների, մեր զավակների, թոռների ու ծոռների ապագայի նկատմամբ ցուցաբերվող հոգատարությանը։ Միայն բանականության ու օրենքի և, մեկ անգամ էլ եմ կրկնում, լայն երկխոսության հիման վրա կարելի է լուծել մարդկային հարաբերությունների այդ կարևոր և այժմ սուր բնույթ ստացած ոլորտում կուտակված պրոբլեմները։ Իսկ նրանց նկատմամբ, ովքեր չեն անսում ողջամտության փաստարկներին, իրավունքի նորմերին, պետք է հաստատորեն ու վճռականորեն կիրառել օրենքը։

Դեպուտատների ելույթներում առաջադրվեցին կենտրոնի և հանրապետությունների փոխհարաբերությունների հարցերը, որոնք սկզբունքային նշանակություն ունեն մեր ֆեդերացիայի համար։ Դիսկուսիայի արդյունքների հիման վրա կարելի է հավաստել, ինչպես ինձ թվում է, համաձայնությունը երկու հարցում։ Դա, նախ, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ որպես բազմազգ սոցիալիստական պետություն ամրապնդելու կենսական անհրաժեշտությունն է, որի շրջանակներում ապահովվում է նրա բոլոր ժողովուրդների ազատ զարգացումը։ Եվ երկրորդ, անհրաժեշտ է ռեալ բովանդակություն տալ խորհրդային ֆեդերացիային, ապահովել միութենական հանրապետությունների սուվերենությունը, ինքնավար կազմավորումների լայն ինքնուրույնությունը, մարդու հավասար իրավունքները՝ անկախ նրա ազգային պատկանելությունից։ **(Ծափահարություններ)։**

Մտքերի փոխանակության ժամանակ սրությամբ էին առաջադրվում իրավակարգի և կարգապահության հարցերը։ Վերակառուցումը, դեմոկրատիան աներևակայելի են առանց կարգապահության և ինքնակարգապահության, առանց պատասխանատվության բարձր զգացումի։ Ամենուրեք և բոլոր ժամանակներում դեմոկրատիայի հենասյուներից մեկը եղել է քաղաքացիական զգացումի զարգացումը, որն անբաժանելի է սեփական գործողությունները վերահսկելու, դրանց համար ինքն իր հանդեպ ու հասարակության հանդեպ պատասխան տալու կարողությունից ու պատրաստակամությունից։

Վերջին տարիներին հասարակայնությունը ոչ մեկ ողբերգության վկան եղավ, որոնք ցնցեցին երկիրը, խլեցին շատ մարդկանց կյանք։ Դրանց սկզբնահիմքում ինչոր մարդկանց տարրական թափթփվածությունն է, իրենց անմիջական պարտականությունների նկատմամբ հանցավոր քամահրական վերաբերմունքը։ Այդպես էր Չեռնոբիլում և «Ադմիրալ Նախիմով» նավի վթարի ժամանակ, Սվերդլովսկում և Արզամասում, Ալմա Աթայի մոտ և այլուր։ Եվ ահա Հարավային Ուրալում գնացքների հետ կապված վերջին ողբերգությունը։ Սրանք, ընկերներ, միայն ամենաաղաղակող օրինակներն են, իսկ ինչքան այնպիսի օրինակներ կան, որոնց արդեն ընտելացել ենք, իսկ չէ որ ամեն մի աղետի հետևում մարդկային կյանքեր են, չխոսելով արդեն տնտեսական կորուստների մասին։ Մեզ հարկավոր է արտադրական-տեխնոլոգիական ամուր կարգապահություն, հարկավոր է ազատվել անպատասխանատվությունից, մենք պարտավոր ենք հասարակության մեջ հաստատել գիտակցված կարգապահություն։ Կարծում եմ, որ համագումարի և նրա բոլոր մարմինների ուշադրությունը պետք է մշտապես կենտրոնացված լինի այս կարևոր հարցի վրա։ Այսպիսին է ժողովրդի տրամադրությունը, ու ես դա զգացի վերջերս, երբ ընկեր Ռիժկովի հետ ուղևորվել էի Բաշկիրիա և Չելյաբինսկի մարզ։

Դեմոկրատիայի կենսունակության, կարգապահության և ինքնակարգապահության հետ փոխադարձ սերտ կապի մեջ է հանցագործության պրոբլեմը։ Հանցագործության աճը արդարացի զայրույթ է առաջ բերում խորհրդային մարդկանց մեջ։ Ու մենք բոլորս, առանձնապես տեղերում, պետք է առավելագույն ջանքեր գործադրենք այդ ծանր հիվանդության դեմ պայքարելու համար, մանավանդ մեր հասարակության բուն հիմքերին նետվող այնպիսի մարտահրավերի դեմ, ինչպիսին է կազմակերպված հանցագործությունը։ Կառավարությունը, իրավապահ մարմինները պարտավոր են ազդու միջոցներ ձեռնարկել այդ հարցում։ Սա է համագումարի կարծիքը։ **(Ծափահարություններ)։**

Ընկերներ։ Ծառ պրոբլեմների լուծման անհետաձգելիությունը, իհարկե, չպետք է հետ մղի վերակառուցման հեռանկարները, եթե մենք չենք ուզում կրկնել զարգացման փակուղային տարբերակը։ Անհետաձգելի լուծումները այսօր պետք է ծառայեն որպես կամուրջ դեպի ապագան, հենակետ՝ վերակառուցման ծավալման, հետագա վերափոխումների հաջողության համար։ Ես մեծ հետաքրքրությամբ լսեցի ընկեր Ծմելյովի ելույթը, բայց համաձայն չեմ նրա այն խոսքերին, որ իրեն չի

հետաքրքրում, թե մենք ինչ ենք անելու վաղը: Կարծում եմ, նա իզուր տեղն է հեշտորեն վարվել այդ թեմայի հետ: Նկարժեք չի լինի այն քաղաքականությունը, որ կենտրոնանում է միայն մերձավոր բնագծերի վրա, իրար հետ չի կապում ներկան ու ապագան:

Քաղաքականությունը, մարքսիզմի դասականների արտահայտությամբ, մի տակտիկա է, որը երբեք տեսադաշտից չի կորցնում մեծ նպատակները: Սա, ընկերներ, լուրջ հարց է: Սոցիալիզմը գիտություն դառնալու պահից պահանջում է, որ իր հետ վարվեն ինչպես գիտության հետ: Այսպես էր համարում Լենինը: Այստեղ չեն օգնի հրապարակախոսական թունդ բառերը և բանաստեղծական փոխաբերությունները, թեև դա երբեմն հետաքրքիր է: Գիտական լուրջ վերլուծություն է պետք, և կուսակցությունը կատարում է այն, լուծելով սոցիալիզմի տեսության առջև ծառացած նոր պրոբլեմները:

Մենք պետք է ավելի մեծ ինտենսիվությամբ կատարենք գիտական հետազոտությունները, վարենք դիսկուսիաներ, իմաստավորելով այն հասարակությունը, որտեղ ապրում ենք, որը մենք կառուցել ենք, ինչը վերակառուցում ենք: Վերջապես, որո՞նք են վերակառուցման սոցիալական նպատակներն ու կոչումը: Ինչպե՞ս ենք մենք տեսնում սոցիալիզմի հեղափոխական նորացման նոր բնագծերը:

Մենք երկար ժամանակ և սովորականի նման ելնում էինք այն բանից, թե մեր ստեղծածը ամենալավն է հնարավոր հասարակական կառուցվածքներից: Այս եզրահանգումը բխում էր սոցիալիստական մոդելի եզակիության մասին պատկերացումից, մի երկրում սոցիալիզմի կառուցման փաստի ձևավորված պատկերացումից: Հիմա մենք գիտենք, որ դա այդպես չէ: Թե՛ պրակտիկայում տեսանք և թե՛ տեսության մեջ գիտակցեցինք սոցիալիստական զարգացման ուղիների բազմազանությունը: Նկատեցինք սոցիալիստական գաղափարի էությունից կատարվող նահանջների, դոգմատիզմով, անկենդան, մտահայեցողական սխեմաներով այդ գաղափարի աղավաղումների ռեալ վտանգը, չխոսելով արդեն կամայականության և անօրինականության մասին:

Բայց մենք տեսանք նաև ուրիշ բան: Սոցիալիզմի գաղափարի բովանդակած անսահման հարստությունները, հարստություններ, որոնք կարող են ի հայտ բերվել միայն գործնական լուծումների բազմազանությամբ, որոնք միավորված են մարդուն ծառայելու հումանիստական գաղափարներով: Ես հավատում եմ սոցիալիզմի անսահման հնարավորություններին: Կարծում եմ, մենք պետք է գտնենք այն հարցերի պատասխանները, որ մեզ առաջադրել է ժամանակակից կյանքը, մեր կարգերի շրջանակներում, դեմոկրատացման և հրապարակայնության, գոյություն ունեցող բոլոր պրոբլեմների լայն քննարկման միջոցով: **(Ծափահարություններ)**:

Մենք դեռ չգիտենք այն հասարակության ձևերի ամբողջ հարստությունը, դեպի ուր գնում ենք: Բայց գիտենք, որ այդ ձևերը անընդհատ ծնունդ կառնեն պրակտիկայից, անցյալի, ներկայի և ապագայի իմացությունից, մարդկային քաղաքակրթության բոլոր նվաճումների յուրացման հիման վրա: Մարքսիզմը երբեք մի կողմ չի քաշվել աշխարհում կատարվող պրոցեսներից, առաջացել է ոչ թե մարդկային քաղաքակրթության զարգացման ճամփեզրին, այլ կյանքի մեծ ճանապարհին:

Մենք գիտենք նաև այն, որ նոր հասարակությունը բոլոր տեսակետներից, իր բոլոր դրսևորումներով կողմնորոշված կլինի դեպի մարդը: Բայց կձևավորվի ու կզարգանա մասսաների ինքնագործունեությամբ, կստեղծվի նրա ստեղծագործությամբ և ասպարեզ կբացի այդ ստեղծագործության համար: Սոցիալիզմը պարունակում է հսկայական ուժեր, ու մենք պարտավոր ենք դրանց ելք տալ դեմոկրատիայի ու հրապարակայնության, հասարակական հարաբերությունների հումանիզացման, համամարդկային արժեքների, բարոյականության և արդարության հասարակ նորմերի ճանաչման, անհատի սոցիալական և իրավական պաշտպանվածության հիման վրա:

Եվ, իհարկե, տնտեսագիտական մեթոդների, հանրային սեփականության ձևերի բազմազանության վրա հենվող արդյունավետ ու դինամիկ էկոնոմիկայի հիման վրա, պրոֆեսիոնալիզմի, բանիմացության, բարեխիղճ աշխատանքի, կարգապահության և ինքնակարգապահության հիման վրա: Դա նշանակում է կուլտուրայի հիման վրա, ընկերներ, դրա ամենալայն ըմբռնումով:

Դա ըստ էության հասարակության հոգևոր վիճակի պրոբլեմն է, ինչի մասին խոսվեց համագումարում, թեև ոչ այնքան շատ: Սոցիալիզմը իր բնույթով պետք է լինի հոգեպես հարուստ, իսկապես ինտելիգենտ մարդկանց հասարակություն, ինչով էլ որ նրանք զբաղվելիս լինեն, որ սոցիալական խմբին էլ որ պատկանեն: Մենք



պետք է հոգևոր պրոբլեմների նկատմամբ չափազանց զգայուն և ուշադիր լինենք, այլապես հասարակության նորացում, ընկերներ, չի ստացվի: Քանզի վերակառուցման գլխավոր որոշիչ ուժը, գլխավոր գործող անձը մարդն է: **(Ծափահարություններ)**:

Ապագայի շատ հատկանիշներ ձևավորվում են վերակառուցման ընթացքում: Չորս տարի պահանջվեց նրա համար, որ դեմոկրատական բանավեճերի մթնոլորտում ճանաչենք հասարակության ռեալ վիճակը, մշակենք նոր մոտեցումներ էկոնոմիկայում և քաղաքական ոլորտում, գործնականորեն վերակառուցման սկիզբը դնենք:

Կարծում եմ, որ այդ աշխատանքը պետք է խորացվի, հենվելով այն բանի վրա, ինչ մեզ տալիս է վերակառուցման ներկա փուլը: Ինչպես ինձ թվում է, դա ԽՄԿԿ XXVIII համագումարի շեմին կուսակցության աշխատանքի ամենակարևոր ուղղությունն է: Այս իմաստով ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարը լավ աշխատեց վերակառուցման օգտին, և դա է նրա մեծ վաստակը սոցիալիզմի հեղափոխական նորացման գործում: **(Ծափահարություններ)**:

Ընկեր դեպուտատներ: Ընդունում եմ իմ հասցեին, քաղաքական ղեկավարության հասցեին արված քննադատությունը և ամենից առաջ նրա համար, որ ռեֆորմներն անցկացնելիս դանդաղկոտություն էր թույլ տրվում: Մենք շատ տեսակետից ուշանում էինք, իսկ դա լրջորեն էր անդրադառնում վերափոխիչ պրոցեսների վրա: Կարծում եմ, որ թերություններ և բացթողումներ ավելի քիչ կլինեին, եթե Կենտկոմը ավելի մեծ պահանջկոտություն ցուցաբերեր թե՛ կուսակցական համագումարի և թե՛ XIX կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթների կատարման նկատմամբ:

Ոչ պակաս չափով է սա վերաբերում նաև ԽՍՀՄ կառավարությանը: Նրա ամենալուրջ բացթողումներից մեկը կառավարման իրենց դարն ապրած կառուցվածքների դանդաղ ապամոնտաժումն է, հրատապ հարցերը, իսկ դրանցից շատերը խրոնիկական բնույթ են ստացել, հին միջոցներով լուծելու փորձերը, որոնք մեզ արդեն քանիցս անհաջողության են մատնել: Մի շարք պրոբլեմների ցույց տրված մոտեցման մեջ պակասում էին հարկ եղած սկզբունքայնությունը և ներքին կյանքի այս կամ այն հրատապ պրոբլեմների նկատմամբ ժամանակին վերաբերմունք ցույց տալը:

Այսօր մենք բոլորս էլ ավելի լավ ենք գիտակցում, որ վերակառուցումը բավական տևական գործ է: Դա պատմականորեն անցման ժամանակաշրջան է սոցիալիզմի զարգացման ասպարեզում: Անհրաժեշտ է մեկ անգամ ևս ընդգծել, որ մենք դեմ ենք փուլերի վրայից թռչելուն, իրականությունից կտրվելուն՝ նույնիսկ անհամբերության հասկացության հետ կապված ամենաազնիվ շարժառիթներով: Բայց մենք պետք է պայքարենք, ընդսմին վճռաբար պայքարենք նաև «կամաց-կամացության», օբլոմովյան վարվեցողության, վերակառուցման կամա թե ակամա արգելակման դեմ: Վերջին հաշվով երկու ծայրահեղություններն էլ՝ թե՛ պահպանողականությունը և թե՛ ձախողականությունը համընկնում են: Եվ արդյունքը կարող է լինել մեկը՝ անուղղելի հարվածը վերակառուցմանը, եթե այդ ծայրահեղություններից որևէ մեկը քաղաքական գործունեության հիմքում դրվի:

Ես հանդես եմ գալիս եռանդագին, դրա հետ մեկտեղ կշռադատված իրատեսական քաղաքականության օգտին: ԽՄԿԿ-ն այդ քաղաքականությունն առաջարկում է՝ անսխալականության և բացարձակ ճշմարտության չհավակնելով, ընդհակառակը, ամբողջ հասարակությանը, բոլորի ինտելեկտուալ ուժերին հրավիրելով հարստացնելու այն:

Մենք պետք է ինքնաքննադատաբար վերլուծենք մեր ամեն մի քայլը:

Վերակառուցումը չի եղել ու չի լինի քննադատությունից դուրս գտնվող գոտի, դրա համար էլ նա վերակառուցում է: Բայց անկողմնակալ կերպով վերլուծելով դրա դասերը, չի կարելի մոռանալ հետևյալ լավ ասացվածքը. հոնքը շինելու տեղ աչքն էլ չհանել: Եթե չլինեին Կենտկոմի ապրիլյան պլենումը, կուսակցության XXVII համագումարը, XIX կուսկոնֆերանսը, հազիվ թե, ընկերներ, տեղի ունենար մեր համագումարը: Եկեք լինենք իրատես և ազնիվ ինքներս մեր հանդեպ ու մեր ժողովրդի հանդեպ: **(Ծափահարություններ)**: Համագումարում արտահայտված հայացքների, դատողությունների և առաջարկների ամբողջ բազմազանությամբ հանդերձ չի կարելի դա չտեսնել ու չհասկանալ, եթե իհարկե, կանխակալ դիրք չբռնենք: Դա նույնպես տեղ գտավ այստեղ, համագումարում:

Վերակառուցման ակնհայտ արդյունքներից մեկն այն է, որ վարչահրամայական համակարգի երկար տարիների բռնատիրությունից մենք անցանք նորմալ բացահայտ քաղաքական կյանքի։ Ես կասեի, հիմնականում նորմալ կյանքի։ Դա տառապանքի գնով ձեռք բերված նվաճում է։ Եթե չպահպանենք այդ նվաճումը, մենք կկործանենք վերակառուցումը, շնչահեղձ կանենք այն։

Կուզենայի, ընկերնե՛ր, ահա թե էլի ինչ ասել։ Մեր համագումարում շատ եղան թեժ վեճեր, հայտնվեցին հակադիր կարծիքներ։ Դա բնական երևույթ է, որն ամրապնդում է վերակառուցման կոնստրուկտիվ հիմքերը։ Քննադատական ելույթներից ոչ բոլորին կարող ենք անվերապահորեն համաձայնել թե՛ ես և թե՛ երևի, ուրիշ շատ դեպուտատներ։ Մանավանդ, երբ առանձին վերցրած այս կամ այն պատճառը, կյանքի երևույթը կամ կողմը, որոնք իսկապես գոյություն ունեն, բացարձակացվում են։ Կարծում եմ, նման մոտեցումը կարող է խաթարել մեր տեսողությունը, բացասաբար ազդել մեր գնահատումների ու եզրահանգումների վրա, դրանով իսկ ծնելով նոր սխալներ։

Համագումարում առաջին իսկ օրերին խոստաշունչ, թունդ քիչ բառեր չհնչեցին ապարատի հասցեին։ Չեմ ուզում պաշտպանության տակ առնել բյուրոկրատիզմը, ուռճացած հաստիքները, անփույթ և անձեռնհաս աշխատողներին։ Ավելին, կարծում եմ, որ մենք առանց հարկ եղած վճռականության ենք պայքարում բյուրոկրատիզմի դեմ և դանդաղ ենք լուծում կադրային հարցերը, որ թելադրում է բուն վերակառուցումը։ **(Ծափահարություններ)**։ Բայց համոզված եմ, որ վարչահրամայական համակարգի հեղաբեկումը չի կարելի նույնացնել ապարատի դեմ պայքարելու հետ։ Բյուրոկրատիզմի հաղթահարումը մեզ հաջողություններ չի բերի, եթե սահմանափակվենք առհասարակ ապարատի դեմ ուղղված կամպանիայով։ Առանց կենտրոնական ու տեղական կառավարման որակյալ, ձեռնհաս, լավ կարգավորված ապարատի, մենք, ընկերներ, ոչ մի լավ բանի չենք հասնի։ Ասենք նրանք էլ, ովքեր քննադատում են առհասարակ ապարատը, իրենք են ընդհանրապես պատրաստվում նոր ապարատի մեջ մտնել։ **(Ծափահարություններ)**։ Կարծում եմ, որ այստեղ զարմանալու ոչինչ չկա։ Եկեք այդպես էլ ասենք, որ մեզ նոր ապարատ է պետք։ Ահա դրան ես կհամաձայնեմ։ **(Ծափահարություններ)**։

Ընկերնե՛ր, կշոշափեմ ևս մի հարց, որը հուզում է ամենքիս, հուզում է նաև ինձ։ Պատմական պատճառների, դժվարին փորձի բերումով մենք առանձնապես զգայուն ենք մի ղեկավարի ձեռքում իշխանությունը չափից ավելի կենտրոնացնելու հարցի նկատմամբ։ Դա հնչեց նաև այստեղ, համագումարում։ Քանի որ հարցը կա, ապա հարկ եմ համարում աներկբայորեն արտահայտել իմ վերաբերմունքը դրա նկատմամբ։

Ես՝ որպես կոմունիստ, կտրականապես չեմ ընդունում այստեղ թող որ ոչ այնքան բացահայտորեն արված ակնարկները, թե իբր փորձում եմ իմ ձեռքին կենտրոնացնել ամբողջ իշխանությունը։ Դա խորթ է իմ հայացքներին, աշխարհայացքին, նաև բնավորությանս։ Դրա համար չէ որ ապրիլյան պլենումում կտրուկ շրջադարձ կատարվեց դեպի նոր քաղաքականություն, դրա համար չէ, որ կուսակցությունն ու ժողովուրդը դժվարին աշխատանք ծավալեցին դեմոկրատացման, հրապարակայնության ուղղությամբ, մեր հասարակության, հասարակական կյանքի մաքրման և նորացման ուղղությամբ։

Ես՝ որպես գլխավոր քարտուղար, Գերագույն խորհրդի նախագահ, չունեմ ուրիշ քաղաքականություն, բացի վերակառուցման, դեմոկրատացման ու հրապարակայնության քաղաքականությունից և մեկ անգամ էլ համագումարին, աշխատավորներին, ամբողջ ժողովրդին հայտարարում եմ, որ անսասանորեն նվիրված եմ այդ քաղաքականությանը, քանի որ միայն դրա հիման վրա մենք կկարողանանք համախմբել հասարակությունը և առաջ ընթանալ։ Ես սա եմ համարում կյանքիս և աշխատանքիս իմաստը։ **(Ծափահարություններ)**։

Ընկերներ, Մարքսը և Լենինը հեղափոխական կուսակցության համար պարտադիր էին համարում քննադատական վերաբերմունքը իր գործունեության նկատմամբ։ Կարծում եմ, մենք կարող ենք ասել, որ մեր կուսակցության և հասարակության մեջ դա դառնում է կյանքի նորմ։ Բայց այս նույն կապակցությամբ ես, որպես կոմունիստ, կտրականապես դեմ եմ կուսակցության վրա կատարվող հարձակումներին։ **(Ծափահարություններ)**։ Կրկնության եմ դիմում, որպեսզի լիակատար պարզորոշություն լինի։ Կարծում եմ, որ հարցը պետք է դրվի այսպես. կուսակցությունը ժողովրդին է ծառայում։ Սա գլխավորն է։ Կուսակցությունը պատասխանատու է քաղաքականության համար, ուստի և չի կարող զերծ մնալ ժողովրդի քննադատությունից և գնահատումներից։ **(Ծափահարություններ)**։



Բայց բոլորովին այլ բան է, երբ խոսքը վերաբերում է ԽՄԿԿ-ի հասցեին կատարվող հարձակումներին։ Կուսակցության պատմության մեջ, իհարկե, եղել են տարբեր, այդ թվում նաև՝ ողբերգական էջեր։ Մեր կուսակցությունը ազնվորեն ասաց թույլ տրված սխալների մասին։ Կուսակցությունը իր վրա վերցրեց պատասխանատվությունը դրանց համար, հանդես եկավ որպես վերակառուցման, հասարակության արմատական նորացման նախաձեռնող։

Վստահ եմ, որ 20 միլիոն կոմունիստները, Կենտրոնական կոմիտեն կկարողանան վերակառուցման միջոցով ապացուցել, որ իրենք գտնվում են ժամանակի դըժվարին խնդիրների բարձրության վրա, ի վիճակի են այսուհետև էլ կատարելու խորհրդային հասարակության քաղաքական ավանգարդի դերը։ **(Ծափահարություններ)**։

Այո, կուսակցությունը պետք է վերակառուցվի, ինչպես և հասարակությունը՝ ամբողջությամբ վերցրած։ Որպես Կենտկոմի գլխավոր քարտուղար, ուզում եմ դեպուտատներին ասել, որ քաղբյուրոն մտադիր է անվարան կենսագործել հասարակության վերակառուցման՝ XXVII համագումարի, XIX կուսկոնֆերանսի գիծը։ Կարծում եմ, որ հսկայական աշխատանք է կատարվելու նաև ԽՄԿԿ XXVIII համագումարը նախապատրաստելիս։ Սակայն ճիշտ է նաև այն, որ կուսակցությունը երբեմն հետ է մնում հասարակության մեջ տեղի ունեցող որոշ պրոցեսներից։ Եվ եթե նա ուզում է լինել հասարակության քաղաքական ավանգարդը, այսուհետև էլ կատարել այդ առաքելությունը, իսկ հասարակությունը կարիք ունի այդպիսի ավանգարդային ուժի, ծրագրային նպատակներ կրողի, ապա կուսակցությունն էլ պետք է ավելի արագ վերակառուցվի, քան հասարակությունը։ **(Բուռն ծափահարություններ)**։

Ընկերներ, այստեղ հնչեցին Կենտրոնական կոմիտեին և քաղբյուրոյին վերաբերող տագնապալի խոսքեր։ Ուզում եմ ասել, որ Կենտրոնական կոմիտեն կանգնած է այն նույն դիրքերում, ինչի մասին ես ասացի, բնութագրելով քաղբյուրոյի դիրքը։ Ես ձեզ հավաստիացնում եմ, որ հեղաշրջումների կամ նման ինչ-որ այլ բաների ոչ մի վտանգ այստեղ գոյություն չունի։ Այս մասին ես հայտարարում եմ հաստատապես։ **(Ծափահարություններ)**։ Եկեք վերջ տանք ամեն կարգի ասեկոսներին, հատկապես այստեղ՝ իշխանության բարձրագույն մարմիններում, չպետք է բանի տեղ դնել ամեն կարգի բամբասանքները, որ հաճախ դիտմամբ տարածում են։ **(Բուռն ծափահարություններ)**։

Մեր առջև, ընկերներ, ծառացած է իր մասշտաբայնությամբ, իր բուն էությամբ բացառիկորեն մի կարևոր խնդիր՝ օրգանապես միավորել նորացվող խորհրդային իշխանության ջանքերը և նորացվող կուսակցության քաղաքական աշխատանքը, որպեսզի լիովին բացահայտվի սոցիալիստական հասարակարգի ընդերքում եղած վիթխարի պոտենցիալը։

Այո, մենք գտնվում ենք բարդ իրավիճակում, բայց ոչ թե խավարի ու մթության մեջ։ Ուզում եմ սա ուղղակի ասել՝ ոչ խավարի և ոչ էլ մթության մեջ, ինչպես թվում է ոմանց, նույնիսկ այս դահլիճում նստածներից։ Մենք ունենք պարզորոշ քաղաքականություն։ Կուսակցությունը կկարողանա կատարել սոցիալիզմի նորացման իր պատմական առաքելությունը, մշակելով քաղաքականություն և այն առաջարկելով հասարակությանը։ Եվ ես վստահ եմ, որ խորհուրդների՝ ժողովրդապետության սկզբունքներով վերածնվող համակարգը իր վճռական ավանդը կներդնի վերակառուցման խնդիրների իրագործման մեջ։

Համագումարում, և սրա վրա հավանաբար ուշադրություն են դարձրել շատ ընկերներ, քիչ խոսվեց արտաքին քաղաքականության մասին։ Խոսվեց այն մասին, որ վերակառուցման տվյալ փուլում մենք իրոք հասել ենք նշանակալից արդյունքների, որոնք ողջունում են թե՛ ժողովուրդը և թե՛ ամբողջ աշխարհի հասարակայնությունը։ Դրանք այնպիսի արդյունքներ են, որոնք շատ բանով փոխել են ոչ միայն Խորհրդային Միության նկարագիրը, այլև աշխարհի իրադրությունը։ Սա իրոք այդպես է։

Այն, ինչ արվել է արտաքին քաղաքականության բնագավառում, հասկացությունները, կոնցեպցիաները և նույնիսկ դոկտրինաները փոխվելու հետևանքը չէ. Ստացված ժառանգությունից դուրս են նետվել փտած, վնասակար, արատավոր շատ բաներ: Բայց մեզ, ինչպես և մյուս ժողովուրդներին, համաշխարհային գործերի բարեփոխումներ ոչ ոք նվեր չի բերի: Ոչ, ընկերնե՛ր: Նոր, ավելի քաղաքակիրթ աշխարհ տանող ճանապարհին յուրաքանչյուր քայլը հարկ է լինում նվաճել դժվարին, թեև արտաքուստ գուցեև ոչ այնքան և ոչ միշտ նկատելի պայքարով:

Եվ նշեմ մի բան ևս: Որպեսզի միջազգային գործերում դրական տեղաշարժը անշրջելի լինեն, մենք պետք է մշտապես հիշենք, որ խոսում ենք այնպիսի պարտնյորների հետ, որոնք հաշվի են նստում փաստերի և միայն փաստերի հետ: Եվ մենք պետք է մշտապես նրանց ներկայացնենք այնպիսի փաստեր, որոնք նրանց համոզեն, հուսով եմ երկար ժամանակով, որ մեզ հետ ավելի լավ է ապրել կարգին, ինչպես որ մենք ենք ուզում կարգին ապրել բոլոր հեռու և մոտիկ հարևանների հետ: **(Ծափահարություններ):**

Այսպես, ընկերներ, առջևում դժվարին, բայց այնուամենայնիվ պարզորոշ ճանապարհ է, եթե այն գնահատելու լինենք հավասարակշիռ ձևով, պետականորեն, ինչպես որ վայել է ժողովրդական դեպուտատներին:

«Իշխանությունը՝ խորհուրդներին» կարգախոսը, ընկերնե՛ր, նշանակում է ստեղծել դեմոկրատական հաստատությունների համակարգ, ժողովրդապետության համակարգ, բոլոր պայմաններում և բոլոր պարագաներում գործող կուռ, արդյունավետ համակարգ:

Խորհուրդների իշխանությունը անհասանելի է, եթե հողը չվերադարձվի գյուղացիներին:

Խորհուրդների իշխանություն չի կարող լինել առանց այն բանի, որ մեզանից յուրաքանչյուրն իրեն զգա որպես ամբողջ հասարակության և բնության, առողջապահության և լուսավորության, բարօրության ու բարգավաճման մի մասնիկը:

Ժողովրդապետություն չի հաստատվի, մինչև որ նա հանդես չբերի ավելի բարձր արդյունավետություն, քան իշխանության որևէ այլ ձև:

Այստեղից հետևում է, որ քաղաքականության մեջ մենք դեռ շատ բան պետք է յուրացնենք և շատ բանի էլ վարժվենք:

Այս համագումարը մեզ շատ բան սովորեցրեց: Կասկածից վեր է, որ մենք բոլորս անհրաժեշտ դասեր կառնենք նրանից, այստեղից կվերադառնանք ավելի իմաստուն դարձած: Նաև կասկածից վեր է, որ հաջորդ համագումար կգանք ավելի պատրաստված:

Մի խոսքով, մենք բոլորս պետք է համատեղ յուրացնենք խորհրդային ժողովրդապետության դպրոցը: Ես վստահ եմ, մենք այն կյուրացնենք:

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ միացյալ ջանքերով, յուրաքանչյուր դեպուտատի գործերով մենք կկարողանանք կատարել այն պարտականությունները, որ մեզ վրա դրել են մեր ժողովուրդը, մեր ընդհանուր հայրենիքը: **(Երկարատև ծափահարություններ):**

---

# Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԵԼՈՒՅԹԸ

Հարգելի ընկեր դեպուտատնե՛ր:

Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ բարձրացված բազմազան հարցերից ես կցանկանայի անդրադառնալ ազգային զարգացման և ազգմիջյան հարաբերությունների պրոբլեմներին: Որովհետև այժմ հենց դրանք են գտնվում հանրապետության հասարակական-քաղաքական կյանքի էպիկենտրոնում: Հենց դրանց մասին են ինձ հանձնարարել համագումարում ասել ինձ այստեղ ուղարկած ընտրողները:

Այսօր Հայաստանում առաջացել է պրոբլեմների անչափ բարդ մի հանգույց: Տասնամյակների ընթացքում կուտակված սոցիալ-տնտեսական դժվարությունների բեռն ու մարդկանց լարված անբավարարվածությունը, պատմական հիշողության անամոք ցավն ու ազգային ինքնագիտակցության հորդումը, դեմոկրատիայի անկեղծ ձգտումն ու դրա դրսևորման երբեմն ոչ դեմոկրատական ձևերը, հարցերի լուծման սահմանափակ հնարավորությունները, որոնք ցավագին դիպչում են ժողովրդի արժանապատվությանը, վերջապես՝ աննախադեպ երկրաշարժը, որը խլեց հարյուր հազարավոր մարդկանց ճակատագրեր, լարված իրավիճակ են ստեղծել: Առաջ են բերել, եթե կուզեք, ազգային ստրես:

Բոլորը, ովքեր եղել են երկրաշարժի գոտում, կարող էին ակնբախորեն համոզվել, թե ինչպիսի անդունդի եզրին են հայտնվել մեր ժողովուրդը, հանրապետությունը: Փորձությունների դժվարին ժամին մեզ օգնության ձեռք մեկնեցին բոլոր եղբայր ժողովուրդները, ամբողջ համաշխարհային հանրությունը: Հայաստանի ցավը, Հայաստանի հոգսերը դարձան ամբողջ երկրի ցավն ու հոգսերը: Մեր ժողովուրդը երբեք չի մոռանա դա: Ողբերգական օրերին մենք առանձնակի ուժով զգացինք, թե ինչպիսի մեծ նվաճում է ԽՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը:

Հայ ժողովուրդը մեկ անգամ չէ, որ կանգնած է եղել անհետացման եզրին: Բայց ամեն անգամ ոտքի է կանգնել, ավերակներից ու մոխրակույտերից վերածնել քաղաքներն ու գյուղերը, իր հնամենի մշակույթը: Երկրաշարժը վերստին մեր առջև դրեց ընդգրկմամբ աննախադեպ այդ խնդիրը: Դրա լուծման համար հարկավոր են հանրապետության վերածննման ամբողջական ծրագիր, բնակչության սոցիալական վերականգնման, տարերքի ժողովրդագրական բացասական հետևանքների հաղթահարման, ազգի գենոֆոնդի պահպանման անհետաձգելի միջոցառումների համալիր:

Մենք պաշտպանում ենք ռեգիոնալ տնտհաշվարկը, հանրապետությունների տնտեսական ինքնուրույնությունն ու սուվերենությունը: Բայց այն ծայրագույն իրադրությունը, որի մեջ գտնվում է Հայաստանը, պահանջում է նաև նոր, ոչ ստանդարտ լուծումներ:

Երկրաշարժից հետո խիստ մեծացել է արտասահմանյան պետությունների, ֆիրմաների ու կազմակերպությունների հետաքրքրությունը հանրապետության հետ տնտեսական, գիտատեխնիկական, վալյուտավարկային համագործակցության նկատմամբ: Մեզ պատրաստ է էական օգնություն ցույց տալ սփյուռքահայությունը՝ մեր ժողովրդի անբաժանելի մասը, որն ամուր կապերով շաղկապված է հայրենիքի հետ:

Այս պայմաններում հանրապետությունում կարելի էր ստեղծել համատեղ ձեռնարկատիրության գոտի, լայնորեն ներգրավելով օտարերկրյա ներդրումները ոչ միայն ավերվածի վերականգնման, այլև ամբողջ երկրի համար հետաքրքրություն ներկայացնող տեխնիկական ու տեխնոլոգիական շատ պրոբլեմների լուծման նպատակով:

Մենք սա շատ կարևոր ենք համարում ճգնաժամային վիճակից հանրապետության դուրսբերումն արագացնելու համար: Դա մի քայլ է արտասահմանյան երկըրների հետ միութենական հանրապետությունների անմիջական կապերի նոր ձևերի մեխանիզմ մշակելու ճանապարհին: Ասենք, ընդհանուր առմամբ էլ անհրաժեշտ է, մեր կարծիքով, օրենսդրականորեն սահմանել միութենական հանրապետությունների իրավունքները արտասահմանյան այն երկրների հետ գործարար և հումանիտար կապերի հաստատման գործում, որտեղ կան մեր երկրի ազգերի ու ազգությունների հետ էթնիկապես կապված համայնքներ:

Ընկեր դեպուտատներ:

Նորացման պրոցեսները առնչվում են ինչպես ընդհանուր, համապարփակ, այնպես էլ տեղական, ռեգիոնալ շահերի խոր շերտերին: Կյանքը ցույց է տվել. ցանկացած ռեգիոնալ պրոբլեմ, եթե այն ժամանակին լուծում չի գտնում, անխուսափելիորեն համապարփակ բնույթ է ստանում և բացասաբար անդրադառնում ամբողջ երկրի վրա:

Ահա արդեն մեկուկես տարի է, ինչ մեր հանրապետությունը, մեր ամբողջ ռեգիոնը ցնցում և ամբողջ երկրում արձագանք է առաջացնում Լեռնային Ղարաբաղի խիստ սրված պրոբլեմը: Այստեղ՝ Համագումարների պալատում էլ այն քանիցս հնչեց այս օրերին: Դա ողբերգականորեն լույս սփռեց ազգամիջյան հարաբերությունների բոլոր սուր կողմերի վրա: Տասնամյակներ շարունակ մենք կրկնել ենք լենինյան ազգային քաղաքականության մեծ ճշմարտությունը՝ բոլոր ժողովուրդները մեր երկրում հավասար են: Եվ տասնամյակներ շարունակ մեթոդիկ կերպով խուզել, բյուրոկրատական գազոնին ենք հարմարեցրել ազգամիջյան հարաբերությունների դալար ընձյուղները:

Մեր օրերին էլ են փորձեր արվում պրոբլեմի լուրջ ու ազնիվ վերլուծությունը նենգափոխելու բարեկամության ու եղբայրության մասին բարձրագոչ խոսքերով, իսկ ազգամիջյան հարաբերությունների սրվածությունը հանգեցնելու միմիայն, ես կրկնում եմ, միմիայն ծայրահեղականների մեքենայությունների և ծախու շրջանների խարդավանքների:

Հետևանքի հետ պատճառի շփոթումը, մասսայական ինֆորմացիայի միջոցների կողմից բիրտ հակազդեցությունը, հասարակական կարծիքի աղավաղումը, փոխըմբռնման՝ իրական քայլերով չամրապնդվող կոչերը միայն սրում են իրադրությունը:

Հարկավոր է իրերն իրենց անուններով կոչել: Մենք գործ ունենք ժողովուրդների ճակատագրի լուծման նկատմամբ ստալինյան, հակադեմոկրատական մոտեցման հետևանքների հետ: Ընդունել այդպիսի որոշումների անձեռնմխելիությունը, նշանակում է ընդունել այն վարչակարգի գործողությունների արդարացիությունն ու հիմնավորվածությունը, որը ծանր ձևախեղումների հանգեցրեց սոցիալիզմը: Ինձ և մեր հանրապետության մյուս դեպուտատներին ընտրողներն ուղղակի հարց են տալիս, եթե մենք այսօր վերականգնում ենք պատմական արդարությունը անցած տարիներին տուժած առանձին մարդկանց նկատմամբ, ապա ինչու՞ չի կարելի նույն բանն անել ամբողջ ժողովուրդների նկատմամբ: **(Ծափահարություններ):**

Չպետք է վախենալ ճշմարտությունից: Հակառակ ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. ապրիլյան պլենումում ընկ. Ալիևի անհիմն հայտարարությունների, Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում տասնամյակներ շարունակ ճնշվել են հայ բնակչության ազգային արժանապատվությունը, սոցիալական ու հոգևոր պահանջմունքները: Ոտնահարվել են անգամ այն չնչին իրավունքները, որ ինքնավար մարզին տալիս է սահմանադրությունը: Ազգամիջյան հարաբերություններում բացահայտ, ակնհայտ անարդարությունն էլ հենց հանգեցրել է ռեգիոնում տիրող ներկա ճգնաժամային իրավիճակին:

Ցավոք, այժմ էլ, երբ առանձնապես կարևոր է թույլ չտալ ազգամիջյան երկպառակություն և անվստահություն բորբոքող նվազագույն իսկ քայլեր, դեռ հաճախ են ձեռնարկվում ԼՂԻՄ-ում ադրբեջանական և հայ բնակչության շահերը հակադրող գործողություններ:

Մենք ձգտում ենք իրադրության կարգավորման, երկխոսության, կոնստրուկտիվ լուծումներ գտնելուն: Բայց տարբեր խոչընդոտների ենք հանդիպում Լեռնային Ղարաբաղի հետ Հայաստանի բնական կապերի հաստատման գործում: Ցանկացած հարցի լուծում՝ լինի դա տնտեսական, սոցիալական, թե մշակութային, վերածվում է համարյա քաղաքական պրոբլեմի: Էլ չեմ խոսում մեր հանրապետության ղեկավարների ուղևորությունների մասին: Չեն կարողանում անարգել Լեռնային Ղարաբաղ մեկնել գիտության ու մշակույթի գործիչները: Այսինքն, հիմա էլ տեղ են գտնում նախկին մտածողության, նախկին մոտեցումների բազմաթիվ վերապրուկներ: Այս ամենը խարխլում է հավատը ռեալ փոփոխությունների նկատմամբ:

Տարիներ շարունակ մենք բացարձակացրել ենք դասակարգային համերաշխությունը: Դրանով թմրեցրել ենք ինքներս մեզ: Այսօր մենք տեսնում ենք. ազգային պրոբլեմների նկատմամբ անտարբերության դեպքում ժողովրդի կյանքում կարող են գերիշխել ազգային զգացումները, ծնելով ազգային համերաշխության դրսևորման ալիք:

Հայաստանում Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը դարձել է համազգային գաղափար, որն այնքան խորն է թափանցել մարդկանց սրտերը, որ անգամ աննախադեպ տարերային աղետը մոռանալ չտվեց այն:

ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտեի ստեղծումը ռեալ իրադրության թելադրած փոխզիջում է: Ցավոք, կոմիտեն ժառանգեց մարզային ինքնավարության իրավական անկատարությունները և չդարձավ ինքնուրույն կառավարչական համա-



կարգ, որն ինքնավար մարզը դներ կենտրոնի անմիջական ենթակայության ներքո: Մարդկանց մեջ անվստահություն առաջացավ կոմիտեի նկատմամբ: ԼՂԻՄ-ում նորից սրվել է իրադրությունը, որը իրավիճակի բարդացման պայթուցիչ է դարձել նաև մեր հանրապետությունում:

Կարևոր է, ինչպես նշվեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ազգամիջյան հարցերի հանձնաժողովի վերջերս կայացած նիստում, ընդլայնել հատուկ կառավարման կոմիտեի լիազորությունները, նրան ռեալ իրավունքներ տալ ինքնուրույն լուծելու ինքնավար մարզի բոլոր կենսականորեն կարևոր հարցերը:

Միևնույն ժամանակ ակնհայտ է նաև մարզային մարմինների՝ կուսմարզկոմի և մարզխորհրդի գործառույթների վերականգնման անհրաժեշտությունը, հետագայում նրանց հանձնելով ամբողջ իշխանությունն ու կենտրոնին ենթարկվելու իրավունքները:

Երկրի ղեկավարությունը մեծ ուշադրություն է նվիրում Լեռնային Ղարաբաղի պրոբլեմին: Հարցերը բազմիցս քննարկվել են ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահությունում, կառավարությունում: Բայց պրոբլեմը դարձյալ սուր է, արյունածոր վերքը չի սպիանում:

Մեր համագումարն օժտված է այնպիսի կարևոր իրավունքով, ինչպիսին հանրաքվե անցկացնելու որոշման ընդունումն է: Կարծում եմ, որ համագումարը կարող էր Լեռնային Ղարաբաղի առնչությամբ օգտվել այդ իրավունքից: Թող այդ ինքնավար մարզի բնակչությունը կամքի ազատ արտահայտմամբ ինքը վճռի իր բախտը:

Յուրաքանչյուր ժողովուրդ ունի իր «ցավոտ կետերը»: Եվ ոչ միայն այսօրվա, այլև պատմական: Հայ ժողովրդի համար այդպիսի «ցավոտ կետ» է Արևմտյան Հայաստանի տարածքում կատարված ցեղասպանության անամոք վերքը: Արտահայտելով հայ ժողովրդի իղձերը, հանրապետության Գերագույն խորհուրդը օրենք է ընդունել ցեղասպանության դատապարտման մասին և համապատասխան առաջարկությամբ դիմել ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահություն:

Մենք դիմում ենք նորընտիր ԽՍՀՄ Գերագույն խորհրդին՝ հաստատակամորեն խնդրելով արձագանքել մեր առաջարկությանը: Ցեղասպանությունը որպես մարդկության դեմ ուղղված հրեշավոր հանցագործություն, չի կարող մնալ առանց դատապարտման: **(Ծափահարություններ):**

Սումգայիթի ողբերգությունը, որը պատշաճ գնահատական չստացավ, բողոքի պայթյուն առաջ բերեց, ծնեց գաղթականների անչափ բարդ պրոբլեմը: Այսօր Ադրբեջանից 200 հազար հայ գաղթականներ են գտնվում մեր հանրապետությունում, տասնյակ հազարավոր ադրբեջանցիներ հեռացել են Հայաստանից: Գումարեք 200 հազար հայ գաղթականներին և երկրաշարժից հետո անօթևան մնացած 530 հազար մարդկանց և կպատկերացնեք վիճակի ամբողջ դրամատիզմը: Հանրապետության բնակչության գրեթե մեկ երրորդը զրկվել է բնակարանից, շատերն առանց աշխատանքի են մնացել:

Չեմ կարող չասել նաև արտադրությունում մարդկանց զանգվածային թունավորումների պատճառների ու մեղավորների ի հայտ բերման գործում իրավապահ մարմինների, միութենական ու հանրապետական հանձնաժողովների հանդես բերած անզորության, դանդաղկոտության մասին, թունավորումներ, որոնք շարունակվում են արդեն մի քանի ամիս: ձգձգումը խռովում

Մի ամբողջ շարք ցավագին հարցերի լուծման հետ կապված ազգային է հանրապետությունը, հունից հանում մարդկանց, ծնում սոցիալական և ազգային անպաշտպանվածության զգացում, հանրապետության ղեկավարության նկատմամբ վստահության ճգնաժամ:

Զեկուցման մեջ արդարացիորեն նշվեց վերակառուցման սկզբում ազգային հարցի թերագնահատումը: Մենք թանկ ենք վճարում ազգամիջյան հարաբերությունների որոշ հարցերի լուծումն ուշացնելու, ձեռնարկվող միջոցների դանդաղության ու կիսատպռատության համար:

Հայ և ադրբեջանական ժողովուրդների լուրջ առճակատումը իրականության տխուր փաստ է: Այն անհնար է անտեսել: Մեր երկու ժողովուրդները այսուհետև էլ պետք է կողք-կողքի ապրեն: Թույլ չտալ, որ խորանա ճգնաժամը երկու ժողովուրդների հարաբերություններում, վերացնել կոնֆլիկտային իրավիճակը՝ սա չափազանց կարևոր խնդիր է: Ուստի և երկու հանրապետությունները և առաջին հերթին՝ Հայաստանի կոմկուսն ու Ադրբեջանի կոմկուսը կոչված են բոլոր հնարավորությունները օգտագործել խորթացումը հաղթահարելու, փոխըմբռնման ու վստահության մթնոլորտը վերականգնելու համար:

Ազգամիջյան հարաբերությունների կարգավորման գործում բոլոր դժվարությունները կապված են դրանց դեմոկրատական լուծման իրավական մեխանիզմի բացակայության, ԽՍՀՄ սահմանադրության անկատարության հետ, որի մի հոդվածը բացառում է մյուսին, որոշ բաժիններ ստեղծված են նոր պայմաններում, իսկ մյուսները, ընդ որում մեծ մասը, ժառանգություն են մնացել լճացման ժամանակներից:

Մեր կարծիքով, օգտակար կլիներ, եթե համագումարը այս հարցի առթիվ մշակեր դիրքորոշում, որոշվեր, թե պետության հիմնական օրենքը ինչպես համապատասխանեցնել այսօրվա իրողություններին, այդ թվում նաև ազգամիջյան հարաբերությունների հարցերում:

Մենք արդարացիորեն շատ բան ենք վերանայում այդ ոլորտում: Վարվում է կենտրոնի ու միութենական հանրապետությունների փոխհարաբերություններում դեմոկրատական սկզբունքների հաստատման, տնտեսական, սոցիալական և մշակութային կյանքի հարցերի լուծման գործում հանրապետությունների սուվերենության ամրապնդման կուրս:

Կարծում եմ, այս պայմաններում, ինչպես երբեք, կարևոր է ունենալ հստակ կողմնորոշիչ, հուսալի չափանիշ, որոնք մեզ օգնեն խուսափելու հապճեպ քայլերից, անցանկալի ծայրահեղություններից: Այդպիսի կողմնորոշիչն ու չափանիշը մեր խորհրդային պետության ամրապնդումն է որպես սուվերեն հանրապետությունների ֆեդերացիայի:

Այո, մեր տունը նորոգման կարիք ունի: Այս ճշմարտությանը մեր հասարակությունը տառապանքով է հասել: Բայց մեր բոլոր գաղափարները, մեր բոլոր քայլերը պետք է նպատակամղված լինեն այդ տան ամրացմանը, մեր հանրապետությունների մեր ժողովուրդների միասնացման ավելի վսեմ ձևերի ստեղծմանը:

Ընկերնե՛ր, ես համաձայն չեմ նրանց հետ, ովքեր փորձում են ստվեր գցել մեր համագումարի աշխատանքի վրա: Իր բոլոր պակասություններով, դժվարություններով հանդերձ այն անցնում է լայն դեմոկրատական հիմքի վրա: Մենք առաջին անգամ ենք տեսնում այսքան անկեղծ, ազնիվ խոսակցություն մեր պրոբլեմների մասին, հնարավորություն ունենք հակադրելու տարբեր կարծիքներ, հայտարարելու մեր դիրքորոշումը: Ես գտնում եմ, որ սա համագումարի ամենամեծ նվաճումն է: Սա լավ հիմք է այն բարդագույն խնդիրների լուծման ուղիների արդյունավետ որոնման համար, որ մեր առջև դնում է երկրի կյանքի ներկա անչափ պատասխանատու փուլը: **(Ծափահարություններ):**

## Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ ԵԼՈՒՅԹԸ

Ընկեր դեպուտատներ, անցյալ տարվա վերջին Խորհրդային Հայաստանը ենթարկվեց մի վիթխարի աղետի: Հսկայական ավերիչ ուժի երկրաշարժն ընդգրկեց Լենինականից մինչև Կիրովական ընկած ամբողջ տարածությունը և բոլոր հարակից շրջանները: Գրեթե կես միլիոն բնակչություն անօթևան մնաց այդ աղետի հետևանքով: Լենինականի շրջանում ձմեռները, ես սա ասում եմ նրանց համար, ովքեր պատկերացում չունեն, որ Հայաստանը սաստիկ բազմազան է կլիմայական գոտիների առումով, խստաշունչ են, և ստեղծվեց անչափ ծանր վիճակ: Եվ մեզ համար այդ դժվարին, ծանր ժամանակաշրջանում մենք առատաձեռն օգնություն ստացանք Խորհրդային Միության բոլոր հանրապետություններից ու մարզերից: Աշխարհի բոլոր ժողովուրդները, պետություններն ու կառավարությունները Հայաստանին ցույց տվեցին բարոյական ու նյութական օժանդակություն, որը մենք երբեք չենք մոռանա:

Քանի որ ժողովրդական դեպուտատների մեր առաջին համագումարին ուշիուշով հետևում են մեր ամբողջ երկիրը և բովանդակ աշխարհը, ես օգտվում եմ հնարավորությունից՝ բոլոր խորհրդային ժողովուրդներին, համայն աշխարհի քաղաքացիներին խորագույն շնորհակալություն հայտնելու համամարդկային համերաշխության այդ հուժկու, ես կասեի, չտեսնված դրսևորման համար: **(Ծափահարություններ):**

Սպիտակ քաղաքը՝ երկրաշարժի էպիկենտրոնը, որից ոչինչ չմնաց, դարձել է մարդու բարության խորհրդանիշ:



Հայաստանը խոնարհվում է ձեր առջև, մոլորակի մարդիկ: Ցավոք, նույն անցյալ տարում մենք նաև տեսանք թախծալի շատ բաներ, ունեցանք ուրիշ ծանր փորձություններ: 1988 թվականի մարտի սկզբին մենք ընդունեցինք հազարավոր գաղթականների, որոնք փրկություն էին գտել ոչ թե երկրաշարժից, այլ Սումգայիթի բռնությունից: Այդ քաղաքի անունը շատերը դիտում են որպես ազգային թշնամանքի խորհրդանիշ: Ես դա չեմ ուզում, որովհետև ես շատ ու շատ եմ հարգում աշխատանքը բազում հազարավոր այն ադրբեջանցիների, ռուսների ու հայերի, ովքեր համատեղ կառուցել են այդ երիտասարդ արդյունաբերական կենտրոնը և որտեղ, ի դեպ, կան նաև սեփական պրոբլեմներ: Բայց հարկավոր է այնպես անել, որ սումգայիթը չկրկնվի:

Դեպուտատ Ազիզբեկովան այստեղ գծագրեց ադրբեջանա-հայկական բարեկամության պատկերը: Այդ բարեկամությունը, ի դեպ, ունեցել է երկարատև պատմություն, բայց նա մոռացավ ասել, թե այդ բարեկամության մեջ ինչպե՞ս են ներմուծվում Սումգայիթի իրադարձությունները: Պետք է գիտակցել, որ ինտերնացիոնալիզմը բառերի չի հանգում, ինտերնացիոնալիզմը ամրապնդվում է իրական գործերով միայն:

Ամբողջ անցյալ տարվա ընթացքում և այս տարվա սկզբին մենք ամեն օր իմանում էինք, թե ինչպես է հուզվում Հայաստանի կազմից ապօրինաբար խլված Լեռնային Ղարաբաղի ժողովուրդը, որի կեղեքումները տևում են արդեն տասնամյակներ:

Այս ամենը ծանր հարված է Խորհրդային Միության ժողովուրդների միասնությանը: Իսկ չէ՞ որ այդ միասնությունը մեր երկրի ապագայի երաշխիքն է, գլխավոր երաշխիքը:

Եվ, եկեք, ընկերներ, պահպանենք և ուժեղացնենք այդ միասնությունը: Ու թեև իմ ասածը, ի դեպ, ընդգրկում է նաև քննադատություն մեր երկրի կենտրոնական մարմինների հասցեին, որոնք մեր հասարակությունը անբավարար են պաշտպանում ազգամիջյան բախումներից ու կեղեքումներից, ես, այնուամենայնիվ հակամետ չեմ կենտրոնական մարմինների թուլացման: Բայց ես պահանջում եմ, որ նրանք ավելի լավ աշխատեն, չաջակցեն այն ուժերին, որոնք ձգտում են թուլացնել մեր ժողովուրդների միասնությունը:

Ավելին, ինձ թվում է, որ կենտրոնից և ծայրամասերին պատկանելիք իրավունքների ծավալի վերաբերյալ վեճը՝ այս թեմային նվիրված մեծ խոսակցությունը, բոլորովին ճիշտ չի մղվում: Չէ՞ որ իշխանության ղեկավարությունը, նրա ապարատները ստեղծված են միայն նրա համար, որ ծառայեն ժողովրդին: Դա նրանց սուրբ պարտականությունն է: Իսկ պարտականությունները լավ կատարելու համար դրանք պետք է հստակորեն սահմանված և բաժանված լինեն: Պարտականությունների և ֆունկցիաների հստակ ու ճշգրիտ բաշխումը բացարձակապես անհրաժեշտ է: Հարկավոր է, որ մենք ճշգրիտ իմանանք, թե մեզանից յուրաքանչյուրը ինչի համար է պատասխանատու:

Ի՞նչ է ստացվում: Չէ՞ որ աշխատանքում ամեն մի թերություն ի հայտ բերվելիս, ամեն մի վատ բանի ժամանակ, որպիսիք հաճախ են լինում, միշտ ծագում է միևնույն հարցը՝ ո՞վ է մեղավոր: Իսկ եթե յուրաքանչյուրը ստույգ իմանար, թե ինչի համար է պատասխանատու, այսինքն ստույգ իմանար իր պարտականությունները, ապա դեպքից անմիջապես հետո մենք կտեսնեինք հրաժարականը համապատասխան պաշտոնյայի, այսինքն համապատասխան պարտականությունները կրողի հրաժարականը:

Ի դեպ, մեզանում «պաշտոնյա» («չինովնիկ») բառը չգիտես ինչու համարում են վատ բառ: Ոչ, պաշտոնյան նախ և առաջ մի մարդ է, որը կատարում է իրեն հանձնարարված միանգամայն որոշակի պարտականություններ: Մենք մի տեսակ համաձայնեցինք այդ անվանափոխությանը: Եվ նրանք սկսեցին ավելի շատ մոռանալ, որ իրենք պարտականությունների տեր են, ուրախացան, որ իրենց այլևս չեն անվանում պաշտոնյաներ, և սկսեցին ավելի շատ մտածել իրենց իրավունքների մասին:

Դրա հետ միասին պարտականությունների բաշխումը պետք է համապատասխանի ժողովրդի կարիքներին և նրա մեջ կասկածներ չհարուցի: Երբ պարտականությունների ճշգրիտ սահմանազատում կատարվի կենտրոնի ու հանրապետություն-

ների միջև, ապա պարտականությունների համեմատ էլ կարելի կլինի կատարել, պետք է կատարվի, իրավունքների բաշխումը: Ես չեմ ուզում ասել, որ նախ հարկավոր են միայն պարտականություններ և նոր միայն իրավունքներ: Այս պրոցեսը, իհարկե, միասնական է: Բայց պետք է պարզորոշվեն պարտականությունները ամենից առաջ ժողովրդի նկատմամբ: Եվ դրանից հետո արդեն, այսպես ասած, վճռեն, թե ինչ իրավունքներ են հարկավոր այդ պարտականությունների կատարման և միայն դրանց համար:

Եթե խորամուխ լինենք Ղարաբաղի հարցին, ապա պարզ կդառնա վեճի նաև պատճառը: 20-ական թվականներին Հայաստանի կազմից Ղարաբաղի ապօրինի, հակասահմանադրական խլումը հայ ժողովրդի գիտակցության մեջ նաև ելնում էր այն սկզբունքից, որ գլխավորը իրավունքի զավթումն է: Այդ տարածքի հայաթափումն սկսելը: Իսկ երբ հայաթափումն ավարտվի, ինչպես դա արդեն արվել է Նախիջևանում, ապա թող դրանից հետո ինչ ուզում են ասեն: Միևնույնն է, գործն արդեն արված կլինի: Լեռնային Ղարաբաղի դրության վերջնական նորմալացման հարցը կարելի է լուծել ժողովուրդների ինքնորոշման սկզբունքի հիման վրա միայն: Ինքը կյանքն է ցույց տվել, որ ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքը նման հարցերի լուծման միակ եղանակն է: Եվ դա, իհարկե, կհամապատասխանի վերակառուցման ոգուն:

Ընկերներ, մեծ նշանակություն ունեն արտաքին քաղաքականության հարցերը, որոնց նվիրված էր Միխայիլ Սերգեևիչի զեկուցման երկրորդ մասը: Այստեղ մեր երկիրը ունի հիրավի համաշխարհային մասշտաբի հաջողություններ: Դրանք պայմանավորված էին նոր մտածողության ներդրումով: Այդ մտածողությունը, դրա ներդրումը հանգեցրին լարվածության թուլացման ամբողջ աշխարհում: Սա մեր երկրի մեծ ծառայությունն է:

Մեր զորքերը դուրս են բերված Աֆղանստանից: Ես կարծում եմ, որ այս ամբողջ ոլորտում կարելի է լիակատար հավանություն հայտնել մեր կառավարության գործունեությանը: **(Ծափահարություններ)**: Բայց մենք մեր կառավարությանը խնդրում ենք մշտապես նկատի ունենալ նաև այն փաստը, որ ոչ միայն ամբողջությամբ վերցրած Միությունը, այլև Միության ժողովուրդներից յուրաքանչյուրը ունի ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական շահեր: Օրինակներ:

Առաջին: Երբ արտաքին գործերի մինիստր (իհարկե, նախկին) Մոլոտովը իր ժամանակին հայ ժողովրդի անունից հայտարարեց, թե նա հրաժարվում է Կարսի մարզի և այն տարածքի վերադարձման պահանջներից, որտեղ կատարվեց 1915 թվականի ցեղասպանությունը, որը լավ հայտնի է ամբողջ աշխարհին, նա ստում էր: Նա անգթորեն ոտնահարում էր Խորհրդային Միության ժողովուրդներից մեկի զգացմունքներն ու շահերը: Հայ ժողովուրդը խաղաղության կողմնակից է: Ոչ ոք չի առաջարկում այս հարցում ուժ գործադրել, բայց մենք հուսով ենք, որ այս հարցը ապագայում կգտնի իր խաղաղ լուծումը:

Ուրիշ օրինակ: Մի շարք արտասահմանյան պետություններ, այդ թվում Եվրապառլամենտը, պաշտոնապես ճանաչել և դատապարտել են օսմանյան Թուրքիայի կողմից 1915 թվականին իրագործած հայերի ցեղասպանությունը: Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը վերջերս որոշում ընդունեց ԽՍՀՄ Գերագույն խորհրդին դիմել 1915 թվականին Թուրքիայում հայ ժողովրդի կոտորածի պաշտոնական դատապարտման խնդրանքով: Դա նույնքան արդարացի կլինի, որքան Ղրիմից թաթարների արտաքսման դատապարտումը:

Այստեղ ուզում եմ կատարել ևս մեկ հակիրճ, բայց կարևոր հավաստում: Մեզանից շատերը, ծայրամասային հանրապետությունների ներկայացուցիչները այստեղ խոսեցին իրենց ժողովուրդների ազգային զգացմունքների և, մասնավորապես, այն դեպքերի մասին, երբ ազգային գիտակցությունը վիրավորվել է: Այո, մեր ընդհանուր պատմության մեջ եղել են շատ տառապանքներ ու վիրավորանքներ: Բայց արդարացի պահանջների, սեփական ցավի հիշատակումների այս մթնոլորտում մենք պարտավոր ենք պատշաճը հատուցել ռուս ժողովրդի զարմանալի տոկունությանը, ժողովուրդ, որը բազմաթիվ զոհեր տվեց Հայրենական պատերազմում, տարավ գյուղացիաթափման և կազակաթափման սարսափները, դրսևորեց աշխատասիրության, ստեղծագործական նախաձեռնության և մյուս ժողովուրդների հանդեպ սիրո օրինակներ: Մենք ուզում ենք, թե ոչ, ռուս ժողովուրդը դրված է այնպիսի պայմանների մեջ, երբ նա կրում է ամենածանր բեռը, ամենածանր պարտականությունները, որոնցից նա չի կարող ազատվել իր վիճակի բերումով: Այնպիսի համագումարում, ինչպիսին է ժողովրդական դեպուտատների ներկայիս առաջին համագումարը, միութենական հանրապետություններում ապրող բոլոր ժողովուրդների ներկայացուցիչների կողմից նման հավաստումը, հուսով եմ, միանգամայն տեղին կհամարվի: **(Ծափահարություններ)**:



Ընկերներ, թույլ տվեք հույս հայտնել, որ մեր կողմից առաջարկվող հարցերի գոնե մի մասը կլուծվի այս համագումարի աշխատանքի պրոցեսում: **(Ծափահարություններ)**:

# Բ. Վ. ԴԱԴԱՄՅԱՆԻ ԵԼՈՒՅԹԸ

Բաշկիրիայում պատահած աղետը ցնցեց ղարաբաղցիներիս, ծանոթ մորմոք հարուցեց մեր սրտերում: Մենք ամբողջ երկրի հետ ողբում ենք հարյուրավոր զոհվածներին:

Թանկագին բարեկամներ, դուք միայնակ չեք ձեր դժբախտության ու տառապանքների մեջ: Ձեզ հետ են ամբողջ Միության արյունակից եղբայրները: Սոսկալի աղետի դեմ-հանդիման վերջերս իրենց ողբերգությունից խոցված ղարաբաղցիները ագում են զոհվածների համար, գիտակցում կորուստների անդառնալիությունը և ողբում են նրանց: Փորձությունների այս դժնդակ ժամին արիություն ու համբերություն ենք մաղթում տուժածների հարազատներին:

Ուրիշի վիշտ չի լինում, և այդ ահավոր հարվածին կարելի է դիմանալ եղբայրական ժողովուրդների միայն իսկապես իրավահավասար միասնական ընտանիքում, հենվելով կարեկցանքի և աջակցության վրա: Ղարաբաղի ժողովուրդը ցավակցում է: Ես հաղորդում եմ, որ Հայաստանի և Ղարաբաղի բարեգործական ընկերության ներկայացուցիչներն արդեն աղետի վայր են մեկնել՝ իրենց հետ տանելով հանգանակված 50 հազար ռուբլի և 40 արկղ դեղորայք:

Հարգելի նախագահ, հարգելի դեպուտատներ, Միխայիլ Սերգեևիչը համագումարում ունեցած ելույթում խոսելով ազգային պրոբլեմների մասին, օգտագործեց գութանի պատկերը: Եթե սկսենք բաժանագծեր քաշել, եթե սկսենք գութանով անցնել երկրով մեկ, դա կործանարար ուղի կլինի: Ամեն ինչ ճիշտ է: Բայց եկեք ազնվորեն մեզ հարց տանք, իսկ ո՞վ է գութանով անցել Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ճակատագրի վրայով: 1921 թվականի հուլիսի 4-ին ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի պլենումում որոշում ընդունվեց Լեռնային Ղարաբաղը (դա հայոց հնադարյան Արցախ նահանգի մի մասն է) մտցնել Խորհրդային Հայաստանի կազմի մեջ: Բայց արդեն հաջորդ օրը Կովկասյան բյուրոյի նոր նիստում Ստալինի ցանկությամբ հայ ժողովուրդը բաժանվեց երկու մասի, և մարզը, որը 95 տոկոսով բնակեցված էր հայերով, հանձնվեց Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմին՝ հետևյալ հիմնավորումով. ես մեջբերում եմ անում. «... ելնելով հայերի ու մուսուլմանների միջև ազգային հաշտության անհրաժեշտությունից...»: Ավելի ուշ Հայկական և Ադրբեջանական ԽՍՀ-ների միջև սահմանագծումը անցկացվեց այնպես, որ Լեռնային Ղարաբաղը Հայաստանի հետ ընդհանուր սահման չուներ: Կանխատեսորեն հինգկիլոմետրանոց սանիտարական կորդոն ստեղծվեց հայ ժողովրդի երկու մասերի միջև:

Նրանք, ովքեր բաժանագծեր էին քաշում, լավ գիտեին, թե ինչ են ուզում: Ո՞րն է դրա պատճառը: Անհեռատեսությու՞նը, թե՞ «Բաժանի՛ր, որ տիրես» քաղաքականությունը: Դե լավ, բաժանեցին, անջատեցին, մտցրեցին: Իսկ ինչպիսի՞ն եղավ արդյունքը, ի՞նչ հաջորդեց: Հաջորդեց ԼՂԻՄ-ի հայ բնակչության նկատմամբ խտրականություն կիրառելու և հայրենի հողից նրան արտամղելու քաղաքականությունը: Փոխվում էին Ադրբեջանական ԽՍՀ-ի ղեկավարները, փոխվում էին բառերն ու լոզունգները, բայց այդ քաղաքականությունը մնում էր անփոփոխ: Խտրականությունն ընդգրկել էր բոլոր ոլորտները. էկոնոմիկան, կադրերը, կրթությունը, մշակույթը: Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը վերածվել էր Ադրբեջանի հումքային կցորդի, ժողովուրդը հեռանում էր իր հողից: Այսօր Լեռնային Ղարաբաղից դուրս բնակվում են մոտ 300 հազար ղարաբաղցի հայեր, որոնք ստիպված հեռացել են այնտեղից: 1970—1979 թվականներին Լեռնային Ղարաբաղում մնացել էր այնտեղ ծնված սոսկ յուրաքանչյուր տասներորդ հայը, մնացած ինը ստիպված էր եղել արտագաղթել: Հայաստանի հետ մշակութային ու հոգևոր կապեր հաստատելու ամեն

մի փորձ դաժանորեն կասեցվում էր: Հայերից փորձում էին խլել ոչ միայն ապագան, այլև անցյալը:

«Հայաստանի պատմությունը» վտարված էր հայկական դպրոցներից: Ոչնչացվում և պղծվում էին հայ մշակույթի ու ճարտարապետության հնագույն հուշարձանները՝ մեր ժողովրդին մեր հողի պատկանելության այդ լուռ վկայությունները: Նույնիսկ հնադարյան հայկական խաչքարերը հայտարարվում էին ադրբեջանցիների նախնիների հուշարձաններ: Բանն այնտեղ էր հասել, որ հայերին սկսել էին ապացուցել, թե նրանք բնավ էլ հայեր չեն, այլ հայացած աղվաններ: Նման պատմագաղափարախոսական ագրեսիայի նպատակը մեկն է՝ ապացուցել, թե հայերը եկվորներ, օտարներ են այդ հողում:

Ոչ թե մեկ, երկու օր, այլ տասնամյակներ շարունակ ոտնահարվում է Ղարաբաղի հայերի ազգային արժանապատվությունը: Ու չկա Կովկասյան բյուրոյի խոստացած ազգային հաշտությունը: Լեռնային Ղարաբաղի հայերի աչքի առաջ է Նախիջևանի ողբերգական ճակատագրի օրինակը: Այդ հնադարյան հայկական երկրամասը Թուրքիայի պահանջով և Ռուսաստանի ու Թուրքիայի 1921 թվականի պայմանագրին համապատասխան հանձնվեց Ադրբեջանին, որը յուրովի տնօրինեց այն: Այսօր այդ ինքնավար հանրապետությունում, որը ամբողջովին Հայաստանի տարածքում է, Ադրբեջանին սահմանակից չէ, բայց մտնում է նրա մեջ, փաստորեն հայեր չկան: Ազգային ազատագրական շարժման գաղափարը ղարաբաղցի հայերի մտքերին իշխել է այդ բոլոր տասնամյակների ընթացքում: ԼՂԻՄ-ի ժողովուրդը բազմիցս ոտքի է ելել ազգային ճնշման դեմ: Բայց բոլոր ելույթները դաժանորեն ճնշվել են:

Վերակառուցումը հույսեր ծնեց: Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի մարզային խորհուրդը, արտահայտելով իր ժողովրդի կամքը, 1988 թվականի փետրվարին դիմեց Ադրբեջանական և Հայկական ԽՍՀ-ների Գերագույն խորհուրդներին, ինչպես նաև ԽՍՀՄ Գերագույն խորհրդին՝ խնդրելով քննության առնել և լուծել Հայաստանի հետ Լեռնային Ղարաբաղի վերամիավորման հարցը: Տխուր ճշմարտություն է, որ մեր երկրում բարդ պրոբլեմների նկատմամբ հենց սկզբից ընդունվում են բնավ ոչ լավագույն լուծումները: Կամ էլ հետևում են լճացման ոսկե կանոնին՝ պրոբլեմը մի կողմ դնել, այն չլուծել: Այդպես եղավ նաև Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի հետ: Երկրի ղեկավարությունը, սկսելով վերակառուցումը, իհարկե, հասկանում էր, որ ազգային պրոբլեմների կողքով չի անցնի: Դժվարություններ սպասվում էին: Հենց դրա համար ԼՂԻՄ-ի իրադարձությունները ընկալվեցին ոչ թե որպես այդպիսիք իրենց ռեալ էությամբ, այլ որպես վտանգավոր նախադեպ, որպես հնարավոր սպառնալիք վերակառուցմանը: Այստեղից էլ իշխանությունների առաջին վերաբերմունքը՝ արգելել, այստեղից էլ քաղբյուրոյի 1988 թվականի փետրվարի 21-ի սխալ որոշումը և այստեղից էլ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության հուլիսի 18-ի որոշման կիսատ-պռատ միջոցները: Այդ որոշումները հաշվի չէին առնում իրավիճակի բարդությունն ու ռեալությունը:

Պրոբլեմի լուծման արհեստական ձգձգումը ռեգիոնում խիստ սրեց ազգամիջյան հարաբերությունները: Միայն շատ ամիսներ անց սկսեցին ընդունել, որ պրոբլեմը կա, որ այն առաջացել է Ադրբեջանի նախկին ղեկավարության կողմից մեր նկատմամբ ցուցաբերված խտրական, նույնիսկ անմարդկային վերաբերմունքի հողի վրա, ինչպես ճիշտ բնորոշեց Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը:

Լեռնային Ղարաբաղի քաղաքական պրոբլեմը փորձում էին և փորձում են նենգափոխել տնտեսական պրոբլեմների: Իհարկե, ԼՂԻՄ-ի էկոնոմիկան ծայրաստիճան բարձիթողի վիճակում է: Մենք էլ ենք հանդես գալիս էկոնոմիկան բարձրացնելու օգտին, ռեգիոնալ տնտհաշվարկի օգտին: Բայց մեզ համար գլխավորը քաղաքական պրոբլեմի լուծումն է ինքնորոշման շրջանակներում: Այն, որ առանց քաղաքական լուծման էկոնոմիկան կկաղա, ապացուցում է այն նույն 450 միլիոն ռուբլի գումարը, որ Մոսկվան հատկացրեց ԼՂԻՄ-ի համար, բայց ճանապարհին լռվեց-մնաց Բաքվում: Մենք այդ գումարը առայժմ չենք տեսել: Բացի դրանից, դուք բոլորդ հասկանում եք, որ փողը դադարում է թուղթ լինել միայն այն ժամանակ, երբ ապահովված է ֆոնդերով, մասնավորապես շինանյութերի, սարքավորումների ֆոնդերով, իսկ ֆոնդերի առյուծի բաժինը մենք պետք է ստանանք Բաքվից: Պետք է ստանանք, բայց չենք ստանում:



Ղարաբաղյան շարժումը առաջադրեց շատ հարցեր, որոնք դեռևս անպատասխան են մնում: Այստեղ գլխավորը հետևյալն է. մենք ընդունու՞մ ենք, արդյոք, ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքը: Մենք պնդում ենք, ընդգծել է Լենինը, որ սոցիալիզմի հանդեպ դավաճանություն կլիներ սոցիալիզմի օրոք ժողովուրդների ինքնորոշման իրականացումից հրաժարվելը: Այսօր, XX դարի վերջին, ազգերի ինքնորոշման իրավունքի ու պրակտիկայի հանրաճանաչ միջազգային նորմերին հակառակ, Հայաստանի հետ Լեռնային Ղարաբաղի վերամիավորման ժողովրդի կամքի պարզ ու աներկբա արտահայտությունը մեկնաբանվում է իբրև սահմանները վերաձևելու անթույլատրելի և հակաիրավական ձգտում, իբրև արմատապես ինչ-որ անթույլատրելի ու ապասոցիալական բան:

Մենք Լեռնային Ղարաբաղում արդյո՞ք պետք է դա հասկանանք որպես ազգերի ինքնորոշման սկզբունքներից կուսակցության փաստացի նահանջ: Համագումարին տված զեկուցման մեջ Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովն ասաց. «Ազգային ինքնորոշման սկզբունքը, որն առաջ է քաշել Լենինը, եղել ու մնում է կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության գլխավոր տարրերից մեկը»:

Այս բառերը ինչպե՞ս պետք է հասկանա Լեռնային Ղարաբաղի ժողովուրդը: Որպես հայ ժողովրդի երկու մասերի վերամիավորման համաձայնությու՞ն, թե՞ այո, բայց... տիպիկ քաղաքական լոզունգ:

Այս դահլիճում 85 տոկոսը կոմունիստներ են, և մենք որոշակիորեն ենք պատկերացնում կուսակցության դեմքը: Եկեք ինքներս մեզ հարցնենք, թե հանուն ինչի, հանուն այդ ո՞ր բարձրագույն սկզբունքների պետք է տառապի Ղարաբաղի հայ ժողովուրդը: Դա ի՞նչ ինքնորոշում է, եթե փոքրաթիվ ազգը ինքնորոշման համար պետք է թույլտվություն խնդրի ավելի մեծ ազգից: Վերջինս կարող է ողորմածաբար թույլատրել կամ ամբարտավանորեն արգելել: Սա ի՞նչ մեծապետական թույլատրական ինքնորոշում է: Ժամանակն է մեր սահմանադրությունը համապատասխանեցնել ինքնորոշման լենինյան կոնցեպցիային:

Կուզենայի ձեր ուշադրությունը բևեռել ընտրովի ապաստալինացման պրակտիկայի վրա: Ինչու՞ ազատվելով երկրի կյանքի մյուս բնագավառներում ստալինյան ժառանգությունից, մենք անսասան ենք թողնում ֆեդերատիվ կառուցվածքի սկզբունքների և ստրուկտուրայի բնագավառում Ստալինի ճնշմամբ ընդունված կամայական որոշումները: Չէ՞ որ ինքնավարության գոյություն ունեցող ստատուսը ըստ էության կիսաֆեոդալական հաստատություն է, ազգի հիերարխիայի վավերացման ձև: Այդ պայմաններում ազգերի իրավահավասարության հասկացությունն իսկ պատրանք է դառնում:

Իսկ հիմա ինքնորոշման վեհապանծ լոզունգից անցնենք իրականությանը և տեսնենք, թե ինչ ստացավ Լեռնային Ղարաբաղը ինքնորոշման փոխարեն: Նա ստացավ կառավարման հատուկ ձև. դադարեցված են ժողովրդական դեպուտատների մարզային խորհրդի, աշխատավորական կոլեկտիվների խորհրդի, կուսակցության մարզկոմի լիազորությունները: Փաստորեն լուծարքի է ենթարկված տեղական խորհրդային իշխանությունը: Հատուկ կառավարման կոմիտե ստեղծելու որոշումը հասարակայնությանը հրամցված է իբրև փոխզիջումային, ոչ ոքի շահերին չդիպչող, ռեգիոնում իրադրությունը կայունացնող որոշում: Սակայն դա այդպես չէ: Կառավարման հատուկ ձևը հենվում է ուժեղ ռազմական ներկայության վրա, որը, ցավոք, Ադրբեջանի ղեկավարությանը չի խանգարում վարել հայ ժողովրդի խտրականության ավելի կոշտ գիծ, ազգամիջյան կոնֆլիկտը շարունակվում է խորանալ: Մենք մեզ արդյոք հաշիվ տալի՞ս ենք, որ ԼՂԻՄ-ում Ադրբեջանի ղեկավարությունը իրագործում է «Կիպրոսի մոդելի» տարբերակը: Մարզը ըստ ազգային հատկանիշի տրոհվում է երկու հակադիր համայնքների. ահա թե ինչի հանգեցրեց Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի լուծումը հետաձգելու ցանկությունը: Իրադարձությունների նման զարգացումը մենք պարտավոր էինք կանխատեսել, փոխանակ սաստկացնելով ահ ու սարսափը, խոսեինք «անգուշակելի հետևանքների մասին»:

Սումգայիթի ոճրագործությունը առանձին հարց է: Չխորանալով դրա մեջ, ուզում եմ նշել, որ Սումգայիթի ոճրագործության քաղաքական գնահատականը կարևոր է ոչ միայն հայ ժողովրդի, այլև ադրբեջանական ժողովրդի համար: Իմ կողմից կուզենայի հավաստիացնել, որ մենք հեռու ենք այդ չարագործության համար պատասխանատվությունը ադրբեջանական ժողովրդի վրա դնելուց և խորապես ափսոսում ենք, որ մինչև հիմա չեն հայտնաբերված դրա իսկական ոգեշնչողներն ու կազմակերպիչները:

Վերջացնելով ելույթս, կուզենայի իմ ընտրողների հանձնարարությամբ համագումարին հանձնել Լեռնային Ղարաբաղի հայ ժողովրդի պահանջագիրը: Մենք պահանջում ենք.

Առաջին: Անհապաղ վերականգնել ԽՄԿԿ մարզկոմը և ԼՂԻՄ-ի մարզգործկոմը: Վերադարձրեք խորհրդային իշխանությունը Ղարաբաղին:

Երկրորդ: Չեղյալ հայտարարել Կովկասյան բյուրոյի 1921 թվականի հուլիսի 5-ի որոշումը որպես հակաիրավական:

Երրորդ: Ստեղծել Գերագույն խորհրդի հանձնաժողով ԼՂԻՄ-ի վերամիավորման ընթացակարգի կանոնարկման համար:

Եթե թույլ կտաք, ես ունեմ էլի երկու րոպե, ուզում եմ ընթերցել ժողովրդական դեպուտատների համագումարի որոշումը, այն նախագիծը, որ մենք առաջարկում ենք:

«Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի իրադրության մասին»: Սա որոշման այն նախագիծն է, որ մենք առաջարկում ենք:

Առաջին: Ստեղծել դեպուտատական հանձնաժողով իրադրության բազմակողմ ու օբյեկտիվ ուսումնասիրության և ԽՍՀՄ սահմանադրության 108 հոդվածի 2-րդ և 13-րդ կետերի, 73 հոդվածի 12-րդ կետի հիման վրա ԼՂԻՄ-ում համաժողովրդական հանրաքվեի նախապատրաստման համար:

ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը ԽՍՀՄ սահմանադրության 119 հոդվածի 6-րդ կետին համապատասխան Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում պետք է կազմակերպի ու անցկացնի հանրաքվե:

Երկրորդ: Մինչև հանրաքվե անցկացնելը ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտեին օժտել կենտրոնին մարզի ռեալ ենթակայության ապահովման լիազորություններով:

Երրորդ: Նպատակահարմար համարել իշխանության տեղական մարմինների ֆունկցիաների վերականգնումը:

Այստեղ դրված են 33 դեպուտատների ստորագրությունները:

---



# ԼԵՆԻՆՅԱՆ ՄԵԹՈԴԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԱՎՈՐԵՑՆՈՒՄ Է

**Մ. ՄՋԵԴԼՈՎ**

ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ աճում է հետաքրքրությունը չխեղաթյուրված լենինյան տեսական ժառանգության նկատմամբ, նրա գաղափարներին համապատասխանորեն, գիտականորեն տիրապետելու և դրանք օգտագործելու նկատմամբ: Այժմ միլիոնավոր մարդիկ, խուսափելով զանազան մեկնիչների միջնորդությունից, անմիջականորեն դիմում են լենինյան աշխատություններին՝ ձգտելով այնտեղից քաղել գիտելիքներ և ոգևորություն: Լենինից սովորելը նրա տեքստերի դպրոցական սերտումը չէ: Կատարելության դեպքում դա պետք է լինի այն նույն վերաբերմունքը, ինչ Լենինը դրսևորում էր Մարքսի և Էնգելսի նկատմամբ՝ «խորհրդակցելով նրանց հետ» (Ն. Կրուպսկայա), օգտագործելով նրանց մեթոդաբանությունը հասունացած հարցերի մանրակրկիտ հետազոտման և լուծման նպատակով, նոր պատմական պայմաններում սոցիալիզմի հաստատման առավել խելամիտ ուղիներ գտնելու համար:

Իր ողջ փայլուն կյանքը Լենինը նվիրաբերեց աշխատանքի մարդկանց, բոլոր ժողովուրդներին սոցիալական ու ազգային ճնշումից ազատագրելու, հասարակության հեղափոխական վերափոխման համար պայքարին: Նրա աշխատությունները պարունակում են հսկայական գաղափարատեսական հարստություն, որը հեղափոխական մտքի և հեղափոխական գործողության հզոր խթան է:

Վ. Ի. Լենինի ստեղծագործությունները լայնորեն հրատարակվում և տարածվում են ողջ երկրագնդում: Ըստ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալների, թարգմանությունների թվով դրանք աշխարհում գրավում են առաջին տեղը՝ գերազանցելով Աստվածաշնչի թարգմանությունները: Նրա աշխատությունները հրատարակված են աշխարհի ժողովուրդների 134 լեզուներով 65 երկրներում: Միայն ԽՍՀՄ-ում հրատարակված Լենինի աշխատությունների ընդհանուր տպաքանակը կազմում է ավելի քան կես միլիարդ օրինակ:

Լենինի աշխատությունների նկատմամբ ինչպիսի՞ մոտեցումը կարող է նրանց դարձնել հիրավի գործուն և գործող գաղափարաքաղաքական զենք մեր արդի դարաշրջանում՝ գիտատեխնիկական հեղափոխության, միջուկային զենքի, էկոլոգիական աղետների, մոլորակի ամբողջ սոցիալ-քաղաքական բնապատկերի արմատական փոփոխության դարաշրջանում:

**Հակապատմականությունն ու անխոհեմ երկրպագումը հակացուցված են լենինիզմին:** Մի շարք տասնամյակների ընթացքում վերաբերմունքը Լենինի (ասենք, նաև Մարքսի և Էնգելսի) աշխատությունների նկատմամբ, մեղմ ասած, հակասական էր: Արտաքնապես հարգելու զանազան դրսևորումների պակաս չի եղել՝ քաղվածքների առատ մեջբերում, պերճաշուք թանգարանների, հուշարձանների ստեղծում, քաղաքների ու գյուղերի վերանվանում, մրցանակների սահմանում և

---

*ՄՋԵԴԼՈՎ ՄԻՀՐԱՆ ՊԵՏՐՈՍԻ— փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՌԽՍՖՀ գիտության վաստակավոր գործիչ, ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի դիրեկտորի տեղակալ։*

ալն: Արտասանվում էին թե՛ երդումներ Վլադիմիր Իլյիչին, թե՛ «լենինյան կուրսով» ընթանալու կոչեր: Միևնույն ժամանակ բուն դասական ժառանգությունն ընկալվում էր ծայրաստիճան դոգմատիկորեն և օգտապաշտությամբ, հաճախ հանգեցվում ստերեոտիպերի որոշակի հավաքածուի, որոնք կոչված էին հիմնավորելու ընթացիկ քաղաքականությունում ծնված դիրքորոշումները: Այդ ստերեոտիպերը կարող էին փոփոխվել՝ կախված իրադրությունից, բայց բոլոր դեպքերում նախընտրված պատրանքները ավելի վեր էին դասվում, քան հայրենի և մոլորակային պրոբլեմների իրապաշտական վերլուծությունը: Դրա հետևանքով համաշխարհային մշակույթի, մարդկության ազատագրական մտքի մեծագույն մասը կազմող լենինյան ժառանգության (որը չի կարելի պոկել-անջատել նրա առաջացման ու զարգացման պատմական պայմաններից) գիտական յուրացումը նենգափոխվել էր առաջին հերթին այսրոպեական գործնական նպատակներ հետապնդող նպատակամղված մեկնաբանություններով: Այդպիսով գաղափարների ու սկզբունքների հանճարեղ դիալեկտիկական համակարգը վերածված էր քաղվածքների քարացած քրեստոմատիական տեղեկատուի, որի օգնությամբ կարելի էր հիմնավորել ցանկացած, երբեմն խելահեղ ձեռնարկումներ: Պատահական չէ, որ նման մոտեցման պայմաններում շատ «ոչ ձեռնտու» գաղափարներ ու դրույթներ ուղղակի լռության էին մատնվում, իսկ համակարգի էությունը աղավաղվում էր: Պարզվեց, որ նման պրակտիկայի հասցրած վնասը միանգամայն զգալի է: Խիստ կերպով ընկավ հասարակական գիտությունների վարկը, պակասեց հետաքրքրությունը մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործության նկատմամբ:

Մեր օրերում, անցյալի պրակտիկայի քննադատական իմաստավորման, հասարակության արմատական նորացման շրջափուլում դասականների գաղափարական ժառանգության հանդեպ եղած վերաբերմունքում կարելի է նկատել նոր բացասական դրսևորումներ: Հաճախ կարելի է լսել և կարդալ մարքսիզմ-լենինիզմի, նրա առանձին կողմերի բավականին հարձակողական, թեպետև մեծամասամբ քիչ իրազեկ կամ առհասարակ անիրազեկ քննադատություն: Որպես կանոն ժամանակակից քննադատները իրենց հարձակումների առարկան են դարձնում ոչ թե մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի բուն, ամբողջական բովանդակությունը, այլ այն գաղափարախոսական սխեման, որը երկար ժամանակ փոխարինել է նրան: Այդ հիման վրա մարքսիզմ-լենինիզմի ուսմունքն են մեղավոր ճանաչում այն բազմաթիվ չարիքների ու անհեթեթությունների համար, որոնք տեղի են ունեցել տարբեր երկրներում մարքսիզմ-լենինիզմի լոզունգների կոչով, հաշվի չառնելով, թե որքան աղավաղված է այդ ուսմունքն ընկալվել:

Ինչպես անցյալում, այնպես էլ ներկայումս դասականների ասույթները հաճախ մեքենայաբար օգտագործվել և օգտագործվում են կտրված այն կոնկրետ պատմական համատեքստից, որի պայմաններում նրանք առաջացել են, կտրված բուն հեղափոխական տեսության ամբողջական բովանդակությունից, դրա սկզբունքներից ու մեթոդաբանությունից: Նման մոտեցումը ծնում է սոսկ թյուրիմացություններ, որոնք խորանում են այն բանով, որ Լենինի մի շարք դիրքորոշումներ՝ կապված սոցիալիզմի նրա տեսունակության հետ, առաջացել են գաղափարական և քաղաքական սուր պայքարի պայմաններում, բարդ իրադրության ազդեցության տակ, ձևավորվել և արտահայտվել են բանավիճային ձևով, որը դրանց հաղորդել է խստություն և կտրականություն: Եվ դա մեկ անգամ ևս շեշտում է, որ միմիայն լենինյան աշխատությունների միագումարն է թույլ տալիս դատողություններ անելու սոցիալիզմի վերաբերյալ նրա պատկերացման բոլոր կողմերի վերաբերյալ: Մինչդեռ նեղություն չկրելով հարաբերակցելու լենինյան գաղափարները այն դարաշրջանի և իրական պայմանների հետ, որոնցում նրանք ծնվել են, չի կարելի հասկանալ, թե ինչն է նրանցում խստիվ պատմականորեն պայմանավորված՝ ուստի և պատմականորեն սահմանափակ ու հետևաբար պետք է գերազանցվի, և ինչն է արտահայտում սկզբունքները, մոտեցման մեթոդաբանությունը: Միմիայն հաշվի առնելով այն պատմական պայմանները, որոնց շրջանակներում տրվել են կոնկրետ պատասխաններ այս կամ այն դեպքերին, երևույթներին, միտումներին, կարելի կլինի հասկանալ սկզբունքների ողջ համակարգը, մարքս-լենինյան վերաբերմունքի ներքերանգները: Օրինակ, պետության և կոոպերացիայի, սեփականության ձևերի և ապրանքային արտադրության, սոցիալական արդարության և դեմոկրատիայի համամարդկային ու դասակարգային, հասարակական ու անձնական շահերի և այլնի նկատմամբ:

**Լենինիզմը զարգացող գիտություն է:** Մարքսիզմ-լենինիզմի դասականների ժառանգությունը վերստին ընթերցելիս կարևոր է նրանում շարադրված գաղափար-



ների համակարգին մոտենալ որպես գիտության, որն անընդհատ զարգանում է՝ արմատականորեն վերանայելով նրա այն դրույթները, որոնք իրենց դարն արդեն ապրել են, և որը համալրվում է նոր սոցիալական պրակտիկայում վերջնականապես ձևավորված դրույթներով: Այսօր լենինյան գաղափարները, ամենից առաջ սոցիալիզմի նրա տեսունակությունը մեզ համար հանդես է գալիս ոչ այնքան որպես պատրաստի լուծումների մի հավաքածու (թեպետև այս առումով էլ նրա ներուժը դեռևս ամենևին էլ բոլորի կողմից չի յուրացված, հետևաբար՝ չի սպառված), այլ ամենից առաջ որպես արդիական պրոցեսների, դեպի հասարակության նոր որակական վիճակ մեր շարժման վերլուծության մեթոդաբանական հիմք: Ուստի և կարևոր է հետ պահել արդիականության վրա լենինյան մտքերն ուղղակիորեն տեղադրելու փորձերից, դրանք իբրև ամենուրեք և ցանկացած ժամանակ պիտանի պատրաստի դեղատոմսեր ընկալելուց: Նման մոտեցումն արմատականորեն կխզվեր լենինիզմի ոգուց, խոր պատմականությունից և այդ ուսմունքի կոնկրետությունից: Ակնհայտ է նաև մերօրյա այս կամ այն իրողությունների հետ համատեքստից կտրված առանձին լենինյան դրույթները մեքենայաբար համադրելու անթույլատրելիությունը:

Դիալեկտիկամատերիալիստական մեթոդաբանության ողջ էությունն այն է, որ նրա համար ընդունելի չէ սոցիալական երևույթների նկատմամբ աբստրակտ նորմատիվային մոտեցումը, չի ձգտում դրանք ենթարկել նախապես սահմանված պարտադիր կարգադրագրերի: Մատերիալիստական դիալեկտիկայի ալֆան ու օմեգան կազմող կոնկրետ իրավիճակի կոնկրետ վերլուծությունը ամենից առաջ ենթադրում է ծավալվող պրոցեսների օբյեկտիվ հիմքի, տնտեսական նախադրյալների հայտաբերումը, նրանցում մասնակցող սոցիալական ուժերի՝ դասակարգերի, ազգությունների, սոցիալական, ժողովրդագրական և մասնագիտական խմբերի բացահայտումը, արդի արտաքին ու ներքին գործոնների, հասարակության կյանքի և ինստիտուտների բոլոր ոլորտների զարգացման մակարդակի օբյեկտիվ, իրական հաշվառումը, դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացումը հասունացած հարցերի լուծման գործում հնարավորին չափ ամենալայն մասսաների ակտիվ մասնակցությունը: Ընդ որում միշտ և ամեն ինչում կիզակետ դարձնել Մարդուն, նրա պահանջմունքները, շահերը, իսկ անհատի և հասարակության ազատության և բարօրության մեջ տեսնել սոցիալիզմի ձեռքբերումների նպատակն ու չափանիշը:

Պատահական չէ, որ Լենինը (ինչպես և նրա ուսուցիչներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը), ի տարբերություն այլ չափից ավելի փութաջան մարգարեների, չէր ձգտում տալ սոցիալիզմի մանրամասն բնորոշումը կամ սիստեմատիկ նկարագրումը: Նա բազմիցս ցույց է տվել անիմաստ լինելն այն փորձերի, որոնք նպատակ են ունեցել ցույց տալու, թե հետագայում հենց ինչպիսի ձևեր կընդունի հասարակության ու նրա ինստիտուտների կյանքը: Լենինյան մոտեցման ամենաբնորոշ գծերից մեկը վստահությունն էր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության նկատմամբ, որից ելնելով էլ կոչ էր անում, որպեսզի մենք «հետևենք կյանքին... ստեղծագործության լիակատար ազատություն տանք ժողովրդական զանգվածներին» (**ԵԼԺ**, հ. 35, էջ 29): Այդ իսկ պատճառով էլ նրա հայացքները սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի հարցերի վերաբերյալ չէին մնում անփոփոխ: Հատկապես նկատելի է նրանց էվոլյուցիան նէպ-ի տարիներին, որն արտացոլվել է Լենինի հայտնի քաղաքական կտակում՝ նրա մի շարք վերջին հոդվածներում ու նամակներում:

Լենինի համար, որը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո լարված աշխատում էր սոցիալիզմի ինքնազարգացման աղբյուրների, աշխատավորների ստեղծագործական ակտիվության խթանման ուղիների պրոբլեմի վրա, անփոփոխ մեթոդաբանական սկզբունք էր հրաժարումը ամեն տեսակի ինքնախաբեությունից, սոցիալիզմի առավելությունների ինքնաբերաբար իրականացման ցանկացած պատրանքներից: Նրա այդ դիրքորոշումն արտացոլվեց նոր հասարակությունը «անձնական շահի վրա», «տնտեսական հաշվարկի վրա» կառուցելու կոչում: «Առանց անձնական շահագրգռվածության ոչինչ չի ստացվի,— զգուշացնում էր նա:— Պետք է **կարողանալ** շահագրգռել» (**ԵԼԺ**, հ. 53, էջ 319): Նա խստորեն դեմ էր արտահայտվում ամեն կարգի հավասարարչության՝ բաշխման գործում, շեշտում վերջինիս անքակտելի կապը աշխատանքային ներդրման հետ: Վերակառուցման պայմաններում նման լենինյան սկզբունքների հենց վերածնունդն էլ թույլ է տալիս հուսալու, որ դրական տեղաշարժեր ձեռք կբերվեն խորհրդային երկրի էկոնոմիկայում:

Համաժողովրդական սեփականության առավելությունների միակողմանի մե-

ներով, մասնավոր հարցերով: Ընդհակառակը, Լենինը, հատկապես վերջին հոդվածներում ու նամակներում, շեշտում էր էկոնոմիկայի և քաղաքականության ամենակարևոր հարցերի լուծման գործում աշխատավորներին ներգրավելու անհրաժեշտությունը, նրանց մասնակցությունը համարում էր ձեռնարկվող միջոցների ճիշտ լինելու երաշխիքը:

Հեռու լինելով ուտոպիզմի ամեն մի դրսևորումից, Լենինը ելնում էր այն բանից, որ երկիրն իրոք կառավարելու համար աշխատավորներին հարկավոր է ընդհանուր և քաղաքական կուլտուրայի բարձր մակարդակ: Նա մշտապես մեծ ուշադրություն էր դարձնում նման մակարդակի ձևավորման ու բարձրացման հարցերին, անդրադառնում քաղաքացիների կրթության ու դաստիարակման, սոցիալիզմի օրոք աշխատանքի կուլտուրայի ձևավորման պրոբլեմներին: Հատկանշական է, որ կուլտուրականությունը, քաղաքակրթվածությունը նա դիտում էր որպես կոոպերացման, ինդուստրալացման, ինքնակառավարման, իսկ վերջին հաշվով՝ բուն սոցիալիզմի նախնական պայմաններ: «Մեզ համար,— գրում էր նա,— այժմ այդ կուլտուրական հեղափոխությունը բավական է, որպեսզի մեր երկիրը լիովին սոցիալիստական երկիր դառնա» (**ԵԼԺ**, հ. 45, էջ 446):

**Մյուս սոցիալիստական և դեմոկրատական շարժումների նկատմամբ վերաբերմունքի մասին:** Հայտնի է, թե որքան հանգամանորեն էր Լենինը հիմնավորում այն դրույթը, որ սոցիալիզմի մարքսիստական ուղղությունը չի առաջանում քաղաքակրթության մայրուղուց դուրս: Այդ գաղափարները նա զարգացրել է իր մի շարք աշխատություններում («Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը», «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը», «Կարլ Մարքս» և այլն): Ճիշտ է, իրեն նախորդած գաղափարական հոսանքների հետ մարքսիզմի դիալեկտիկական կապի գաղափարը երբեմն հանրամատչելի գրականությունում մեկնաբանում են որոշ սահմանափակությամբ, ողջ խնդիրը հանգեցնելով միայն հայտնի երեք աղբյուրներին: Մեզ թվում է, որ այս հարցում պետք է ավելի լայն մոտեցում ցուցաբերել: Բանվոր դասակարգի գիտական գաղափարախոսությունը խարսխվում էր առաջադեմ հասարակական մտքի վրա, մինչև Մարքսը գոյություն ունեցած բոլոր դրական ձեռքբերումների վրա: Այդ թվում և պատմագիտության ձեռքբերումների, մասնավորապես Գիզոյի, Թյերիի և այլ պատմաբանների աշխատությունների վրա, պատմաբաններ, որոնք ուսումնասիրում էին դասակարգային պայքարի առանձնահատկությունները և այլն:

Արտասահմանյան գրականությունում, որտեղ միտումնավոր են լուսաբանվում Վ. Ի. Լենինի հայացքներն ու քաղաքականությունը, հաճախ այն տեսակետն է տարածվում, թե իբր Լենինը, լինելով մարտնչող անհաշտվողական, անզիջում, հակված էր միանգամից դեն նետելու բոլոր այլ կարծիքները, այլ տեսական կոնցեպցիաները: Դա ճիշտ չէ:

Իհարկե, նա անհողդողդ էր մարքսիզմի սկզբունքները, աշխատավորների շահերը պաշտպանելու գործում: Բայց դա չի խոսում դեմոկրատական, սոցիալիստական մտքի բոլոր հոսանքների նկատմամբ նրա անհիմն ժխտողական վերաբերմունքի մասին: Հատկանշական օրինակ է նրա վերաբերմունքը ականավոր չինացի հեղափոխական-դեմոկրատ Սուն Յաթ-սենի նկատմամբ, սոցիալիզմի՝ նրա գլխավորած հեղափոխական-դեմոկրատական ուղղության նկատմամբ: Լենինը օբյեկտիվորեն և սկզբունքորեն է բնութագրում նրա առավելություններն ու թերությունները: Չնայած այդ շարժման ուտոպիական և այլ բացասական առանձնահատկություններին, Լենինը պատշաճն է հատուցում նրա հեղափոխական դեմոկրատական կարողություններին, նրա դերին չինական գյուղացիության լայն զանգվածների զարթոնքի, ազատության և հետևողական դեմոկրատական հիմնարկների նվաճման գործում: Դրանով իսկ Սուն Յաթ-սենի գլխավորած շարժումը, Լենինի կարծիքով, հանդես էր գալիս որպես Ասիայի, ողջ մարդկության առաջընթացի մեծ գործոն (տե՛ս **ԵԼԺ**, հ. 23, էջ 170): Այդ իսկ պատճառով էլ Վ. Ի. Լենինը խնդիր է առաջադրում խնամքով առանձնացնել, պահպանել ու զարգացնել «նրա քաղաքական ու ագրարային ծրագրի հեղափոխական-դեմոկրատական՝ կորիզը» (**ԵԼԺ**, հ. 21, էջ 499):

Նման ճկուն և օբյեկտիվ մոտեցումը հատուկ է նաև Լենինի պետական-քաղաքական գործունեությանը (հիշենք նրա վերաբերմունքը ձախ էսէռների նկատմամբ): Երբեք Լենինը հախուռն ժխտողականություն, արհամարհանք չի ցուցաբերել ցանկացած շարժման դեմոկրատական, իսկ առավել ևս սոցիալիստական ներուժականությունների հանդեպ: Եթե նրանք գեթ ինչ-որ չափով նպաստում էին բան-



վոր դասակարգի իդեալների հաստատմանը, աշխատավորների շահերի ապահովմանը, ապա Լենինը պաշտպանում էր՝ չնայած դրանց պատմականորեն սահմանափակությանն ու սխալներին:

Ցանկացած պատմական երևույթների, քաղաքական գործիչների նկատմամբ մոտեցման Վ. Ի. Լենինին հատուկ պատմականությունը ակնբախորեն դրսևորվում է այն վերաբերմունքում, որ նա դրսևորեց խորհրդային կառավարությունում ձախ էսէռների ներկայացուցիչ Պ. Պռոշյանի նկատմամբ, երբ վերջինս 1918 թվականի հուլիսին տեղի ունեցած ձախ էսէռական խռովությունից հետո հեղափոխական շարժումից դուրս էր մնացել: Լենինը հարցը դիալեկտիկորեն էր դնում, երբ գնահատում էր Պռոշյանի դերը մեր հեղափոխությունում: Նա ավելի շատ բան էր արել խորհրդային իշխանության ամրապնդման համար մինչև 1918 թվականի հուլիսը, քան 1918 թ. հուլիսից՝ նրա խարխլման համար (տե՛ս ԵԼԺ, հ. 37, էջ 478—480): Պատմական, օբյեկտիվ մոտեցումը յուրաքանչյուր երևույթի, այս կամ այն քաղաքական գործչի կամ սոցիալիստական ուղղության գնահատման նկատմամբ մշտապես հատուկ է Վ. Ի. Լենինին: Այդ մասին է վկայում նաև նրա կոնկրետ պատմական մոտեցումը Կաուցկու, գերմանական սոցիալ-դեմոկրատիայի նկատմամբ: Տարբեր ժամանակներում, ըստ Կաուցկու հայացքների և քաղաքական դիրքորոշման, Լենինը նրան տարբեր գնահատականներ է տալիս: «Լավ էր գրում Կաուցկին, երբ նա մարքսիստ էր»: Սա մի գնահատական է: «Ռենեգատ Կաուցկին և պրոլետարական հեղափոխությունը»՝ այլ գնահատական:

Այսպիսով, այստեղ դիտարկված, թերևս, գուցեև կցկտուր կերպով, դրույթները ակնբախորեն բացահայտում են սոցիալիզմի այլ ձևերի նկատմամբ մարքս-լենինյան մոտեցմանը հատուկ սկզբունքները: Դրանցից են խնամքոտ վերաբերմունքը առաջավոր սոցիալիստական մտքի կողմից մշակված ամեն մի մտածողական նյութի նկատմամբ, մանրակրկիտ հաշվի առնելն այն բանի, որ նրանք արտացոլում են բնակչության մեծ խմբերի, աշխատավորական զանգվածների, այդ թվում և բանվոր դասակարգի շահերը: Այդ իսկ պատճառով նրանց հետ դաշն կապելու համար կարևոր է ըմբռնել և բացահայտել տրամաբանությունը, էությունը նրանց պահանջների, որոնք վերջին հաշվով պայմանավորված են որոշակի շահերով: Քաղաքական հետևությունն անփոփոխ է. քանի որ առկա է դեմոկրատական, սոցիալիստական շարժման այս կամ այն ուղղությունների շահերի համընկման լայն մարզը, քանի որ պետք է համատեղ լուծել ընդհանուր խնդիրները, ապա անհրաժեշտ է համատեղ գործողությունների, դաշինքի հաստատումը:

Դրա հետ մեկտեղ, բոլոր դեպքերում, Լենինի մոտ նկատվում է հիմնավորումն այն սկզբունքային առավելությունների, որոնք հատուկ են սոցիալիզմի կոմունիստական ուղղությանը: Այդ ավանդույթը, որը ծանրակշիռ կերպով հիմնավորված է դեռևս «Կոմունիստական կուսակցության մանիֆեստում», շարունակեց Լենինը, որը միշտ փաստարկված կերպով համոզում և բացատրում էր գաղափարախոսական և քաղաքական երևույթների նկատմամբ կոմունիստների մոտեցումների էությունը:

Ելնելով բուն այդ մեթոդաբանական դրույթներից, մենք կկարողանանք ճիշտ կողմնորոշվել այսօրվա իրադրությունում, կկարողանանք իրականացնել թե՛ գիտության, թե՛ պրոպագանդայի, թե՛ քաղաքականության ոլորտում լենինյան մոտեցումը սոցիալիզմի բոլոր արդի ուղղությունների նկատմամբ: Այժմ զգալիորեն աճել է սոցիալիզմի ազդեցությունն աշխարհում: Այդ են վկայում ոչ միայն սոցիալիստական երկրների զարգացումը մոլորակի երեք մայրցամաքներում, այլև զարգացող և զարգացած կապիտալիստական երկրներում բազմաթիվ մասսայական շարժումների կողմից սոցիալիզմի զանազան, այդ թվում և ոչ մարքսիստական, կոնցեպցիաների առաջադրումը որպես նպատակ, գաղափարախոսական դոկտրինա:

Դիտարկվող հարցը գիտականորեն լուսաբանելու համար, հավանաբար, պետք է դիմել այն իրական գաղափարախոսական և քաղաքական ֆոնին, որի վրա ծավալվում է սոցիալիզմի տարբեր ուղղությունների գործունեությունն արդի պայմաններում: Նոր երևույթների, այդ թվում նաև դիտարկվող մարզում, բովանդակալից իմաստավորումը տրված է մի շարք կուսակցական փաստաթղթերում հատկապես Հոկտեմբերյան հեղափոխության 70-ամյակի առթիվ հոբելյանական հանդիսությունների ժամանակ Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ:

Ուսանելի, հարուստ և բազմազան նյութ տվեց կուսակցությունների ու շարժումների միջազգային հանդիպումը, որը տեղի ունեցավ Մոսկվայում հոբելյանի օրերին և բացահայտեց սոցիալիստական ու դեմոկրատական մտքի շատ երբերանգներ,

որոնք հանդիպման ժամանակ արտահայտվեցին սոցիալիստների ու սոցիալ-դեմոկրատների, ազգային-ազատագրական ու կրոնական կազմակերպությունների ներկայացուցիչների կողմից: Կուսակցությունների և շարժումների հանդիպման ժամանակ ներկայացվեց ժամանակակից աշխարհի ամբողջ՝ թե՛ քաղաքական, թե՛ գաղափարախոսական խճանկարը, այդ թվում բացահայտվեցին ձախ շարժումների զանազան ուղղությունների բնորոշ առանձնահատկությունները:

Այսօր առկա են բազմաթիվ նոր դրույթներ և փաստարկներ, որոնք հաշվի առնելով անհրաժեշտ է կարգավորել կոմունիստների փոխհարաբերությունները սոցիալիզմի զանազան, այդ թվում և ոչ մարքսիստական, ուղղությունների հետ: Բայց ամենագլխավորը, թերևս, զանգվածային ոչնչացման միջոցների տարածվածության պայմաններում համատեղ գործողությունների անհրաժեշտությունն է հանուն մարդկության, մարդկային ցեղի փրկության, մարդու կենսոլորտի պահպանման, նրան արդի գիտատեխնիկական առաջընթացի բացասական հետևանքներից ձերբազատման, նոր զանգվածային հիվանդություններից ազատման և այլն: Անփոփոխ են մնում նաև ընդհանուր ավանդական խնդիրները՝ պայքարը սոցիալական և ազգային ճնշման ամեն մի ձևի, մոնոպոլիաների անսահման իշխանության դեմ, դեմոկրատական և հումանիտար պրոբլեմների լուծման ապահովումը:

Սոցիալիզմի գոյություն ունեցող տարբեր շարժումների ու ձևերի, նրանց տեսական կոնցեպցիաների և պրակտիկայի համեմատական վերլուծություն կատարելիս մեծ նշանակություն ունի ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո խորհրդային հասարակության արմատական վերակառուցումը: Եթե ռեալ սոցիալիզմն առավելագույն դեմոկրատիայի պայմաններում արագացված տեմպերով զարգանա, առավել չափերով բացահայտելով իր մարդասիրական ներունակությունը, եթե եռանդուն կերպով, հաղթահարվեն արգելակման բոլոր գործոնները, ապա դա, իհարկե, ուժեղացնում է մեր դիրքերը սոցիալիզմի գոյություն ունեցող ձևերի, դրանց տեսության ու պրակտիկայի համեմատական վերլուծություն կատարելիս:

Խոսելով սոցիալիզմի տարբեր ձևերի միջև եղած փոխհարաբերությունների մասին, պետք է ուշադրություն դարձնել հետևյալին: Վերը վկայակոչվեց Լենինի միտքն այն մասին, թե մարքսիզմը քաղաքակրթության մայրուղուց դուրս չի ստեղծվել, որ այն ներառել է առաջավոր հասարակական մտքի բոլոր ձեռքբերումները: Մեզ թվում է, որ այդ դրույթը որոշակի իմաստով վերաբերում է ոչ միայն անցյալ փորձին, այլև ներկային, երբ սոցիալիստական շարժման մի շարք ուղղություններին հաջողվել է ձեռք բերել զգալի հաջողություններ՝ դեմոկրատիայի, արհմիութենական շարժման, մասսաների նյութական բարեկեցության բարձրացման և այլ բնագավառներում: Բնութագրելով սոցիալիստական շարժման տարբեր ջոկատների գործունեությունը, ԽՄԿԿ-ն մեր օրերում ձևակերպել է մի սկզբունքային գաղափար: Նախ, նրանք գործում են զուգահեռաբար, բայց նրանց նպատակը մեկն է: Երկրորդ, ոչ ոք, այդ թվում և կոմունիստները, արդի իրողությունները վերլուծելիս ճշմարտության նկատմամբ մենաշնորհ չունեն: Եթե խորամուխ լինենք այս դրույթներում, ապա կտեսնենք, որ նրանցից բխում են խոշոր գաղափարախոսական ու գիտական հետևություններ: Այստեղ անհրաժեշտ է և՛ փոխհարստացնելով միմյանց գիտենալ, ուսումնասիրել մեկմեկու, և՛ իրականացնել այլ, առավել օբյեկտիվ մոտեցում սոցիալիստական շարժման պատմության նկատմամբ: Մասնավորապես պատմաբանների առջև խնդիր է ծառացած հաղթահարել երկրորդ ինտերնացիոնալի ժամանակաշրջանի սոցիալ-դեմոկրատիայի տարբեր ջոկատների հանդեպ, ինչպես նաև այլ ձախ, դեմոկրատական շարժումների նկատմամբ անցյալում թույլ տրվող գռեհիկ և ոչ ճիշտ բնութագրումները, ինչպիսի գաղափարախոսական պաճուճանքով էլ որ նրանք ներկայացված լինեն: Կարևոր է լիովին արմատավորել օբյեկտիվ, գիտական վերլուծություն, որը բխի շարժման իրական սոցիալական բազայից, նրա մասնակիցների շահերի ու պահանջների բուն էությունից, դրանք ապահովելու գործում իրականում ձեռք բերված հաջողություններից:

Ճիշտ նման մոտեցում հատկապես անհրաժեշտ է այժմ գոյություն ունեցող սոցիալիստական շարժումների նկատմամբ: Նոր պայմաններում, երբ առավել հստակորեն է պատկերանում ձախ ուժերի, այդ թվում սոցիալիստական շարժման տարբեր ուղղություններում միավորվածների, համագործակցության ու փոխհարստացման անհրաժեշտությունը, կարևոր է, որ ոչ միայն մենք հաղթահարենք գռեհիկ, հայհոյանք հիշեցնող գնահատականները կամ սեփական անխախտ անսխալականության միամիտ հավատը և այլն: Այլ սոցիալիստական, սոցիալ-դեմոկրատական



շարժումների ներկայացուցիչները ևս պետք է հրաժարվեն նախապաշարումներից, կոմունիստական կուսակցությունների, իրական սոցիալիզմի մասին չհիմնավորված պատկերացումներից: Անշուշտ, խոսքն այն դեպքերի մասին չէ, երբ նրանք իրավացիորեն մատնանշում են սոցիալիզմի կառուցման անծանոթ ու բարդ գործում եղած իրոք վրիպումներն ու սխալները:

Գիտնական կոմունիստների, սոցիալիստների, սոցիալ-դեմոկրատների, այլ ձախ հոսանքների ներկայացուցիչների ստեղծագործական շփումները, միմյանց ավելի լավ ճանաչելը, համագործակցության զանազան ձևերը, այդ թվում և համատեղ ուսումնասիրությունները հասունացած խնդիր են: Դրան կնպաստի նաև ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին կից Ֆրիդրիխ Էբերտի անվան ֆոնդի (որը գործում է ԳՖՀ սոցիալ-դեմոկրատական կուսակցության շրջանակներում) ներկայացուցչության ստեղծումը:

Համագործակցությունը բոլոր գոյություն ունեցող տարակարծությունների առկայության պայմաններում օգտակար է, քանզի տարբեր գիտնականներ, բանվորական շարժման տարբեր ջոկատներ զանազանվում են տարբեր հարցադրումներով, տեսնում են այլ նրբերանգներ ու փոխադարձ կապեր, վերջապես, արտահայտվում են որոշակի սոցիալական խմբերի, այդ թվում և բանվորական խավերի, շահերը, ինչը և նպաստում է արդի խճանկարային աշխարհի գումարելիների համապատասխան տեսունակությանը, նոր, առավել արդիական աշխարհի ստեղծման գործում հետագա առաջընթացին:

**Ամբողջական սոցիալիզմի գաղափարը:** Լենինը երբեք սոցիալիզմը չի դիտարկել նեղ ազգային շրջանակներում, այն համարելով ամբողջ համաշխարհային քաղաքակրթության արգասիքը: Խորհրդային իշխանությունը սոցիալիստական հասարակության միակ հնարավոր ձևը չէ, այլ մշտապես կատարելագործվելու կարիք ունեցող ուղիներից մեկը: Ամբողջական (իր առավելությունների ու ձեռքբերումների լիակատարության իմաստով) սոցիալիզմ կառաջանա «բոլոր երկրների պրոլետարների հեղափոխական համագործակցությամբ», «միայն մի շարք փորձերի միջոցով, որոնցից յուրաքանչյուրն առանձին վերցրած միակողմանի կլինի, որոշ անհամապատասխանություն կունենա» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 376): Ընդ որում սոցիալիզմի ընդհանրացված դիմանկարի մեջ Լենինը ներառում էր նաև այն հեռանկարային գծերը, որոնք այն ժամանակ ձևավորվել էին միայն բուրժուական երկրներում, բայց ըստ էության իրենցից ներկայացնում էին ապագա հասարակական կառուցվածքի դոգծիլները: Սոցիալիզմի մասին լենինյան պատկերացումը միանգամայն ազատ էր դոգմատիզմից, զուրկ ազգային և սոցիալական ներփակվածությունից, բաց է բոլոր առաջադեմ տարրերի համար՝ անկախ նրանց ծագումից:

Բարձր գնահատելով կոլեկտիվ փորձն ընդհանուր հեղափոխական խնդիրների լուծման գործում, Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ խստորեն հանդես էր գալիս հեղափոխական վերափոխումների մեխանիկական, կույր պատճենավորման դեմ: Նրա դիրքորոշումն այդ հարցում միանգամայն որոշակի էր. քանի որ կոնկրետ պայմանները յուրաքանչյուր երկրում առանձնահատուկ են, այնքանով էլ չեն կարող լինել ինչ-որ համընդհանուր սխեմաներ ու կաղապարներ, որոնք միատեսակ պիտանի լինեն բոլոր երկրների ու բոլոր ժամանակների համար: Այս առնչությամբ բնորոշ է Վ. Ի. Լենինի այն ռադիոհեռագիրը, որ նա 1919 թ. մարտին հղել է Բելա Կունին: «Միանգամայն անկասկած է,— ասված է նրանում,— որ ամենայն մանրամանությամբ մեր ռուսական տակտիկայի մերկ ընդօրինակումը սխալ բան կլիներ հունգարական հեղափոխության յուրահատուկ պայմաններում: Ես պետք է նախազգուշացնեմ այդ սխալից...» (**ԵԼԺ**, հ. 38, էջ 272):

Սոցիալիզմի կառուցումը նոր գործ է, շատ բաներում չուսումնասիրված: Բայց և արդեն եղած պրակտիկան ցույց է տալիս, որ երբեմն որևէ երկրի կողմից կոնկրետ խնդիրներ լուծելիս կուտակվում է այնպիսի փորձ, որն սկզբում կարող է թվալ եզակի, առանձնահատուկ, իսկ այնուհետև կարող է կրկնվել նաև մյուս երկրներում որպես արդեն հատուկ կամ նույնիսկ՝ ընդհանուր: Դա անհրաժեշտ է դարձնում մանրակրկիտորեն ուսումնասիրել յուրաքանչյուր երկրի փորձը՝ նրանում եղած ողջ արժեքավորը բացահայտելու նպատակով այն համեմատելով մյուս երկրների փորձի հետ, որն ինտերնացիոնալիստական քաղաքականությանը համադրելով միայն կամրապնդի սոցիալիզմի ընդհանուր դիրքերը, եղբայրական երկրների միասնությունն ու համախմբվածությունը:

Ցանկանում ենք ուշադրություն դարձնել նաև այն բանի վրա, որ սոցիալիստական վերափոխումներ իրականացնելիս առկա կոնկրետ պատմական պայմանների յուրօրինակությունը հաշվի առնելու լենինյան պահանջը վերաբերում էր ոչ միայն առանձին երկրներին, այլև նրանց մեջ մտնող ռեգիոններին: Կովկասի խորհրդային հանրապետություններին հղած ողջույնում (1921 թ.) Լենինը նշում էր, որ սոցիալիզմին անցնելու անհրաժեշտ պայման հանդիսացող խորհրդային իշխանությունը հաջողությամբ պահելու և ամրապնդելու խնդրի հաջող լուծման համար ամենից ավելի կարևոր է, որպեսզի Կովկասի կոմունիստները հասկանան այդ ռեգիոնի հանրապետությունների դրության առանձնահատկությունը: Լենինը նշում էր, որ, ի տարբերություն ՌՍՖՍՀ-ի, Կովկասի հանրապետությունների համար ստեղծված ներքին ու միջազգային իրադրության կապակցությամբ հնարավոր է նաև ավելի դանդաղ, աստիճանաբար, առավել զգույշ անցում սոցիալիզմին: «Չընդօրինակել նույնությամբ մեր տակտիկան,— գրում էր Լենինը,— այլ ինքնուրույն կշռադատել նրա յուրահատկության պատճառները, նրա պայմաններն ու արդյունքները, ձեզ մոտ կիրառել 1917—1921 թվականների փորձի ոչ թե տառը, այլ ոգին, իմաստը, դասերը» (**ԵԼԺ, հ. 43, էջ 239**):

Լենինյան այս մոտեցման հետևողական պահպանումը՝ հաշվի առնելով նոր պայմանները, ընդհանուր սոցիալիստական տան ամրապնդման շահերը, նորացման ու վերակառուցման քաղաքականության արդյունավետության երաշխիքն է:

* * *

Սոցիալիզմի արարումը ենթադրում է հենվել մարքս-լենինյան գաղափարների վրա: Սակայն (և սա, թերևս, Վ. Ի. Լենինի ընդհանրացված պատգամն է) այն գիտական սոցիալիզմի «հավերժական» բանաձևերի պասիվ մարմնավորումը չէ: Սոցիալիզմի կառուցումը փոփոխվող պատմական պայմաններում իրականացվող հարատև ստեղծագործական գործընթաց է: Այդ իսկ պատճառով սոցիալիստական զարգացման ոչ մի խոշոր ներքին կամ արտաքին պրոբլեմ չի կարող հաջողությամբ լուծվել առանց տվյալ երկրի կոմունիստական կուսակցության կողմից լենինյան մեթոդաբանության ոգով բոլոր նոր իրողությունների տեսական իմաստավորման: Համաշխարհային սոցիալիզմի պատմությանը հայտնի են ամեն կարգի փորձություններ, այդ թվում և՛ բարդ, և՛ ճգնաժամային իրավիճակներ: Բայց կոմունիստներն արժանավայել կերպով և իմաստնացած են դուրս եկել ու դուրս գալիս դրանցից, եթե իրենց գործունեությունում խելացիորեն են օգտագործում մարքսիզմ-լենինիզմի հուսալի սկզբունքները:



# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ՝ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՏԵԳՈՐԻԱ

**Տ. ԲԱՐԱՆԵՆԿՈՎԱ**

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ կարգապահության ստեղծումը Վ. Ի. Լենինը համարում էր տնտեսական շինարարության անկյունաքարը: Սոցիալիստական շինարարության հետագա հաջող ընթացքը և բախտը նա կապում էր աշխատանքում ամենախիստ կարգապահություն պահպանելու հետ: «Աշխատանքային կարգապահություն, աշխատանքի արտադրողականության բարձրացում, աշխատանքի կազմակերպում, մթերքների քանակության ավելացում, անողոք պայքար անկարգության և բյուրոկրատիզմի դեմ»: 1921 թ. Վ. Ի. Լենինը այսպես էր դնում հարցը (**ԵԼԺ, հ. 43, էջ 483**): Արդի պայմաններում մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման կուսակցության մշակած ծրագրային միջոցառումների շարքում առավել ևս կարևորվում է աշխատանքային կարգապահության ամրապնդումը, որն ուղղված է ինչպես արտադրատնտեսական ցուցանիշների բարելավմանը, այնպես էլ որոշակի սոցիալական նպատակների, այդ թվում աշխատանքի նկատմամբ հասարակությանն անհրաժեշտ վերաբերմունքի ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը:

Ռեզերվներն այստեղ հսկայական են: Ինչպես նշվեց XIX կուսկոնֆերանսում, անգամ տարրական կարգապահությունն ամրապնդելու, նախկինում գոյություն ունեցող անկազմակերպվածությունը հաղթահարելու շնորհիվ տնտեսական զարգացման տեմպերի զգալի հավելաճ է ապահովվում: Սակայն այս խնդիրը դեռևս պահպանում է իր հրատապությունը:

Զարգացման ժամանակակից շրջանում աշխատանքային կարգապահությունը բնութագրվում է գործի նկատմամբ գիտակից վերաբերմունքի, ստեղծագործական մոտեցման, այն բարեխիղճ կատարելու հետագա անով: Աշխատանքի սոցիալիստական կարգապահությունն ընդգրկում է աշխատանքային հարաբերությունների մեծ շրջանակ: Դրանք կապված են ամբողջ աշխատօրվա ընթացքում աշխատաժամանակը լրիվ օգտագործելու, նախաձեռնությունը զարգացնելու, գործարար ձեռներեցություն դրսևորելու, կոլեկտիվիզմի, արտադրության նորարարներին և առաջավորներին հավասարվելու ձգտման և աշխատաժամանակի կորուստները վերացնելու հետ: Այն ավելի լայն սոցիալ-տնտեսական պրոբլեմի՝ աշխատանքի և աշխատանքային ակտիվության նկատմամբ վերաբերմունքի մի մասն է, որով անմիջականորեն պայմանավորված են աշխատանքի արդյունքները և բանվորների զբաղվածության մակարդակը:

Սոցիալիստական կարգապահությունը, որը հիմնված է արտադրության միջոցների նկատմամբ հասարակական սեփականության վրա, ամրանում և կատարելագործվում է սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր փուլում: Կարգապահության վրա անմիջական և միջնորդված ազդեցություն ունի գիտատեխնիկական առաջընթացը: Վերջինիս զարգացմանը զուգընթաց կարգապահության նշանակությունն անընդհատ անում է:

Գիտատեխնիկական առաջընթացը (ԳՏԱ) աշխատանքային կարգապահության վրա ներազդում է, առաջին հերթին, նրանով, որ արտադրողական ուժերի կատա-

---

*ԲԱՐԱՆԵՆԿՈՎԱ ՏԱԻՍԻԱ ԱԼԵՔՍԵԵՎՆԱ— ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի ավագ գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու*

րելագործման հետ մեկտեղ բարձրանում է աշխատանքի հանրայնացման մակարդակը: Արտադրության կարողությունների համակենտրոնացման աճը, արտադրության ավելի ռացիոնալ տեղաբաշխումը, արդյունաբերության և տրանսպորտի ճյուղային կառուցվածքի կատարելագործումը հանգեցնում են աշխատանքի տերիտորիալ տեղաբաշխման փոփոխություններին: Այս պայմաններում տնտեսապես անհրաժեշտ է դառնում միջճյուղային կապերի վրա հիմնված նոր տիպի ձեռնարկությունների ստեղծումը: Այդ կապերի ինտենսիվության աճը, մասնագիտացման հետ մեկտեղ, կանխորոշում է տնտեսավարման բոլոր մակարդակներում աշխատանքային կարգապահության պահպանման, աշխատանքի վերջնական արդյունքների համար պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը:

Արդյունաբերության տարբեր ճյուղերում ինքնուրույն արտադրությունների առանձնացումը հանգեցնում է աշխատանքի մասնակի բաժանման խորացմանը: Սակայն ԳՏԱ-ն հատկապես մեծ փոփոխություններ է առաջացնում աշխատանքի եզակի բաժանման ժամանակ, երբ այն ընդունում է կոմպլեքս տեխնոլոգիական ձևեր և ֆունկցիաները իրականացվում են մեկ մասնագիտության սահմաններում՝ ավտոմատ գծերի համալիրի սպասարկմամբ: Այստեղ կարգապահությանը ներկայացվող կարևոր պահանջ է ավտոմատ համակարգի առանձին տարրերի փոխազդեցության մանրամասն մշակումը և կարգաբերումը: Մյուս կողմից, այսօր արտադրությունում աճում են նաև ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքային կարգապահությանը ներկայացված պահանջները: Դա վերաբերում է հատկապես նախագծման, ավտոմատների կարգաբերման, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների համար ծրագրերի մշակման աշխատանքներին: Այսպիսով, ԳՏԱ-ն խորացնում է աշխատանքի հասարակական բաժանումը և, դրանով իսկ, բարձրացնում աշխատանքային կարգապահությանը ներկայացվող պահանջները:

Մեր կարծիքով, ԳՏԱ-ի ինչպես անմիջական, այնպես էլ միջնորդավորված ազդեցությունն աշխատանքային կարգապահության վրա արտահայտվում է նաև նրանով, որ բարելավվում են աշխատանքի բովանդակությունը, պայմանները, կրճատվում քիչ արդյունավետ աշխատատեղերը: Այն նպաստում է նաև աշխատուժի պակասի վերացմանը, աշխատողների ազատման պրոցեսի ակտիվացմանը՝ դրանով իսկ ընդլայնելով աշխատողների թվի հետ աշխատատեղերի համապատասխանության և արտադրության գործոնների որակական հավասարակշռվածության հնարավորությունները:

Արդի պայմաններում աշխատանքային կարգապահության հիմնական չափանիշը վերջնական բարձր արդյունքների հասնելն է (այդ թվում՝ աշխատանքի ինտենսիվության հասարակայնորեն անհրաժեշտ մակարդակը*, աշխատաժամանակի օգտագործումը, աշխատանքի որակը): Արտադրության ստորին կառուցվածքային օղակում՝ ձեռնարկության մակարդակում, որտեղ իրականացվում է անձնական և իրային գործոնների փոխազդեցությունը, աշխատանքի կարգապահությունը բնութագրում են աշխատաժամանակի լրիվ և արդյունավետ օգտագործման ցուցանիշները:

Քննարկվող պրոբլեմի կապակցումը ինչպես աշխատաժամանակի ֆոնդի օգտագործման մակարդակի, այնպես էլ վերջնական արդյունքների հետ հնարավորություն է ընձեռում առավել խորությամբ վերլուծելու կարգապահության խախտման հետևանքները, այն ամրապնդելու՝ խնդիրների կատարումը չհանգեցնելով միայն գործալքումների դեմ պայքարի:

Ներկայումս ինչպես Միության, այնպես էլ Հայաստանի շատ ձեռնարկությունների գործունեության վերջնական արդյունքները զգալիորեն ցածր են նրանց հնարավորություններից: Մեծ չափերի են հասնում աշխատանքային կարգապահության տարբեր խախտումների հետևանքով տնտեսական կորուստները, որոնք կապված են արտադրության նորմաների թերակատարման, խոտանի, հումքի, նյութերի, վառելիքի նորմաների անտեսման, անվտանգության տեխնիկայի կանոնների խախտման, մեքենաների ու սարքավորումների նկատմամբ անխնամ վերաբերմունքի, պարապուրդների, գործալքումների, աշխատանքից ուշացումների և այլ պատճառների

* Հայկական ԽՍՀ շատ արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի ինտենսիվության հասարակայնորեն անհրաժեշտ մակարդակը ցածր է ոչ միայն Միության, այլև հանրապետական նույնատիպ ձեռնարկությունների միջինից: Դա հատկապես վերաբերում է ՀԽՍՀ շրջաններում տեղաբաշխված արդյունաբերական մասնաճյուղերին: Ընդսմին, վերջիններում բարձր է աշխատաժամանակի էքստենսիվ օգտագործման մակարդակը: ՀԽՍՀ խոշոր քաղաքներում մեծ տեղ են կազմում ամբողջօրյա և ներհերթափոխային պարապուրդները:



հետ: Այս խախտումները ազդում են արտադրանքի թողարկման ռիթմիկության և որակի, արտադրական պլանների կատարման, պայմանագրային մատակարարումների և այս ամենի արդյունքում կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանների կատարման վրա: Վերջին տարիներին լուրջ ուշադրություն է նվիրվում աշխատանքային կարգապահության հետագա բարձրացմանը: Այդ մասին են վկայում տվյալ հարցի վերաբերյալ կուսակցության և կառավարության մի շարք որոշումները:

Ներկայումս ձեռնարկություններում աշխատանքային կարգապահությունը բնութագրվում է հետևյալ վիճակագրական ցուցանիշներով. 100 բանվորի հաշվով աշխատանքը լքած բանվորների և գործալքումների թվով, ինչպես նաև կադրերի հոսունության գործակցով:

Աշխատանքային կարգապահությունը բնութագրելու համար կարելի է կիրառել նաև այնպիսի ցուցանիշ, ինչպիսին բանվորների մեղքով թույլ տրված աշխատաժամանակի ներհերթափոխային կորուստներն են: Սակայն ձեռնարկություններում այդ կորուստների հաշվառումը և հաշվետվություններում նրանց արտացոլումը դեռ շատ թերություններ ունեն: Միայն նշված ցուցանիշների վերլուծությունը բավարար չէ աշխատանքային կարգապահության վիճակի մասին դատելու և, առավել ևս, այս գործոնի հաշվին աշխատանքի արդյունավետության բարձրացման նպատակով առաջարկություններ մշակելու համար: Այս պրոբլեմը պահանջում է համակողմանիորեն վերլուծել աշխատանքային կարգապահությունը:

Հանրապետության և երկրի արդյունաբերության մեջ աշխատանքային կարգապահության վիճակի փոփոխության հիմնական ուղղությունները բացահայտելու համար վերլուծենք, օրինակ, գործալիքների և գործալքումների թվի, կադրերի հոսունության գործակցի փոփոխության դինամիկան: Այդ գործակիցը սերտ փոխկապակցության մեջ է աշխատանքային կարգապահության հետ: Անձնակազմի հոսունության մակարդակի ցուցանիշը միաժամանակ հանդես է գալիս թե՛ որպես աշխատանքային կարգապահության վիճակի հետևանք, թե՛ որպես պատճառ: Կարգապահության խախտման հետևանքով աշխատանքից հեռացումը, բնականաբար, հանգեցնում է կադրերի հոսունության աճի: Վերջինիս պատճառների վերլուծությունը, որն այժմ կատարվում է տարին երկու անգամ, հաստատում է, որ հոսունության չափերը մեծ մասամբ որոշվում են աշխատանքով ապահովվածության մակարդակով: Այդ պատճառով կադրերի հոսունության կրճատումը որպես աշխատանքով (նրա բովանդակությամբ, պայմաններով, վճարմամբ) ապահովվածության հետևանք, որոշում է նաև աշխատանքային կարգապահության մակարդակի բարձրացումը:

Վերջին տարիներին ինչպես երկրի, այնպես էլ ՀԽՍՀ արդյունաբերությունում տեղի է ունեցել գործալիքների և գործալքումների թվի որոշակի նվազում: Դա բացատրվում է նրանով, որ տեղերում աշխատանքային կարգապահության հարցերին առավել մեծ ուշադրություն է նվիրվում և դրան զուգընթաց բարձրացել են նաև պահանջները հաշվետվություններում կարգապահության խախտումների ճիշտ արտացոլման նկատմամբ: Սակայն, այնուհանդերձ, գործալիքների և գործալքումների թիվը զգալի է: Առկա են աշխատանքային կարգապահության վիճակի հետագա բարելավման զգալի ռեզերվներ, մանավանդ, եթե նկատի ունենանք Հայաստանում 1988 թ. փետրվար-մարտից սկսած Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի առնչությամբ տեղի ունեցած գործալքումները: Եթե բացառենք այդ արտակարգ երևույթով բացատրվող մինչև օրս տեղի ունեցող գործալքումները, ապա, ընդհանուր առմամբ, ինչպես ցույց են տալիս ընտրովի ուսումնասիրությունների տվյալները, աշխատանքային կարգապահությունն առաջին հերթին երիտասարդական պրոբլեմ է: 29 տարեկանից հետո կարգապահական խախտումների ինտենսիվությունը նվազում է: Հատկապես զգալիորեն կրճատվում են աշխատանքից ուշացումները, շուտ գնալը, խոտանի թողարկումը և այլն: Կարգապահության խախտումները տեղ են գտնում սոցիալական բոլոր խմբերում, սակայն ավելի հաճախ հանդիպում են ձեռքի աշխատանքով զբաղվող, որակավորում չունեցող կամ ցածր որակավորմամբ բանվորների շրջանում:

Անհրաժեշտ է նշել, որ աշխատանքի բովանդակության ազդեցությունն ուղղագիծ չէ, այն որոշվում է տվյալ աշխատանքով զբաղված բանվորների կրթության և կուլտուրայի մակարդակով: Գաղտնիք չէ, որ նրանց մեջ քիչ չեն սպիրտային խմիչքների սիրահարները:

Աշխատանքով բավարարվածության, աշխատատեղի պայմանների բարելավման հետ զուգընթաց կարգապահության վիճակը զգալիորեն փոխվում է: Դա հաս-

տատվում է նաև Հայկական ՍՍՀ արդյունաբերության օրինակով։ Այսպես, աշխատանքային նորմալ պայմաններում կարգապահության խախտումները 1,5 անգամ ավելի քիչ են, քան ծանր և վնասակար պայմաններում աշխատող բանվորների մեջ։ Անկարգապահության նվազման միտումը առավել նկատելի է ձեռնարկությունում 3—5 տարվանից բարձր աշխատանքային ստաժ ունեցողների մեջ։

Յուրաքանչյուր առանձին աշխատողի կարգապահությունը որոշվում է ոչ միայն աշխատանքի նկատմամբ նրա վերաբերմունքով, այլև նրա հետ անմիջականորեն առնչվող աշխատողների կարգապահությամբ։ Տարբեր կատեգորիայի և պրոֆեսիաների աշխատողների կարգապահության փոխազդեցության նյութական հիմքը աշխատանքի բաժանումն ու կոոպերացումն է։ Դիտարկենք այդ փոխադարձ կապերը ձեռնարկության սահմաններում՝ վերանալով արտաքին և միջճյուղային կապերից։

Աշխատանքի բաժանման պայմաններում յուրաքանչյուր աշխատատեղում և արտադրական շղթայի յուրաքանչյուր օղակում անհնար է ապահովել կարգապահության անհրաժեշտ մակարդակ՝ առանց ողջ շղթայում համապատասխան կարգապահության հաստատման։ Ի նկատի ունենք ոչ միայն հորիզոնական կապերը, այսինքն նույն որակակարգի բանվորների աշխատատեղերի միջև, այլև ուղղահայաց։

Ձեռնարկությունների և նրա ստորաբաժանումների մակարդակով կոլեկտիվ կարգապահությունը կոնկրետացվում և իրականացվում է տարբեր ձևերով։ Ձևերի բազմազանությունը հիմնված է աշխատանքային կարգապահության վրա։ Հենց դրա պահպանումը (խախտումը) ապահովում է պլանային, տեխնոլոգիական, արտադրական, ֆինանսական, կադրային կարգապահության ձևերի կատարմամբ (չկատարմամբ)։ Կարգապահության այս ձևերը ևս գտնվում են փոխկապակցության մեջ, որն իրականացվում է տարբեր մակարդակի գծային ու ֆունկցիոնալ ղեկավարների և նրանց կողմից ղեկավարվող կոլեկտիվների աշխատանքային գործունեության միջոցով։

Կարգապահության բոլոր տեսակի խախտումները պայմանավորված են ինչպես սուբյեկտիվ (կախված աշխատողից, նրա գիտակցականությունից, պատասխանատվությունից, մասնագիտական պատրաստվածությունից և այլն), այնպես էլ օբյեկտիվ (նյութատեխնիկական, կազմակերպչական, տնտեսական) գործոններով։ Օբյեկտիվ գործոնների իրականացումը մեծ մասամբ որոշվում է ձեռնարկության ֆունկցիոնալ բաժինների և ծառայությունների աշխատանքով, որոնք ապահովում են աշխատատեղերի կոմպլեքսայնությունը, տեխնոլոգիական ռեժիմների կայունությունը, սարքավորումների անխափան աշխատանքը, տեխնիկական մակարդակն ու որակը, ինչպես նաև աշխատանքի կառավարման ճիշտ կազմակերպումը, կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի կատարումը և այլն։

Քիչ չեն դեպքերը, երբ արտադրության պլանավորումը, մատակարարումը, տեխնիկական և տեխնոլոգիական սպասարկումն իրականացնելիս թույլ են տրվում աշխատանքային կարգապահության խախտումներ միավոր արտադրանքի աշխատատարության բարձրացման ձևով։ Կանխամտածված սխալների տեղիք է տրվում տեխնոլոգիական, արտադրության սպասարկման, աշխատանքների աշխատատարության հաշվարկները կատարելիս։ Աշխատանքային կարգապահության այնպիսի խախտումներ, ինչպիսիք են նորմաների և սարքավորումների սպասարկման ոլորտների կրճատումն ու աշխատուժի պահանջարկի արհեստական աճը, արտադրության ծավալի նվազեցումը և նրա անհավասարաչափ բաշխումն ըստ եռամսյակների ու ամիսների, ստեղծում են լրացուցիչ աշխատուժի և նրանց աշխատաժամանակի ֆոնդի ոչ արդյունավետ օգտագործման անհրաժեշտություն, չեն ապահովում աշխատանքի օպտիմալ ինտենսիվությունը։

Աշխատատեղից բրիգադի, արտադրամասի, ամբողջ ձեռնարկության գործունեությանն անցնելուն զուգընթաց ավելանում է այն աշխատողների թիվը, որոնց աշխատանքի արդյունավետության վրա անդրադառնում է համապատասխան ղեկավարների կարգապահությունը։ Այսպիսով, տվյալ աշխատողի կարգապահության ազդեցության աստիճանը պայմանավորված է աշխատանքի բաժանման համակարգում նրա զբաղեցրած տեղով և արտադրանքի թողարկման փուլով։ Հետևաբար, մյուս հավասար պայմաններում, որքան ձեռնարկության ղեկավարման սանդղակում տվյալ աշխատողը վեր է կանգնած, որքանով նրա գործունեությունից մեծապես կախված են ձեռնարկության վերջնական արդյունքները, այնքան մեծ են նրա կողմից աշխատանքային կարգապահության խախտման հետևանքները։

Անհրաժեշտ է նշել, որ բանվորների աշխատանքային կարգապահության շատ



խախտումներ հետևանք են ձեռնարկության և նրա կառուցվածքային ստորաբաժանումների ղեկավարների կողմից կառավարման իրենց պարտականությունների անորակ և ոչ լրիվ կատարման։ Խնդրի լուծման ուղին ձեռնարկության յուրաքանչյուր աշխատողի պարտականությունների ճշգրիտ սահմանազատումն է, պաշտոնական և աշխատանքային պարտականությունները ողջ կոլեկտիվի գործունեության վերջնական արդյունքների հետ սերտորեն շաղկապելը։ Նպատակահարմար է ձեռնարկություններում ստեղծել աշխատանքային կարգապահության բարձրացման հարցերով զբաղվող խորհուրդ՝ կազմակերպելու և կոորդինացնելու համար այդ ուղղությամբ կոլեկտիվի բոլոր ստորաբաժանումների գործողությունները։

Կարգապահության ամրապնդման գործում, ինչպես նշվեց ԽՄԿԿ XXVII համագումարում, մեծ նշանակություն ունի աշխատանքային պայմանների ողջ համալիրի կատարելագործումը, տնտեսական (աշխատանքի անբավարար վճարում և խթանում), մեքենայացման ցածր մակարդակ, թերություններ աշխատանքի կազմակերպման և նորմավորման, կադրերի պատրաստման ու մասնագիտացման, նյութատեխնիկական մատակարարման գործում, աշխատանքի ոչ ռիթմիկություն, սոցիալ-հոգեբանական (արտադրական կոլեկտիվում անառողջ մթնոլորտ, անբավարար սոցիալ-կենցաղային պայմաններ), իրավական (աշխատանքային կարգապահության խախտումների հաշվառման համակարգի թերություններ, անկարգապահների նկատմամբ հասարակական և նյութական ներգործման միջոցների ոչ ճիշտ ու անբավարար կիրառում) բացասական երևույթների հաղթահարումը։

Այսպես, աշխատանքային կարգապահությունը խախտողների նկատմամբ իրականացվող միջոցառումները, որոնք նախատեսվում են համապատասխան իրավական փաստաթղթերով, շատ ձեռնարկություններում կիրառվում են ոչ լրիվ ծավալով։ Քիչ են կիրառվում այնպիսի լրացուցիչ միջոցներ, ինչպիսիք են գործալքումների օրերի քանակով հերթական արձակուրդի պակասեցումը, փոխադրումն ավելի ցածր վարձատրվող աշխատանքի, այդ նոր տեղում առաջին ամիսներին պարգևատրման կիսով վճարումը և այլն։

Անհանգստացնում է շատ ձեռնարկություններում հանդիպող այն երևույթը, որը կարգազանցներին վերադաստիարակելու փոխարեն որպես պայքարի միջոց ընտրում են աշխատանքից հեռացնելը։ Եթե իններորդ հնգամյակում հեռացնում էին յուրաքանչյուր 5—6-րդ գործալիքին, իսկ տասներորդ հնգամյակում՝ յուրաքանչյուր 5-րդ, ապա տասնմեկերորդ հնգամյակում հեռացնում էին արդեն յուրաքանչյուր 4-րդին։ Այս միտումը չի կարելի համարել դրական, որովհետև արդյունքում ստացվում է, որ ձեռնարկությունները գործալիքներին փոխանակում են միմյանց հետ։ Ներկայումս շատ դժվարությունների առկայությամբ, մասնավորապես անբարենպաստ պայմաններ ունեցող աշխատատեղերը աշխատուժով ապահովված չլինելը, աշխատանքից հեռացված բանվորները հեշտությամբ տեղավորվում են այլ աշխատանքի, որտեղ, որպես կանոն, շուտով կրկին խախտում են կարգապահությունը։ Մյուս կողմից էլ, հեռացված բանվորների մի մասը երկար ժամանակ կտրված է մնում հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքից։ Այսպիսի ընդմիջումները ոչ միայն կրճատում են աշխատաժամանակի ընդհանուր ֆոնդը, դանդաղեցնում ձեռնարկություններում թափուր աշխատատեղերի զբաղեցումը, այլև հանգեցնում են բանվորների որակազրկման, նրանց մասնագիտական հմտությունների կորստի։ Անհրաժեշտ է ուժեղացնել պետական հսկողությունը աշխատանքից հեռացվածներին նոր աշխատանքի տեղավորման հարցում։ Նպատակահարմար է կիրառել մի շարք քաղաքների փորձը, որտեղ աշխատանքի տեղավորման բյուրոների միջոցով կատարվում է քաղաքի բոլոր ձեռնարկություններից հեռացվածների հաշվառում։

Ներգործման տնտեսական մեթոդների հետ միասին, իրենց որոշակի տեղն ունեն նաև կարգազանցների, պորտաբույծների, խոտանարարների նկատմամբ կիրառվող վարչական միջոցները։ Սակայն անհրաժեշտ է դրանք խստիվ տարբերակել՝ հաշվի առնել տեղական պայմանները և աշխատավորների առանձին սոցիալական խմբերի առանձնահատկությունները։

Քանի որ կարգապահության խախտումները բացասաբար են անդրադառնում աշխատանքի քանակի և որակի վրա, անհրաժեշտ է իրավաբանորեն հիմնավորել որոշակի ժամանակով կարգազանցի աշխատանքային դրույքի կիրառումը այն դեպքում, երբ ավելի ցածր վարձատրվող աշխատանքի կամ այլ պաշտոնի տեղափոխումն անհնար է կամ ոչ նպատակահարմար։

Որպես պատժի միջոց կարելի է նախատեսել ստաժի ընդհատման գրանցում աշխատանքային գրքույկում՝ առանց հեռացման, երբ գործալքումները տարվա մեջ

կազմում են ավելի քան 2—3 շաբաթ: Անհրաժեշտ է մտցնել գործալքումների փոխարեն հատուցում՝ ելնելով ձեռնարկության շահերից:

Ընթացիկ հնգամյակում էապես վերակառուցվում են աշխատանքային կարգապահության կառավարման մեխանիզմը և առաջին հերթին՝ նյութական, բարոյական, ստեղծագործական խթաններն ու լծակները:

Նյութական խթանների համակարգը հիմնված է ըստ աշխատանքի բաշխման և հասարակական սպառման ֆոնդերի իրացման վրա: Այն ներառում է պարգևատրումը (զրկումը պարգևատրումից)՝ ձեռնարկության աշխատանքի ընթացիկ, տարեկան արդյունքների համար, տոկոսային հավելավճարումներն անընդհատ ստաժի, երկարամյա աշխատանքի համար և օրենքով նախատեսված նվազեցումները՝ աշխատանքային կարգապահության խախտման համար, տարբեր կարգի տուգանքները և այլն:

Լճացման տարիները (հատկապես 70-ական թվականից սկսած) բնորոշ են նյութական խթանների ազդեցության անկմամբ, որը նաև կարգազանցների նկատմամբ անբավարար անձնական և կոլեկտիվ հսկողության հետևանք էր: Որպես այդ երևույթի պատճառ անհրաժեշտ է նշել առաջին հերթին ըստ աշխատանքի նյութական բարիքների բաշխման սոցիալիստական սկզբունքի խախտումը: Վերջինս հանգեցրել է աշխատավարձերի և պարգևատրումների հավասարեցմանը, արտաժամյա աշխատանքի պրակտիկային, որը կարգազանցներին հնարավորություն էր տալիս հատուցելու գործալքումների հետ կապված աշխատավարձի կորուստները:

Արտադրական պրոցեսի բարդացման, բանվորների ու ծառայողների կրթական, մասնագիտական մակարդակի, նրանց բարոյական պահանջմունքների և ընդունակությունների աճին զուգընթաց աշխատանքային կարգապահության ամրապնդման գործում մեծանում է, այսպես կոչված, ստեղծագործական խթանների դերը: Խթանների այս խումբը իրավամբ համարվում է առավել հեռանկարային՝ հաշվի առնելով մարդկանց կենսամակարդակի բարձրացումը, նրանց մասնագիտական և սոցիալապես ձևավորվող հատկանիշների զարգացումը՝ գիտակցականությունը, կոլեկտիվիզմը, ակտիվությունը և նախաձեռնությունը, կազմակերպվածությունը, ինքնահսկողությունը:

Արդեն այժմ անհրաժեշտ է ավելի լայնորեն կիրառել խթանումը աշխատանքով, նրա պայմաններով և վճարմամբ, առավել նպատակահարմար օգտագործել կադրերի ներգործարանային տեղաշարժերը: Աշխատանքային ռիթմով հոսքային գծերում և համեմատաբար հին տեխնիկայի վրա աշխատող սկսնակներին նպատակահարմար է տեղափոխել ավելի լավ պայմաններ, ավելի առաջնակարգ տեխնիկա ու տեխնոլոգիա ունեցող տեղամասեր (որպես խրախուսում բարձր կարգապահության համար): Բարեխիղճ, պլանները գերակատարող աշխատողներին նպատակահարմար է խթանել ազատ ժամանակով, այսինքն նախատեսել արտահերթ արձակուրդ կամ կարճեցված աշխատօր այն դեպքում, երբ դա չի հակասում արտադրության պայմաններին:

Պրակտիկան ցույց է տալիս, որ ձեռնարկության մակարդակով աշխատանքային կարգապահության կառավարման մեխանիզմը պետք է հիմնվի լծակների և խթանների ճկուն, արդյունավետ համակարգի վրա, որը թույլ կտա ավելի ամբողջականորեն հաշվի առնել աշխատանքի կոնկրետ պայմանները և սոցիալական խմբերի պահանջմունքները: Այս հարցադրումներն առավելապես իմաստավորվում են տնտեսական նոր մեխանիզմի, տնտհաշվարկային հարաբերությունների հետագա ամրապնդման և աշխատանքի կազմակերպման հրամայական եղանակից դեմոկրատական մեթոդների անցնելու պայմաններում:

Ամենաստորին կառուցվածքային օղակի սահմաններում աշխատանքային կարգապահության պահպանման և հետագա ամրապնդման վրա ազդում են նաև արտաքին պատճառները: Դրանց են վերաբերում առաջին հերթին տնտեսական մեխանիզմի (հատկապես պլանավորման և աշխատանքի խթանման գործում), ինչպես նաև երիտասարդների մեջ նախաաշխատանքային ժամանակահատվածում կարգապահության ձևավորման թերությունները: Ըստ էության ընտանիքում, դպրոցում, ՊՏՈՒ-ում, տեխնիկումում, բուհում դաստիարակության բոլոր բացթողումները ինչ-որ ձևով իրենց արտահայտությունն են գտնում աշխատանքային գործունեության ընթացքում:

Չի կարելի չնշել, որ գիտությունը դեռ չի զինել պետական կառավարման մարմիններին՝ աշխատանքի նկատմամբ հասարակության անհրաժեշտ վերաբերմունքի



ձևավորման և հետագա զարգացման վրա ազդեցության հիմնավորված մեթոդներով:

Անընդհատ կրթությունը, կադրերի պատրաստումը և նրանց մասնագիտացումը չի կարող սահմանափակվել միայն դպրոցական, մասնագիտական կրթությամբ, կադրերի պատրաստման և վերապատրաստման ձևերով: Պետք է օրգանապես զուգակցել և՛ դպրոցական, և՛ աշխատանքային դաստիարակությունը՝ ապահովելու համար աշխատասեր, սոցիալապես ակտիվ, համակողմանի զարգացած անհատի ձևավորման գործում ընտանիքի և հասարակության գործնական մասնակցությունը:

Աշխատանքային դաստիարակության արդյունավետ համակարգի ձևավորումը պահանջում է ընդհանուր մեթոդաբանության մշակում, առանձին սոցիալական խմբերի և դաստիարակության սոցիալական տարբերակման ուղիների որոնումներ:

Աշխատանքային կարգապահության արդյունավետության բարձրացումը, որպես ընդհանուր կրթության, կադրերի պատրաստման և վերապատրաստման միացյալ համակարգի օրգանական մաս, նույնպես պահանջում է նյութական և կադրային ապահովման համալիր միջոցառումների իրականացում: Մասնավորապես անհրաժեշտ է ստեղծել բոլոր օղակների համար աշխատանքային դաստիարակությամբ զբաղվող մասնագետների պատրաստման և կատարելագործման համակարգ:

Նպատակահարմար է դաստիարակչական աշխատանքների որակի բարձրացման նպատակով փոքր երեխա ունեցող կանանց թույլատրել անցնելու աշխատանքային ոչ լրիվ (շաբաթի) կամ անհատական ճկուն գրաֆիկի:

Նախադպրոցական հիմնարկների աշխատողների, միջնակարգ դպրոցների ուսուցիչների և միջնակարգ մասնագիտական ուսումնարանների դասախոսների աշխատավարձի բարձրացման համար ընդհանուր միջոցառումներն իրականացնելիս նպատակահարմար է դաստիարակների և ուսուցիչների աշխատավարձը պայմանավորել ոչ միայն աշխատանքային ստաժով, այլև մանկավարժների մասնագիտական որակավորմամբ: Կարևոր է մանկավարժների և դաստիարակների աշխատանքի սոցիալական նշանակության նկատմամբ հասարակական կարծիքի ձևավորման գործում մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության ակտիվացումը:

Աշխատանքային ակտիվության բարձրացման, նրա նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի մշակման գործում մեծ նշանակություն ունի աշխատանքի, կենցաղի, հանգստի, կրթության պայմանների նկատմամբ մարդկանց պահանջմունքների բավարարումը: Սոցիալիզմի հնարավորությունների ավելի բազմակողմանի իրականացման նպատակով կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում էկոնոմիկայի սոցիալական ուղղվածության ուժեղացմանը, արտադրության և սոցիալական ոլորտի մակարդակների միջև տարբերությունների արագ հաղթահարմանը: Աշխատանքային կարգապահության ամրապնդման պրոցեսում մարդկային գործոնի ակտիվացման համար սկզբունքային նշանակություն ունեն այնպիսի հարցերը, ինչպիսիք են հասարակության բարոյական մթնոլորտի, մարդկանց սոցիալական ինքնազգացողության լավացումը և օրենքի նկատմամբ անհարգալից վերաբերմունքի դրսևորման փաստերի վերացումը:

## Ֆրանսիական մեծ հեղափոխության 200-ամյակը

# 1789—1794 ԹԹ. ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

## (ՊԱՏՄԱԿԱՆ ԵՎ ՏԵՍԱԿԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ)

**Մ. ՔՈՉԱՐՅԱՆ**

ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՆՈՐԱՑՄԱՆ արդի ժամանակաշրջանում խիստ այժմեական են և ուսանելի անցյալի առաջադիմական սոցիալական փորձը, նրա գաղափարները, որոնք մեծապես նպաստել են մարդկության առաջընթացի արագացմանը: Այս առնչությամբ ակնհայտ է ֆրանսիական մեծ հեղափոխության դերը, որը սրանից երկու հարյուր տարի առաջ հռչակեց ազատության, հավասարության, եղբայրության սկզբունքները՝ հաստատելով հասարակության կյանքում բուրժուական հարաբերությունները:

1789 թվականի հուլիսի 14-ին Փարիզի հեղափոխական ժողովրդական զանգվածները գրավեցին ու հիմնահատակ խորտակեցին քաղաքի կենտրոնում գտնվող թագավորական բռնապետության մռայլ պատվարը՝ Բաստիլիան: Դա առաջին քաղաքական ելույթն էր թագավորական իշխանության դեմ, որի հետևանքով հեղափոխական շարժումները ծավալվեցին Ֆրանսիայի մյուս քաղաքներում ու գյուղերում: Հեղափոխությունն ընթանում էր վերընթաց գծով: Ժողովրդական նորանոր զանգվածներն, ընդգրկվելով ծայր առած զանգվածային շարժման մեջ, առաջ քաշեցին արմատական պահանջներ: Տապալվեց թագավորական միապետությունը, Ֆրանսիան հռչակվեց հանրապետություն: Մշակվեց մարդկային հասարակության պատմության համար մեծ նշանակություն ունեցող «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան»:

1793 թ. հունիսին հեղափոխական պայքարը թևակոխեց նոր, վճռական փուլ, որի հետևանքով տապալվեց առևտրաարդյունաբերական բուրժուազիայի իշխանությունը և հաստատվեց հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրա՝ յակոբինյան դիկտատուրան Ռոբեսպիերի գլխավորությամբ: Այն քաղաքային ու գյուղական աշխատավորական զանգվածների հեղափոխական պայքարի ճնշման ներքո ժողովրդի օգտին անցկացրեց մի շարք կարևորագույն ռեֆորմներ:

Ֆրանսիայի ժողովրդական զանգվածների հեղափոխական պայքարը ֆեոդալական հարաբերությունների, միապետական կարգերի և խոշոր առևտրաարդյունաբերական բուրժուազիայի դեմ ուներ խոր սոցիալ-տնտեսական ու քաղաքական-գաղափարական պատճառներ:

Ֆրանսիան հեղափոխությունից առաջ քայքայված ագրարային երկիր էր: Նրա 25 միլիոն բնակչությունից 22 միլիոնը գյուղացիներ էին: Ազգային եկամտի մոտավորապես երեք քառորդը տալիս էր գյուղատնտեսությունը: Այնտեղ դեռևս պահպանվում էին միջնադարյան հարկատվության մի շարք ավանդույթներ, որոնք գյուղացիական տնտեսությունները հասցրել էին սնանկացման: Գյուղատնտեսությունը խոր ճգնաժամ էր ապրում:

Ֆրանսիայում ծնունդ առած կապիտալիստական արդյունաբերությունը XVIII դարի երկրորդ կեսին շարունակում էր զարգանալ արագ տեմպերով և, Մարքսի

*ՔՈՉԱՐՅԱՆ ՄՈՒՍԱՅԵԼ ՏԻԳՐԱՆԻ— Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի վարիչ:*



խոսքերով ասած, դարձել էր «բառիս բուն իմաստով մանուֆակտուրային» արտադրություն (Մարքս Կ., Կապիտալ, հ. 1, Ե., 1954 թ., էջ 400): Սակայն ֆեոդալական արտադրահարաբերությունները խոչընդոտում էին արդյունաբերության, առևտրի և գյուղատնտեսության զարգացմանը, վերածվել էին բուրժուական արտադրեղանակի զարգացման կապանքների:

Ֆրանսիական հասարակությունը հեղափոխությունից առաջ բաժանված էր երեք դասի՝ ազնվականության, հոգևորականության և «երրորդ դասի»: Առաջին երկու դասերն արտոնյալ էին: Նրանք ազատված էին գրեթե բոլոր հարկերից: Ազնվականության ձեռքում էին գտնվում պետության բոլոր պաշտոններն ու բանակի հրամանատարական պոստերը:

Ազնվականության հետ միասին արտոնյալ դաս էր և հոգևորականությունը: Կաթոլիկ եկեղեցին քաղաքական և տնտեսական մեծ դեր էր կատարում նախահեղափոխական Ֆրանսիայում: Նա խոշոր հողատեր էր և ֆեոդալական գաղափարախոսության հիմնական կրողն ու ջատագովը: Հոգևորականության գրեթե 150 հազարանոց բանակը ֆեոդալական հասարակության այն իրական ուժն էր, որ կոչված էր ամրապնդելու թագավորական պետությունը:

Հոգևորականությունը հակադրվում էր բնակչության մյուս բոլոր իրավազուրկ զանգվածներին, այդ թվում և նորելուկ բուրժուազիային: Հասկանալի է, որ գրոհելով ֆեոդալական իրականության վրա, զարգացող բուրժուազիայի գաղափարախոսությունը պետք է հանդես գար առաջին հերթին կրոնի ու եկեղեցու դեմ:

«Բուրժուազիայի ազատ զարգացումը,— գրել է Էնգելսը,— արդեն անհամատեղելի էր դարձել ֆեոդալական սիստեմի հետ, ուստի և ֆեոդալական սիստեմը պետք է ընկներ: Բայց ֆեոդալական սիստեմի խոշոր ինտերնացիոնալ կենտրոնն էր հռոմեական կաթոլիկ եկեղեցին... նախքան յուրաքանչյուր առանձին երկրում աշխարհիկ ֆեոդալիզմի դեմ հաջող պայքար սկսելը անհրաժեշտ էր խորտակել նրա այդ կենտրոնական սրբազան կազմակերպությունը» (Մարքս Կ., Էնգելս Ֆ., Ընտիր երկեր երեք հատորով, հ. 3, Ե., 1978 թ., էջ 128):

Ֆրանսիայի բնակչության գրեթե ողջ աշխատավոր զանգվածը պատկանում էր երրորդ դասին, որն ունեզուրկ էր և իրավազուրկ: Այդ դասի մեջ, որի ճնշող մեծամասնությունը գյուղացիությունն էր, մտնում էին նաև արհեստավորները, բանվորները, քաղաքային չքավորությունը: Երրորդ դասի մեջ առաջատար դիրք էր գրավում բուրժուազիան՝ վաճառականները, բանկիրները, մանուֆակտուրաների տերերը:

Ֆեոդալական պարհակները քայքայում էին գյուղացիական տնտեսությունները և հնարավորություն չէին տալիս կիրառելու հողագործության կապիտալիստական զարգացման եղանակները: Համքարային սիստեմը և արտոնյալ դասերի կամայականություններն արգելակում էին առավել առաջավոր, առավել արտադրողական մանուֆակտուրային արդյունաբերության զարգացումը: Ֆեոդալական միջնապատերը, որ բաժանում էին ամբողջ Ֆրանսիան, արգելակում էին առևտրի զարգացումը, խանգարում ազգային շուկայի ստեղծմանը: Ֆեոդալական արտադրահարաբերությունները ամբողջովին վերցրած արգելակում էին բուրժուական արտադրողական ուժերի զարգացումը, ուստի և հասարակության հեղափոխական վերափոխումը դարձել էր պատմական անհրաժեշտություն: Մի կողմից երրորդ դասի, մյուս կողմից ազնվականության ու հոգևորականության միջև խոր հակասություններն արտահայտվեցին այն կատաղի պայքարում, որ մղում էին ազնվականության, կրոնի և եկեղեցու դեմ XVIII դարի ֆրանսիական լուսավորիչները՝ Վոլտերի, Դիդրոյի, Հոլբախի, Հելվեցիուսի և մյուսների գլխավորությամբ:

XVIII դարի երկրորդ կեսին Ֆրանսիայում հասունացող բուրժուական հեղափոխությունն ակտիվացրեց հոգևոր կյանքն ու գաղափարական պայքարը երկրում: Գաղափարների մեջ կատարված հեղափոխությունը նախորդեց քաղաքական հեղաշրջմանը: Ազգային ինքնագիտակցությունն ընդունեց լուսավորչա-գաղափարախոսական ձև, որը ծնվեց իբրև հեղափոխական բուրժուազիայի գաղափարախոսություն: Այն ուղղված էր հասարակական զարգացումն արգելակող ֆեոդալական հարաբերությունների և կղերական աշխարհայացքի դեմ: Ֆրանսիական լուսավորիչների մարտնչող մատերիալիստական գաղափարները մեծ դեր խաղացին հեղափոխությունը նախապատրաստելիս և ապա նրա ընթացքում: Ծագելով ֆեոդալական կարգերի խոր ճգնաժամի ժամանակաշրջանում, այդ գաղափարները նպաստում էին ֆեոդալական կարգերի խարխլմանը: Առաջավոր հասարակական շրջան-

ները, ժողովրդի առաջադեմ ներկայացուցիչները այդ գաղափարները ընկալում էին որպես պայքարի կոչ:

XVIII դարի կեսին Ֆրանսիայի հասարակական-քաղաքական կյանքում կարևոր իրադարձություն էր «Գիտությունների, արվեստների և արհեստների հանրագիտարանի» հրատարակումը: Դարի այդ նշանավոր հուշարձանի լույսընծայումը կապված էր Դիդրոյի անվան հետ, որի շուրջը համախմբվեցին ժամանակի բոլոր աչքի ընկնող քաղաքական գործիչները, գրողներն ու գիտնականները: Նրանց թվում՝ Դալամբերը, Վոլտերը, Ռուսոն, Հոլբախը, Հելվեցիուսը և շատ ուրիշներ:

«Հանրագիտարանը» փաստորեն դարձավ փիլիսոփայական մատերիալիզմի ու լուսավորչական գաղափարների տարածման փարոս:

Այստեղ տրված էին Ֆրանսիայի էկոնոմիկայի տարբեր ճյուղերի, մանուֆակտուրաների, գյուղատնտեսության ամենամանրամասն նկարագրությունները, ըստ որում բնութագրվում էին լավագույն արտադրության նմուշները: Դրանցից զատ, այն նաև գիտությունների հանրագիտարան էր, որտեղ զետեղվում էին մեծածավալ հոդվածներ, գիտական հետազոտություններ: Հանրագետները փաստորեն համակարգեցին XVIII դարի կեսերի զարգացող բնական գիտությունները:

Այդուհանդերձ, «Հանրագիտարանի» հեղինակները պայքար էին մղում ֆեոդալական-աբսոլյուտիստական կարգերի դեմ: Նրա էջերում զետեղվում էին կրոնի, տիրող կարգերի դեմ ուղղված մարտնչող հոդվածներ: Դիդրոն, Հոլբախը և մյուս հետևողական հանրագետները անհաշտ պայքար հայտարարեցին կաթոլիկական եկեղեցուն՝ անխնա քննադատելով ֆեոդալա-աբսոլյուտիստական կարգերի հաստատությունները: Այդ պատճառով «Հանրագիտարանի» հրատարակությունը քանիցս արգելվեց, սակայն Դիդրոյի և Հոլբախի համառ ջանքերի շնորհիվ հաջողվեց ավարտել բոլոր հատորների հրատարակությունը:

XVIII դարի ֆրանսիական մատերիալիզմը հետևողական պայքար էր մղում կրոնի և իդեալիզմի դեմ, պաշտպանում մատերիալիստական աշխարհըմբռնումը, որոնք հետագայում հանգամանորեն լուսաբանվեցին մատերիալիստ հանրագետների աշխատություններում: Բայց այդ փիլիսոփայությունը նախ քաղաքական հեղաշրջման բնագավառում առաջացող այն պահանջմունքի գաղափարական արտահայտությունն էր, որ աստիճանաբար առաջ էր մղվում Ֆրանսիայի սոցիալ-տնտեսական ամբողջ կացութաձևի զարգացմամբ: Մյուս կողմից, այդ փիլիսոփայությունը նախորդ ամբողջ ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական մտքի և նոր ժամանակի փորձնական գիտությունների զարգացման բնական արդյունքն էր:

Այսպիսով XVIII դարի կեսերին մարտնչող հակակղերականությունը դարձավ առաջադեմ հասարակական մտքի հզոր շարժման՝ XVIII դարի ֆրանսիական լուսավորչական ամենակարևոր հայեցակետերից մեկը:

XVIII դարի 30—40-ական թվականներին Լամետրին և Դիդրոն առաջադրեցին մի ամբողջ շարք փիլիսոփայական բեղմնավոր գաղափարներ, որոնք նշանավորեցին նոր ժամանակների մինչմարքսյան մատերիալիզմի վերելքի սկիզբը, որի գլխավոր գիծը բնության հետևողական մատերիալիստական բացատրությունն էր և աթեիստական հետևությունները:

Մատերիալիստական և աթեիստական մտքի զարգացման ասպարեզում իրենց ավանդն են ներդրել Ֆրանսիայի երկու խոշորագույն փիլիսոփաներ՝ Հելվեցիուսը, որը ձգտել է զգայապաշտական իմացաբանության հիման վրա մշակել նոր բարոյաքաղաքական ըմբռնում, և Հոլբախը, որին պատկանում է մատերիալիստական և աթեիստական ուսմունքների բոլոր կողմերի մանրամասն մշակումն ու համակարգումը: Հիշյալ փիլիսոփաների մատերիալիզմը կրում էր մարտնչող բնույթ:

XVIII դարի 60—70-ական թվականներին Հոլբախը ստեղծեց աթեիստական անանուն գրականության մի մեծ շարք (30 անուն գիրք և բրոշյուր), որոնցում գիտափիլիսոփայական առաջավոր մտքի զենքն ամբողջովին ուղղվեց կրոնական աշխարհայացքի ու պրակտիկայի հիմքերի դեմ: Սկզբից մինչև վերջ մարտնչող աթեիզմով է տոգորված Հոլբախի հիմնական փիլիսոփայական երկը՝ «Բնության համակարգը» (1770), որը հիմնարար նշանակություն ունի XVIII դ. ամբողջ ֆրանսիական մատերիալիզմի համար:

Ֆրանսիական մատերիալիստները հեղափոխության նախօրյակին շեշտում էին միջավայրի և հանգամանքների նշանակությունը հասարակական կարծիքի և մարդկային բարքերի ձևավորման գործում: Ըստ նրանց, անպետք բարքերը անպետք հանգամանքների արդյունք են, ուստի որպեսզի փոխվեն անպետք բարքերը, անհրաժեշտ է փոխել սոցիալական հանգամանքները: Սակայն նրանք ժամանակի ա-





ռումով չկա[illegible] գիտականորեն բացատրել այդ փոփոխությունների իրականացման ուղիները:

Հեղափոխական էին իրենց բովանդակությամբ Հելվեցիուսի և Հոլբախի ուսմունքները բարոյականության մասին: Բանական էգոիզմի տեսության սկզբունքների հիման վրա նրանք եզրակացնում էին, որ հասարակության բարոյական նորմերը և սկզբունքները պայմանավորված են արտադրահարաբերությունների բնույթով, շեշտելով, որ եթե նրանք չեն համապատասխանում երջանկության ձգտող մարդու բնությանը, ապա անհրաժեշտ է դրանք փոխել:

Լուսավորիչները լուրջ պայքար ծավալեցին կրոնական բարոյականության դեմ: Նրանք վճռականորեն հանդես եկան կրոնական այն պնդումների դեմ, թե իբր բարոյական նորմերը, բարոյականության սկզբունքներն ունեն աստվածային, գերբնական ծագում: «Կրոնը,— գրում է Հոլբախը,— հատկապես ժամանակակից ժողովուրդների մոտ, տիրապետելով բարոյականությանը, կատարելապես մթագնել է նրա սկզբունքները» (Гольбах П. Избранные антирелигиозные произведения. Т. I., М., 1934, стр. 139): Կրոնական բարոյականությունը կեղծ է, երեսպաշտ, նրա նշանակությունը ժողովրդին հնազանդության մեջ պահելն է, շեշտում է Հելվեցիուսը:

Կրոնական բարոյականության փոխարեն, որն արգելակում է հասարակության առաջընթացը, լուսվորիչներն առաջարկում են «բնական բարոյականության» գաղափարը, որի սկզբունքները բխում են մարդու բնական հակումներից, հիմնվում անձնական շահը հասարակականի հետ ներդաշնակորեն զուգակցելու վրա: Մատերիալիստական սենսուալիզմի հիմնական սկզբունքերին համապատասխան լուսավորիչները ձգտում են գտնել երկրային հիմունքներ համընդհանուր բնական բարոյականության համար:

Մարդը զգայական էակ է: Զգալով, նա ճանաչում է իրեն շրջապատող իրերը: Սակայն, այդ ճանաչողական տարրից բացի, ամեն մի զգայության մեջ, ըստ Հոլբախի, կա բավարարվածության կամ անբավարարվածության որոշակի զգայական երանգ: Ինչ էլ որ մարդը ճանաչի, նա միշտ դրա հետ միասին վերապրում է այդ երկու զգացումներից մեկը: Միանգամայն բնական է, որ մարդը, որին հատուկ է ինքնապահպանման զգացումը, ձգտում է խուսափել ամեն տհաճից, իր համար վնասակարից ու ձգտում է բավականության և հաճելի զգացումների: Ուստի, ըստ նրա, մարդուն առաջ մղող ուժը անձնական շահն է, օգուտի և սեփական բարեկեցության գիտակցումը:

Բարոյականությունը, մատերիալիստների կարծիքով, պետք է հիմնվի անփոփոխ սկզբունքների վրա, քանզի մարդն ունի ուտելու, խմելու, հագնելու, օթևան ունենալու և այլ մշտական պահանջմունքներ: Եթե ճշմարիտ բարոյականությունը գիտություն է հասարակության մեջ ապրող մարդու պարտականությունների մասին, ապա, ուրեմն, եզրակացնում է Հոլբախը, առանց մարդկային օրգանիզմի պահանջմունքները հաշվի առնելու, չի կարելի հաստատել այնպիսի կանոններ, որոնցով նա պետք է առաջնորդվի կյանքում: Այդ պատճառով էլ լուսավորիչները պահանջում էին հասարակությունը կառուցել այնպիսի հիմքի վրա, որը բացառեր բռնությունը մարդու բնության նկատմամբ:

Մարդկանց բարոյական գաղափարները համարելով նրանց փորձի կամ բանականության պտուղ, հասարակության մեջ նրանց փոխհարաբերության արդյունք, Հոլբախը և, ընդհանրապես, լուսավորիչները հանգում են այն հետևության, որ մարդու մտավոր և բարոյական կերպարի ձևավորման գործում որոշիչ դեր է պատկանում միջավայրին: Ինչպիսին որ սոցիալական միջավայրն է, այնպիսին էլ մարդն է, նրա գաղափարները, վարքագծի նորմերը: Ոչ թե բնությունը, այլ սոցիալական միջավայրն է դարձնում մարդուն չար կամ բարի: Այստեղից էլ հետևում է, որ մարդկանց առաքինի դարձնելու համար պետք է փոխել սոցիալական միջավայրը: Բայց այդ միջավայրն ինքը, նրանց կարծիքով, մարդկային գաղափարների մարմնավորումն է, ուստի մարդու վարքագիծը, լավ կամ վատ, միշտ պայմանավորված է ճշմարիտ կամ կեղծ գաղափարներով (Гольбах П. Избранные произведения в 2-х томах, т. I, стр. 559—560): Նշանակում է, արատների և առաքինության գլխավոր աղբյուրը պետք է փնտրել դաստիարակության մեջ:

Բայց լուսավորիչները հասկանում էին, որ ֆեոդալների բռնակալական կառավարման և կրոնական դաստիարակության պայմաններում համընդհանուր մարդկային բարոյականության սկզբունքները հաղթանակել չեն կարող. «Ինչ բարոյա-

կանության մասին կարելի է խոսել այն երկրում, որը ենթարկվում է անարդար, անմարդկային, ագահ բռնակալների» (Նույն տեղը, հ. 2, էջ 313):

«Համընդհանուր բարոյականության» անփոփոխ կանոնները պետք է ծառայեն մարդու շահերին, նպաստեն ինքնապահպանման, անձնական բարոյականության ձգտման բավարարմանը: Մարդու բոլոր գործողությունների հիմքում, այսպիսով ընկած է անձնական շահը, օգուտը՝ «... մարդկային գործողությունների միակ դրդապատճառը» (Նույն տեղը, հ. 1, էջ 311): Սակայն չպետք է շփոթել բուրժուազիայի եսամոլական շահերը Հելվեցիուսի և Հոլբախի «բանական անձնասիրության» սկզբունքի հետ: Մատերիալիստները գտնում էին, որ անձնական շահը, ձգտումը դեպի օգուտը «համընդհանուր բնական բարոյականության» սկզբունքների հաղթանակի պայմաններում չի հակասի հասարակության այլ անդամների նույնպիսի ձգտմանը: Այդ պատճառով նրանց համար անձնական շահի սկզբունքը լիովին բավարար է հասարակական կյանքը բացատրելու համար:

Շահի այդ տեսությունն արտահայտում է ըստ էության շահագործման բուրժուական ըմբռնումը, երբ մարդկային բոլոր հարաբերությունները քննարկվում են նրանց կիրարկման, օգուտի, շահի տեսակետից: «Արդեն Հելվեցիուսի և Հոլբախի երկերում մենք գտնում ենք այդ ուսմունքի իդեալականացումը, որ լիովին համապատասխանում է հեղափոխությունից առաջ ֆրանսիական բուրժուազիայի ընդդիմադիր դերին» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Երկեր, հ. 3, Ե., 1987 թ., էջ 476):

Մատերիալիստները իդեալականացնում էին մարդկանց հարաբերությունները այն հասարակության մեջ, որը պետք է փոխարիներ ֆեոդալիզմին: Այդ «... տեսությունը պատմականորեն օրինական փիլիսոփայական պատրանք է այն ժամանակ Ֆրանսիայում վեր բարձրացող բուրժուազիայի վերաբերյալ, որի շահագործելու տենչը դեռ կարելի էր պատկերել որպես հաղորդակցման պայմաններում ֆեոդալական հին կապանքներից ազատված անհատների լիակատար զարգացման տենչ» (Նույն տեղը, էջ 477): Այդ ազատագրումը միակ հնարավոր ուղին էր բացելու անհատի առջև առավել ազատ զարգացման ասպարեզ: Ուստի փոխադարձ շահի, որպես բոլոր անհատների միջև համընդհանուր փոխհարաբերությունների հիմնական սկզբունքի տեսական հռչակումը առաջադիմական քայլ էր, որն ըստ էության բացահայտում էր ֆեոդալիզմի օրոք շահագործման քաղաքական, նահապետական և կրոնական դիմակազերծման երկրային իմաստը: Ազնվականության և հոգևորականության դասային արտոնությունների դեմ հանուն իշխանության իր մղած պայքարում երիտասարդ բուրժուազիան առաջադրեց «բնական իրավունքների» պահանջը, որոնք հիմնված են, իբրև, մարդու բնության և բանականության վրա ընդհանրապես: Ընդ որում իր սեփական «բնությունը», իր դասակարգային շահերն ու պահանջները բուրժուազիան ներկայացնում էր (և մինչև հիմա էլ ներկայացնում է) որպես համընդհանուր մարդկային շահեր:

Հեղափոխության նախապատրաստման համար տեսական և գործնական նշանակություն ունեին մատերիալիստ-հանրագետների որոնումները սոցիալական անհավասարության պրոբլեմի լուծման, տիրող իշխանության էությունն ըմբռնելու, հասարակության սոցիալական համակարգը կատարելագործելու արդյունավետ միջոցներ որոնելիս:

Հելվեցիուսի և Հոլբախի կողմից առաջադրված՝ «ճիշտ ըմբռնված շահը, որպես սոցիալական առաքինության հիմք» դրույթն ունի ոչ միայն տեսական, այլև գործնական նշանակության սոցիալիստական հասարակարգի զարգացման արդի ժամանակաշրջանում, վերակառուցման ներկա փուլում:

Նախ, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ հասարակության և անհատի փոխառընչություններն ամենից առաջ նրանց շահերի փոխհարաբերություններն են: Ուստի հնարավոր չէ հասարակությունը դարձնել կենսունակ, եթե հաշվի չառնվեն շահերի եզրերը քաղաքականության և հասարակական հարաբերությունների հետ:

Այժմ, երբ մեր հասարակությունը բռնել է ինքնակատարելագործման ուղին, մարդու շահերի պրոբլեմի քննարկումը և լուսաբանումը ընդհանուր տնտեսական մեխանիզմի առնչությամբ մեծապես կնպաստի նրա գործունեության ակտիվացմանը, նրա բնորոշ առանձնահատկությունների դրսևորմանը:

Այս առումով առավել հրատապ է դառնում մարդկային գործունեության այնպիսի բարդ հարցի հետագա ուսումնասիրությունը և ճիշտ կիրառումը, ինչպիսին շահերի պրոբլեմն է:

Ֆրանսիական մեծ հեղափոխության նախօրյակին լույս տեսած «Սոցիալական համակարգ» և «Համընդհանուր բարոյականություն» աշխատություններում Հոլբա-





խը մշակեց բուրժուական հասարակարգի զարգացման սոցիալ-քաղաքական և էթիկական ծրագիրը, որը զգալի չափով նպաստեց հեղափոխության տեսական նախապատրաստմանը: Բարձր գնահատելով Լամետրիի, Դիդրոյի, Հելվեցիուսի և Հոլբախի փիլիսոփայական աշխատությունները, Էնգելսը նրանց անվանել է «ֆրանսիական մեծ մտածողներ»: Ֆ. Էնգելսի բնորոշմամբ նրանք նախահեղափոխական Ֆրանսիայում մարմնավորել են բարձր հեղափոխական քննադատական ոգի: «Այն մեծ մարդիկ, որոնք Ֆրանսիայում լուսավորում էին գլուխները մոտեցող հեղափոխության համար, իրենք հանդես էին գալիս ծայրահեղ հեղափոխականորեն: Ոչ մի արտաքին հեղինակություն նրանք չէին ճանաչում: Կրոնը, բնության ըմբռնումը, հասարակությունը, պետական կարգը, ամեն ինչ ամենաանխնա քննադատության էր ենթարկվում. ամեն ինչ պետք է բանականության դատաստանի առաջ կանգներ, և, կա՛մ պիտի արդարացներ իր գոյությունը, կա՛մ թե անհետանար» (Էնգելս Ֆ., **Անտի Դյուրինգ**, Ե., 1967 թ., էջ 20—21):

Իր սոցիալական բովանդակությամբ VXIII դարի ֆրանսիական լուսավորչականությունն իրենից ներկայացնում էր բուրժուական հեղափոխության գաղափարական նախապատրաստումը, որը մինչև հիմքերը ցնցեց ֆեոդալական միապետական կարգերը: Այս առումով հետաքրքիր է թագավորական դատախազ Սեգիեի ճառը Ֆրանսիայի պառլամենտում Հոլբախի «Բնության համակարգը» գրքի առթիվ, որը դատապարտվեց հրկիզման: Դատախազն իր ճառում հետևյալ կերպ է բնորոշում մատերիալիստ լուսավորիչներին: «... Գլուխ է բարձրացրել անաստված և հանդուգն մի աղանդ. նա իր կեղծ իմաստությունը զարդարել է փիլիսոփայության անվամբ... Նրա կողմնակիցներն իրենց հայտարարել են որպես մարդկային ցեղի լուսավորիչներ: **Մտածելու ազատություն**,— ահա նրանց մարտական նշանաբանը. և այն լսելի է աշխարհի մի ծայրից մյուսը: Մի ձեռքով նրանք փորձում էին տապալել գահը, իսկ մյուսով՝ շուռ տալ զոհասեղանները: Նրանք ձգտում են ոչնչացնել սուրբ հավատը և փոխել հասարակական կարծիքը կրոնական և քաղաքական հիմնարկությունների մասին» (Цит. по кн. Беркова К. **Поль Гольбах**, стр. 65):

Անհրաժեշտ է շեշտել, որ կրոնական պատրանքների մերկացումը բնավ էլ վերացական լուսավորչականության բնույթ չէր կրում, չէր պատկերացվում որպես ինքնաբավ մի բան: Քննադատություն ծավալողների կողմից այն գիտակցորեն ներառում էր Ֆրանսիայում գոյություն ունեցող հասարակարգի ամբողջական ու համակողմանի գաղափարական պսակազերծման ընդհանուր խնդիրները, քանի որ տնտեսական առումով եկեղեցին խոշոր հողատեր էր, իսկ քաղաքական առումով հոգևորականությունը համարվում էր ֆեոդալական հասարակարգի առաջին դասը և ազնվականության հետ միասին կազմում էր նրա արտոնյալ խավը: Նա վեր էր կանգնած իրավազուրկ ու շահագործվող երրորդ դասից, որն իր շարքերում միավորում էր բնակչության գերակշռող մասը: Ահա, հենց այդ իրավազուրկ դասի, հեղափոխական ժողովրդական զանգվածներին ներկայացնող երրորդ դասի շահերն էին արտահայտում XVIII դարի ֆրանսիական մատերիալիստ-լուսավորիչները: «Հոլբախը և, առհասարակ այն ժամանակվա ֆրանսիական մատերիալիստները,— գրել է Գ. Վ. Պլեխանովը,— ոչ այնքան բուրժուազիայի գաղափարախոսներն էին, որքան երրորդ դասի գաղափարախոսները պատմական այն դարաշրջանում, երբ այդ դասն ամբողջովին տոգորված էր հեղափոխական ոգով: Մատերիալիստները կազմում էին երրորդ դասի գաղափարական բանակի ձախ թևը: Եվ, երբ այդ դասն իր հերթին «ներսից» բաժանվեց, երբ նրանից դուրս եկավ, մի կողմից, բուրժուազիան և, մյուս կողմից, պրոլետարիատը, այդ ժամանակ պրոլետարիատի գաղափարախոսներն սկսեցին նրանց ուսմունքի վրա հենվել հենց այն պատճառով, որ դա իր ժամանակի ամենահեղափոխական փիլիսոփայական ուսմունքն էր: Մատերիալիզմը դրվեց սոցիալիզմի և կոմունիզմի հիմքում» (Պլեխանով Գ. Վ., **Փիլիսոփայական ընտիր երկեր**, հ. 3, Ե., 1964 թ., էջ 227—228):

Դիդրոյի, Հոլբախի, Հելվեցիուսի երկերն այժմ էլ շարունակում են հարվածել բուրժուազիայի գաղափարախոսությանը, մերկացնում են կրոնական սնահավատության վնասաբեր դերը հասարակության առաջընթացի գործում: Եվ պատահական չէ, որ մարդկության լավագույն գաղափարների համար մարտնչողները մատերիալիստ հանրագետներին իրենց դաշնակիցներն են համարում:

«Մենք XVIII դարի հանրագետների հեղափոխական մտքի, Դիդրոյի, Հելվեցիուսի և Հոլբախի փիլիսոփայական մատերիալիզմի օրինական ժառանգորդներն ենք: Մենք շարունակում ենք նրանց գործը, ովքեր մարտնչել են մարդկության առաջավոր շարքերում» (Թորեզ Մ., **Ժողովրդի զավակը**, Ե., 1951 թ., էջ 96):

Վիթխարի է ֆրանսիական հանրագետների ստեղծագործական ժառանգությունը, որը համարձակորեն վեր պարզեց հասարակության առաջընթացի ու պայքարի դրոշը, ամենաառաջավոր աշխարհայացքի՝ մատերիալիզմի դրոշը: Ուստի, այդ ժառանգության ուսումնասիրությունը մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև մեր օրերում:

Լենինը նշում էր, որ ի տարբերություն մյուս սոցիալիստական ուսմունքների, մարքսիզմի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ նա օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի իր վերլուծման մեջ լիակատար գիտական լրջությունը միացնում է մասսաների հեղափոխական եռանդի հետ: Մարքսիզմի այդ առանձնահատկությունից բնականաբար բխում է նրա բարձր հարգանքը դեպի առանձին երկրների և ժողովուրդների հեղափոխական ավանդույթները, դրանք խնամքով պահպանելը, մասսաների ուսուցման ու դաստիարակության համար հաջող կերպով օգտագործելը:

Մարքսիզմի բացասական վերաբերմունքը դեպի աղանդավորությունը և դոգմատիզմը վառ կերպով դրսևորվում է անցյալի հեղափոխական գործիչների հանդեպ դրսևորած դրական գնահատության մեջ: Մարքսիզմը հավուր պատշաճի է արժեքավորել անցյալի նաև այն մեծ հեղափոխականներին, որոնք չեն հարել պրոլետարական պայքարին: Հայտնի է, թե ինչպես Լենինը բարձր է դասել հեղափոխական յակոբինյաններին, հաճախ անդրադարել նրանց գործունեությանը՝ վկայակոչելով վերջիններին որպես հնի մնացորդների դեմ վճռական պայքար մղելու փայլուն օրինակի:

«Չի կարելի մարքսիստ լինել, ամենախոր հարգանք չտածելով բուրժուական այն մեծ հեղափոխականների նկատմամբ, որոնք համաշխարհային պատմական իրավունք են ունեցել խոսելու բուրժուական «հայրենիքների» անունից, որոնք ֆեոդալիզմի դեմ մղվող պայքարի մեջ քաղաքակիրթ կյանքի են բարձրացրել նոր ազգերի տասնյակ միլիոնավոր մարդկանց» **(Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 26, էջ 272—273):**

Վ. Ի. Լենինը մարքսիզմի, բանվոր դասակարգի վերաբերմունքը տվյալ երկրի հեղափոխական ավանդույթների նկատմամբ համեմատում է հետադիմականների վերաբերմունքի հետ և ցույց տալիս, թե ինչպես նրանք ձգտում են ոչնչացնել այդ ավանդույթները, ստիպել ժողովրդին «մոռանալու պայքարի այն ձևերը, կազմակերպության այն ձևերը, այն գաղափարները, այն լոզունգները, որ այնպես առատությամբ և բազմազանությամբ ծնում էր հեղափոխական ժամանակաշրջանը» **(ԵԼԺ, հ. 16, էջ 30):** Հատկապես, այդպիսի վերաբերմունք ունի, նշում է Լենինը, «հետադիմությունը դեպի ֆրանսիական մեծ հեղափոխությունը, որը մարդկության վրա ունեցած իր ազդեցության կենսականությունը և ուժը մինչև այժմ նրանով է ապացուցում, որ մինչև օրս էլ ամենակատաղի ատելություն է առաջացնում» (նույն տեղը):

Անցած ժամանակը մեկ անգամ ևս հիմնավորեց Լենինի ճշմարիտ լինելը: «Բուրժուազիայի պատմաբանները յակոբինության մեջ անկում են տեսնում... Պրոլետարիատի պատմաբանները յակոբինության մեջ տեսնում են ազատության համար մղվող պայքարում ճնշված դասակարգի բարձրագույն **վերելքներից** մեկը» **(ԵԼԺ, հ. 42, էջ 460):**

Ժամանակակից ֆրանսիական բուրժուազիան շարունակում է վարկաբեկել ոչ միայն պրոլետարական հեղափոխական գործիչներին, այլև ուրանում է իր իսկ բուրժուական մեծ հեղափոխության ավանդույթները, հրաժարվում նրա ականավոր գաղափարախոսներից, ֆրանսիական մատերիալիստ-լուսավորիչներից, որոնք գաղափարապես նախապատրաստեցին հեղափոխությունը:

«Ֆրանսիայում չկա այնպիսի մարդ,— նշել է Ժակ Դյուկլոն,— որը լինի այնքան զրպարտված և վիրավորված, ինչպես Ռոբեսպիերը: Եվ հիմա էլ շարունակում են նրան զրպարտել: Փարիզում չկա որևէ փողոց, որը կրի Ռոբեսպիերի անունը, Ֆրանսիայում չկա որևէ հուշարձան նվիրված նրան, և եթե անգամ հարկավոր լիներ ջնջել նրա անունը պատմության էջերից, ես համոզված եմ, ֆրանսիական բուրժուազիան չէր զլանա այդ անելու» (Дюкло Ж. Ленин и уроки французской истории. Французский ежегодник. М., 1959, стр. 21—22):

Ֆրանսիական բուրժուազիայի նման վերաբերմունքի մեջ Ժակ Դյուկլոն իրավամբ տեսնում է բուրժուազիայի սարսափը իր հեղափոխական անցյալի, երիտասարդ շրջանի հեղափոխական գործունեության նկատմամբ: Եվ իրոք, Հելվեցիուսի ու Հոլբախի ուտիլիտարիստական էթիկան չի կարող չկատաղեցնել ժամանակակից բուրժուական գաղափարախոսներին, որովհետև նրանք առաջադրում են այնպիսի



սկզբունքներ, որոնք հակադիր են իմպերիալիզմի շահերին, այն է՝ բարձր հումանիզմ, հարգանք մարդու արժանապատվության հանդեպ, դեմոկրատական ազատություն, ժողովուրդների բարեկամություն: Հելվեցիուսի և Հոլբախի փիլիսոփայական տեսական դրույթները մտել են համամարդկային մշակույթի գանձարանը և այսօր էլ ոգևորում են բոլոր նրանց, ովքեր պայքարում են բռնակալության, խավարամոլության դեմ, կրոնի և իդեալիզմի դեմ՝ հանուն մարդկային հասարակության առաջադիմության:

XVIII դ. ֆրանսիական մատերիալիստների տեսական դրույթները ուղեցույց հանդիսացան 1789—1794 թթ. բուրժուական մեծ հեղափոխության համար և մարմնավորվեցին ֆեոդալական հարաբերությունների, միապետության, դասային արտոնությունների, եկեղեցու դեմ մղվող անզիջում պայքարում: Այդ պայքարի շնորհիվ բռնագրավվեցին եկեղեցական հողերը և տրամադրվեցին գյուղացիներին, կոնվենտի որոշմամբ փակվեցին եկեղեցիները և մտցվեց քաղաքացիական ծիսակատարություն, դպրոցներում վերացվեց կրոնի դասավանդումը:

Ֆրանսիական մատերիալիստների տեսական դրույթների իրականացման համար կարևոր նշանակություն ունեցավ «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան», որը մինչև այժմ էլ պահպանում է իր արդիական նշանակությունը: «Դեկլարացիայում» հայտարարվում էր, որ «մարդիկ ծնվում են ազատ ու հավասար իրավունքներով», «բոլորը հավասար են օրենքի առաջ», որ մարդու իրավունքները պետք է պաշտպանվեն օրենքի ուժով, որպեսզի մարդը հարկադրված չլինի որպես վերջին միջոցի ըմբոստանալու բռնության ու ճնշման դեմ և այլն:

Ֆրանսիական մեծ հեղափոխության պատմական նշանակությունն այն է, որ նա սոցիալ-տնտեսական և քաղաքական կարևոր փոփոխություններ մտցրեց հասարակական կյանքի գրեթե բոլոր բնագավառներում: Այդ հեղափոխությունը խորտակեց ֆեոդալական հարաբերությունները և ստեղծեց արտադրաուժերի ազատ զարգացման հնարավորություն: Բայց դրա հետ մեկտեղ նա ճանապարհ հարթեց կապիտալիզմի համար, Ֆրանսիայում բուրժուազիայի տիրապետության համար և բաց արեց ֆեոդալական կարգերի հեղաբեկման, կապիտալիզմի հաղթանակի երկարատև ժամանակաշրջան Եվրոպայի երկրներում: Այդ երկրների հետագա ողջ զարգացումը մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունն ընթանում էր ֆրանսիական մեծ հեղափոխության գաղափարների ազդեցությամբ: Այլ կերպ ասած, եվրոպական քաղաքակրթությունը և ժամանակակից քաղաքական մտածելակերպը ձևավորվել է ֆրանսիական և Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունների գաղափարների ազդեցությամբ:

Իրենց դարն ապրած ֆեոդալական կարգերը կործանող բուրժուական հեղափոխություններից XVIII դարի ֆրանսիական հեղափոխությունը առավել չափով իրավունք ունի կոչվելու մեծ:

«Վերցրեք,— գրել է Լենինը,— ֆրանսիական մեծ հեղափոխությունը: Նա զուր չի կոչվում մեծ: Իր դասակարգի՝ բուրժուազիայի համար, որի օգտին նա աշխատում էր, նա այնքան շատ բան է արել, որ ամբողջ XIX դարը, այն դարը, որ քաղաքակրթություն և կուլտուրա տվեց ամբողջ մարդկությանը, անցավ ֆրանսիական հեղափոխության նշանաբանի տակ: Այդ դարն աշխարհի բոլոր ծայրերում միայն հենց այն էր անում, որ անց էր կացնում, մաս-մաս իրականացնում, ավարտում էր այն, ինչ որ ստեղծել էին բուրժուազիայի ֆրանսիական մեծ հեղափոխականները...» **(ԵԼԺ, հ. 38, էջ 457):**

Եվ պատահական չէ, որ ներկա ժամանակաշրջանում XVIII դարի ֆրանսիական մատերիալիստների հեղափոխական ավանդույթները ուսումնասիրվում ու զարգացվում են մարքս-լենինյան գաղափարախոսության կողմից: Այդ տեսակետից լուրջ ծառայություններ ունեն ֆրանսիական կոմունիստական կուսակցությունը, Խորհրդային Միության կոմկուսը, եղբայրական մյուս կոմկուսակցությունները: Այդ կարևոր պրոբլեմի շուրջ ստեղծված է գիտական ծանրակշիռ գրականություն:

Սոցիալական առաջադիմության համար պայքարի ելած ուժերը մարտնչում են ընդդեմ հակագիտական կոնցեպցիաների, հանուն այն լավագույնի, առաջադիմականի, որ մարդկությունը ստեղծել է գիտության, մշակույթի, բարոյական նորմերի հաստատման ու զարգացման բնագավառում՝ ի պաշտպանություն ազատության, դեմոկրատիայի, խաղաղության:

# ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**

ԱՆՑԵԼ Է ԵՐԿՈՒՀԱՐՅՈՒՐ ՏԱՐԻ 1789 թվականի հուլիսի 14-ից՝ Բաստիլիայի անկումից, որը համարվում է ֆրանսիական բուրժուական մեծ հեղափոխության սկիզբը: Ֆրանսիան և ողջ քաղաքակիրթ աշխարհը նշում է, Ժան Ժորեսի խոսքերով ասած, այդ «զարմանալիորեն հարուստ վիթխարի իրադարձության» 200-ամյակը՝ ամենից առաջ նրա հռչակած գաղափարների ու սկզբունքների, ստեղծած հասարակական հիմնարկությունների անանց պատմական կարևորության, հետևաբար, և արդիական նշանակության համար: Իր «Ֆրանսիական հեղափոխության սոցիալիստական պատմությունը» գրքում Ժ. Ժորեսն իրավամբ նշել է, որ այդ իրադարձությունը չավարտված փաստ է, որի հետևանքները վերջ չունեն, թեև նրա «հիմնական նշանակությունը բուրժուազիայի քաղաքական իշխանության հաստատումն է» (The Varieties of History From Voltaire to the Present, N. Y., 1973, p. 164):

Հեղափոխությունները պատմության լոկոմոտիվներն են, ասել է Կ. Մարքսը: Եթե այդ այդպես է, ապա սոցիալ-տնտեսական ֆորմացիաները, պատկերավոր ասած, հանգուցային կայարաններ են, որոնք հաջորդում են միմյանց պատմության երթուղում: Հետևաբար, ամեն մի լոկոմոտիվ իր պատմական առաքելությունը կատարած կլինի սոսկ այն ժամանակ, երբ հաջորդ կայարանը, ուր նա հասցնում է գնացքը, լինի նախորդից ավելի հարուստ, բարեկեցիկ, զարգացած, կենսունակ, արդարացի ու կատարյալ, քանզի ըստ մարքսիստական պատմափիլիսոփայության սոցիալ-տնտեսական ֆորմացիաների վերընթաց հերթափոխության մեջ ամեն մի նոր ֆորմացիայի պատմական արդարացվածության ուրիշ չափանիշ չկա:

Այս իսկ իմաստով 1789—1794 թվականների ֆրանսիական մեծ հեղափոխությունը եղավ պատմության հզորագույն լոկոմոտիվներից մեկը, չնայած վերջնականապես նշված կայարանը ժամանելու համար նա գրեթե մեկ հարյուրամյակ դեգերեց դժվարին երթուղում՝ ունենալով բազմաթիվ հարկադրված կանգառներ, առաջընթացներ ու հետընթացներ:

Մ. Ս. Գորբաչովը, խոսելով վերակառուցման՝ իբրև հեղափոխության, մասին և բացատրելով, թե ինչու Հոկտեմբերյան հեղափոխության 70-րդ տարում մենք ստիպված ենք խոսել նոր հեղափոխության անհրաժեշտության մասին, գրում է. «Լենինը ժամանակին նկատել է, որ բուրժուական դասական հեղափոխությունների երկրում՝ Ֆրանսիայում, 1789—1794 թվականների նրա Մեծ հեղափոխությունից հետո պահանջվեցին ևս երեք հեղափոխություններ (1830, 1848 և 1871 թվականների), որպեսզի մինչև վերջ հասցվեր Մեծ հեղափոխության սկսած գործը» (Մ. Ս. Գորբաչով. **Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար**, «Հայաստան» հրատ., 1988 թ., էջ 57):

Անշուշտ, աններելի սխալ կլիներ սրանից հետևցնել, թե Հոկտեմբերյան հեղափոխության 70-րդ տարում սկսված նոր հեղափոխության համար պատմությունը մեզ կհատկացնի ևս յոթ տասնամյակ, գուցե քիչ պակաս կամ ավելի: Մենք վաղուց սպառել ենք պատմության մեր բաժինը և մեր լոկոմոտիվն այլևս միջանկյալ կանգառների ու հետընթացների հնարավորություն չունի: Ի դեպ, 200-ամյա ֆրանսիական հեղափոխության արդիական նշանակությունը նաև այն է, որ անկախ իր դասակարգային բովանդակությունից, այն թույլ է տալիս ըմբռնել մեզ համար հույժ կարևոր այն իրողությունը, որ վերակառուցման՝ իբրև հեղափոխության, ամենագլխավոր, գլոբալ խնդիրը սոցիալիզմի՝ որպես ֆորմացիայի պատմական արդարացվածությունն ապացուցելն է: Իսկ դրա համար անհրաժեշտ է, որ սոցիալիզմը գերազանցի զարգացած կապիտալիզմին բոլոր պարամետրերով՝ աշխատանքի արտադրողականությամբ, հասարակական արտադրության արդյունավետությամբ (նույնատեսակ արտադրանքի մեկ միավորի հումքատարողությամբ, աշխատատարությամբ, էներգատարողությամբ, նրանում գիտության մասնակցության բաժնով և այլն), արտադրանքի և սպասարկման որակով, կյանքի որակով՝ ներառյալ գոյապահպանումը, սոցիալական պաշտպանվածությունը, կենսամակարդակը, սոցիալական արդարության աստիճանը, մարդու իրավունքների ու ազատությունների մակարդակը: Բոլոր այս պարամետրերով սոցիալիզմը պետք է գերազանցի զարգացած կապիտալիզմի գերագույն նվաճումները, այսինքն՝ այն հասարակարգի, որը դասական բուրժուական հեղափոխության արգասիք է, ինչպիսին էր XVIII դարի ֆրանսիական մեծ հեղափոխությունը:

Անտարակույս, ֆրանսիական հեղափոխությունը, ինչպես ամեն մի հասարակական երևույթ, հակասական էր: Նրա գլխավոր պարադոքսը հռչակված իդեալների համընդհանուր, համամարդկային էության և դրանց դասակարգային ըմբռնումների ու կենսագործման բուրժուական դասակարգային սահմանափակ բնույթի հակասությունն էր, որը դիպուկ նկատել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը «Սուրբ ընտանիքում»: «1789 թվականի հեղափոխության ժամանակ բուրժուազիայի **շահը**,— գրել են նրանք, — որ միանգամայն հեռու էր **«ձախողակ»** լինելուց, ամեն ինչ **«շահեց»** և **«իրական հաջողություն»** ունեցավ, որքան էլ որ հետագայում հօդս ցնդեր **«պաթոսի»** ծուխը և որքան էլ թողնեին **«խանդավառության»** այն ծաղիկները, որոնցով նա զարդարել էր իր օրորոցը: Այդ շահն այնքան հզոր էր, որ հաղթականորեն հաղթահարեց Մարատի գրիչը, տեռորիստների գիլյոտինը, Նապոլեոնի սուրը, հավասարապես նաև Բուրբոնների կաթոլիկականությունը և զտարյունությունը: Հեղափոխությունը «ձախողակ» էր միայն այն մասսայի համար, որի համար **քաղաքական** «գաղափարը», իր իրական **«շահի»** գաղափարը չէր, որի իսկական կենսական սկզբունքն այդ իսկ պատճառով չէր համընկնում հեղափոխության կենսական սկզբունքին, այն մասսայի համար, որի ազատագրման ռեալ պայմաններն էապես տարբեր են այն պայմաններից, որոնց շրջանակներում բուրժուազիան կարող է ազատագրել իրեն և հասարակությանը: Հետևաբար, եթե ձախողակ է հեղափոխությունը, որը կարող է բոլոր պատմական մեծ «գործերի» ներկայացուցիչ լինել, ապա նա ձախողակ է այն պատճառով, որ այն մասսան, որի կենսապայմաններով ըստ էության սահմանափակվեց հեղափոխությունը, **բացառիկ** մասսա էր, ամբողջ բնակչությանը չընդգրկող, **սահմանափակ** մասսա էր» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս: **Երկեր**, հ. 2, էջ 100):

Այնուհետև Մարքսը և Էնգելսը շեշտում են, որ մասսայի ամենաբազմաքանակ մասի, այսինքն՝ բուրժուազիայից տարբերվող մասի համար ֆրանսիական հեղափոխության շահը եղել է սոսկ «գաղափար» ժամանակավոր խանդավառության ու թվացող վերելքի առարկա:

Սակայն, որքան էլ տարօրինակ թվա, դրանով է պայմանավորված ֆրանսիական հեղափոխության հռչակած գաղափարների ու կարգախոսների երկարակեցությունը և արդիական նշանակությունը: Սկեպտիկները կասեին, որ իդեալները նրանով են իդեալ, որ անմատչելի են և անհասանելի կամ հասանելի են միայն իրենց նեղ դասակարգային իմաստի շրջանակներում: Ուստի դրանց համար մղվող պայքարն անխուսափելիորեն պետք է ընդմիջվի հուսախաբության ու վհատվելու պահերով, նույնիսկ ժամանակամիջոցներով: Դա, իհարկե, ճիշտ է: Սակայն համամարդկային ճշմարտությունները, անկախ իրենց անմիջական ճակատագրից, երբեք չեն կորցրել ազդեցության ուժը և շարունակել են խանդավառել ամբողջ սերունդների, որոնք մերժելով իդեալի անհասանելիության մասին հոռետեսական փիլիսոփայությունը, պայքարել են դրա համար, անշուշտ, նոր պայմաններում և նոր, իրենց հատուկ դասակարգային ըմբռնումների դիրքերից:

Բանն այն է, որ հեղափոխության հռչակած սոցիալական ու ազգային իրավահավասարության սկզբունքները, որոնք խտացված ձևով արտահայտված էին նրա «Ազատություն, հավասարություն, եղբայրություն» կարգախոսում, մնացին իբրև խորհրդանիշներ՝ վկայելով հեղափոխության դասակարգային սահմանափակությունը:

*ՀԱԿՈԲՅԱՆ ՀԱԿՈԲ ՎԱՀԱՆԻ— Երևանի պետական համալսարանի ՍՄԿԿ պատմության ամբիոնի դոցենտ, պատմական գիտությունների թեկնածու*

Դրությունը չփրկեցին ո՛չ յակոբինյանների դիկտատուրան, որը տևեց մեկ տարուց քիչ ավելի (1793 թվականի հունիսի սկզբից մինչև 1794 թվականի հուլիսի վերջը) և իշխանության կենտրոնացումը Կոնվենտի ու նրա կոմիտեների՝ Հասարակական փրկության կոմիտեի ու Հասարակական անվտանգության կոմիտեի ձեռքում, ո՛չ գիլյոտինի քաղաքականությունը, ո՛չ «հեղափոխական բանակի» հաղթանակները արտաքին թշնամու դեմ, և ո՛չ էլ հեղափոխական մանր բուրժուազիայի ու պլեբեյության շահերն արտահայտող անկաշառ ու արմատական առաջնորդների՝ Ռոբեսպիերի, Մարատի ու Սեն-Ժյուստի մոլեռանդ նվիրվածությունը հեղափոխության գործին: Դարձյալ կարող է իբրև պարադոքս հնչել, բայց հենց հեղափոխության պարտությունը՝ Թերմիդորի 9-ի հեղաշրջումը (1794 թվականի հուլիսի 27—28), իսկ ավելի ուշ՝ Նապոլեոն Բոնապարտի դիկտատուրան ոչ թե վերացրին հեղափոխության հռչակած սոցիալական ու ազգային ազատագրության գաղափարները, այլև դրանք թողեցին ուժի մեջ ու ու ակամայից սրեցին պայքարը դրանց հաղթանակի համար Ֆրանսիայում և Եվրոպայում: Այսպես է լինում միշտ, երբ արմատական հեղափոխությունները թողնըվում են անկատար, կիսատ-պռատ կամ կիսավարտ: Այս իմաստով հակահեղափոխական ուժերի ամեն մի հաղթանակ, ամեն մի թերմիդոր նման է պյուռոսյան հաղթանակի: Դրանում է ֆրանսիական հեղափոխության ամենաարդիական դասերից մեկը:

Եվ, այնուամենայնիվ, մինչև իր պարտությունը ֆրանսիական մեծ հեղափոխությունը մինչև թերմիդորյան հեղաշրջումը հասցրեց շատ բան անել Ֆրանսիայի և ոչ միայն Ֆրանսիայի համար:

Ֆ. Էնգելսն այն կարծիքին էր, որ Եվրոպայում դեմոկրատիայի սկիզբը դրել է ֆրանսիական մեծ հեղափոխությունը (տե՛ս Մարքս Կ. և Էնգելս Ֆ., **Երկեր**, հ. 1, էջ 581): Իսկ այն, ինչ ստեղծեց ֆրանսիական մեծ հեղափոխությունը, Վ. Ի. Լենինը համարում էր հսկայական առաջընթաց քայլ ֆեոդալիզմի համեմատությամբ: «Կապիտալիզմը համաշխարհային պատմական մի քայլ էր դեպի առաջ «ազատության», «հավասարության», «դեմոկրատիայի», «քաղաքակրթության» ուղիով» (**ԵԼԺ**, հ. 39, էջ 145):

Անտարակույս, 1789—1794 թվականների հեղափոխությունն ամենից առաջ և ամենից ավելի ֆրանսիական հեղափոխություն էր, թեև նրա արմատները ներֆրանսիական զարգացման մեջ չէին միայն:

Հեղափոխության 200-ամյակի առթիվ Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրության կողմից արտասահմանում տարածված ցուցահանդեսի կոմիսար, Քոլեժ դը Ֆրանսի պրոֆեսոր Մորիս Ագյուլոնը ցուցանյութերի փոքրիկ առաջաբանում խոսելով հեղափոխության նշանակության մասին իր երկրի համար, գրում է. «Ֆրանսիական հեղափոխությունը չի ստեղծել ո՛չ Ֆրանսիան, ո՛չ ֆրանսիական պետությունը, ո՛չ ֆրանսիական հայրենասիրությունը, սակայն այն, ավելի, քան վերջին երկու հարյուրամյակի մնացած բոլոր իրադարձությունները, նպաստել է, որ դրանք ստանան այսօր մեզ հարազատ ձևերը: Այս ակներև փաստն էլ հիմնավորում է ու արդարացնում հեղափոխության 200-ամյակի տոնակատարությունը»: Այնուհետև պրոֆեսոր Ագյուլոնը նշում է, որ Ֆրանսիայի վարչական կառուցվածքը (հեղափոխությունը երկիրը բաժանեց դեպարտամենտների), նրա ազգային խորհրդանշանը (եռագույն դրոշակը), ազգային տոնը (հուլիսի 14-ը), հիմնը (Մարսելյոզը), նրա ծանոթ կերպարը՝ փռյուգիական գլխարկով կինը, որը մարմնավորում է ազատությունը, մի խոսքով՝ ողջ ֆրանսիական ժամանակակից և ամենուրեք ծանոթ սիմվոլիկան ավելի կամ պակաս չափով ուղղակիորեն սկիզբ է առնում հեղափոխությունից: Հեղափոխությունն է հռչակել Ֆրանսիայի «հիմնական բարոյական և իրավաբանական սկզբունքները՝ ազգի սուվերենությունը, ազատությունը, որը երաշխավորված է հնազանդությամբ օրենքին և պետության աշխարհիկ բնույթով, քաղաքացիների հավասարությունը ընդհուպ մինչև եղբայրություն, վերջինը թեև դժվար է ամրապնդել օրենսդրական կարգով, բայց առնվազն ներկայացված է իբրև գեղեցիկ իդեալ»:

Եթե այս սկզբունքները ներկայումս համընդհանուր ճանաչման են արժանացել, ապա երկուհարյուր տարի առաջ հանդիպում էին կատաղի դիմադրության: Մ. Ագյուլոնի կարծիքով, 1789 թվականը բացեց ներքին լարվածության մի ժամանակաշրջան, որը դեռևս լիովին չի մարել և ներկայիս քաղաքական կյանքի թե՛ լավ, թե՛ վատ կողմերը ֆրանսիացիները ժառանգել են այն ժամանակվա քաղաքական կյանքում ծագած ոճից: Առաջաբանի վերջում Ագյուլոնն անում է չափազանց խորիմաստ



դիտողություն, ասելով, որ հեղափոխության «1789 թվականի ուղերձի (մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան) համընդհանուր նշանակությունը և հանախ ռազմաշունչ խոյանքը, որով նա պետք է հանդերձավորեր իր պաշտպանությունը, այն ժամանակ ծառայել են կայսերապաշտական և զավթողական արտաքին քաղաքականությունն արդարացնելու նպատակին: Ուրիշ ժողովուրդները դժգոհ են մնացել այդ քաղաքականությունից, դիտել են իրենց որպես դրա զոհերը, բայց 1789 թվականի քաղաքական հումանիզմի դրոշը վերապրեց պատմության բոլոր ելևէջները: Հնարավոր է, որ վաղը այն դառնա Եվրոպայի դրոշը: Նա արդեն մի քանի այլ մեծ ժառանգությունների հետ նպաստել է մեր Միավորված ազգերի ծրագրի (հավանաբար նկատի ունի ՄԱԿ-ի կանոնադրությունը— Հ. Հ.) ձևավորմանը...» (1789, Exposition réalisée par intermedia I. A. F. A. A. Ministére des Aftaires Efrangères, Paris, 1988, p. 2):

Անշուշտ, Մ. Ագյուլոնը չափազանցում է: Ֆրանսիական մեծ հեղափոխությունից հետո անցած 200 տարիների ընթացքում Եվրոպայում և աշխարհում տեղի են ունեցել դարակազմիկ իրադարձություններ, այդ թվում «համաշխարհային պատմության բեկումնային իրադարձությունը»՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը (տե՛ս **ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 175):

Նոր քաղաքական մտածողությունը, որը, դժբախտաբար, առայժմ իր համար ավելի հեշտությամբ ճանապարհ է հարթում ԽՍՀՄ արտաքին, քան ներքին քաղաքականության մեջ, քամված է ողջ մարդկության պատմական փորձից: Նրանում ընդհանրացված են նաև անցյալի մեծ սոցիալական հեղափոխությունների դասերը: Այդ դասերն ապացուցում են, որ անցյալի հեղափոխություններում, մանավանդ ֆրանսիական մեծ հեղափոխության ժամանակ ամենագլխավորը և որոշիչը եղել են սոցիալական պրոբլեմները, որոնց շուրջը սրված դասակարգային պայքարը հասցրեց 1793-ի մայիսի 31-ի—հունիսի 2-ի ժողովրդական նոր ապստամբությանը և հակահեղափոխական ժիրոնդիստների վտարմանը Կոնվենտից: Իշխանության գլուխ անցած յակոբինյանների հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրան 1893 թվականին մշակեց, Էնգելսի բնութագրմամբ, ամենադեմոկրատական սահմանադրություններից մեկը, որը, սակայն, իրադարձությունների ընթացքը թույլ չտվեց գործադրել: Համենայն դեպս ագրարային օրենսդրությամբ գյուղացիներին հանձնվեցին համայնական և վտարանդիների հողերը, վերացվեցին ֆեոդալների իրավունքներն ու արտոնությունները: Այս միջոցառումները, դասերի վերացման ու քաղաքական այլ փոփոխությունների հետ միասին, ֆրանսիական մեծ հեղափոխությանը հաղորդեցին բուրժուադեմոկրատական բնույթ՝ դարձնելով պատմության ամենաարմատական հեղաշրջումներից մեկը: Ֆրանսիական մեծ հեղափոխության սոցիալական շեշտվածությունն այն կարևոր հանգամանքներից է, որոնք ընդգծում են նրա արդիական նշանակությունը: Այդ հեղափոխությունը Էնգելսի տեսանկյունից պայքար չէր այս կամ այն պետական ձևի համար: «Այն ժամանակվա ապստամբությունների մեծ մասի կապը սովի հետ,— գրել է Էնգելսը 1845 թ.,— արդեն 1789 թ. սկսած մայրաքաղաքի պարենային մատակարարման և եղած պաշարների բաշխման նշանակությունը, գների մաքսիմումի վերաբերյալ դեկրետները, կենսամթերքներ գնող-վաճառողների դեմ օրենքները, հեղափոխական բանակների մարտակոչը՝ «Պատերա՜զմ պալատներին, խաղաղությո՜ւն խրճիթներին», «Կարմանյոլայի» վկայությունը, ըստ որի հանրապետականը, du fér-ի և du coeur-ի հետ պետք է ունենա նաև du pain (զենքի և արիության հետ մեկտեղ նաև հաց—Հ. Հ.) և հարյուրավոր այլ ակներև փաստեր, նույնիսկ առանց հարցը խորապես ուսումնասիրելու էլ ցույց են տալիս, թե այն ժամանակվա դեմոկրատիան բոլորովին այլ բան էր, քան պարզապես քաղաքական կազմակերպություն: Հայտնի է նաև, որ 1793 թ. սահմանադրությունը և տեռորն այն կուսակցության գործն էին, որը հենվում էր ապստամբած պրոլետարիատի վրա, որ Ռոբեսպիերի զոհվելը բուրժուազիայի հաղթանակն էր պրոլետարիատի դեմ, որ Բաբյոֆը և նրա դավադրության մասնակիցները 1793 թ. դեմոկրատիայի գաղափարներից հավասարության վերաբերյալ արին այն ժամանակ հնարավոր ամենածայրահեղ հետևությունները: Ֆրանսիական հեղափոխությունը սկզբից մինչև վերջ սոցիալական շարժում էր, և նրանից հետո զուտ քաղաքական դեմոկրատիան դարձավ արդեն անհեթեթություն» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., **Երկեր,** հ. 2, էջ 664—665):

Որքան ուսանելի դասեր է թողել մեզ ֆրանսիական հեղափոխությունն իբրև սոցիալական շարժում: Այդ դասերը մեզ հուշում են վերակառուցման՝ իբրև հեղափո-

խության, ապագայի մասին խորհելիս հաշվի առնել, որ զուտ քաղաքական դեմոկրատիան առանց սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման անհեթեթություն է: Զուր չէ, որ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում ելույթների ճնշող մեծամասնության թեման երկրում տիրող սոցիալ-տնտեսական ճգնաժամն էր, ցածր կենսամակարդակը, սոցիալական անպաշտպանվածությունը, կենսաթոշակների ու նպաստների ցածր մակարդակը, աղքատության նշագծից ցածր կենսամակարդակով ապրողների (շուրջ 40 միլիոն) առկայությունը, անընդհատ խորացող պարենային պրոբլեմը: Սրանք անհապաղ լուծման կարոտ հարցեր են: Ուստի օրինաչափ է, որ համագումարում հնչեցին առաջարկներ և այլընտրական ծրագրեր (մասնավորապես տնտեսագետներ Ն. Շմելյովի և Գ. Պոպովի ելույթներում) երկիրը ծանր ճգնաժամի վիճակից դուրս բերելու համար, որոնք որքան էլ կոնստրուկտիվ լինեն, դժվար իրականալի են՝ կապված պետության արտակարգ բարդ ֆինանսական դրության և բյուջեի վիթխարի պակասորդի հետ:

Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ ճգնաժամային իրավիճակներից դուրս գալու համար հարկավոր է իսկական հեղափոխական, ուղղակի յակոբինյան քաղաքականություն:

Նա շեշտում էր, որ 1793 թ. յակոբինյանները պատմության մեջ մտան իբրև «ամբողջ պետական իշխանությունը իր ձեռքը վերցրած **աշխատավորների և կեղեքվածների դասակարգի** կողմից **շահագործող դասակարգի դեմ** մղվող իսկական հեղափոխական պայքարի մեծ օրինակ» (**ԵԼԺ,** հ. 32, էջ 380):

Այդ օրինակը ոչ միայն չի կորցրել իր նշանակությունը, այլև կարող է բարի ծառայություն մատուցել մեր օրերում: Խոսքը, անշուշտ, գիլյոտինի քաղաքականության մասին չէ, որն առիթ է տվել որոշ բուրժուական հետազոտողների անօրինաչափ զուգահեռներ անցկացնել Ռոբեսպիերի ու Ստալինի, յակոբինյան հեղափոխական դիկտատուրայի և ստալինյան բռնատիրության միջև: Սակայն յակոբինյանները գործում էին արտակարգ պայմաններում, երբ ներսից հեղափոխությանը սպառնում էր ներքին հակահեղափոխությունը, իսկ դրսից եվրոպական միապետների դաշինքը, որը զինված պայքար էր ծավալել հեղափոխությունը կործանելու համար: Ռոբեսպիերը, որը հանիրավի կիսամոռացված է և կիսահալածված նաև ֆրանսիական «դեմոկրատամետ» պատմագրության կողմից իբրև տեռորի քաղաքականության հեղինակ, համոզված, մոլեռանդ հեղափոխական էր, կրակոտ հռետոր և ինքնամոռաց քաղաքական գործիչ, որի համար, ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, «ժողովրդի թշնամիներ» էին նրանք, ովքեր օժանդակում էին «միավորված բռնակալների մտադրություններին՝ ուղղված հանրապետության դեմ» (նույն տեղը, էջ 379):

Մինչդեռ Ստալինը խաղաղ պայմաններում, առանց ներքին հակահեղափոխության, առանց վանդեայի և քաղաքացիական պատերազմի առկայության, «ժողովրդի թշնամի» հայտարարեց և ոչնչացրեց միլիոնավոր մարդկանց, այդ թվում նաև լենինյան գվարդիայի առավել ականավոր ներկայացուցիչներին՝ նրանց, ովքեր իրենց ուսերին էին կրել հեղափոխության, քաղաքացիական պատերազմի, վերականգնման և առաջին հնգամյակների տնտեսական շինարարության ծանրությունը: Սա իսկական հակահեղափոխություն էր և անհամեմատելի յակոբինյան հեղափոխության հետ: «Նա հեռու կգնա, նա հավատում է այն ամենին, ինչ ասում է»,— ասել է Միրաբոն Ռոբեսպիերի մասին, իսկ 27-ամյա յակոբինյան Սեն-Ժյուստն իր մահապատժի օրը Կոնսիերժերի պալատում, տեսնելով մեծ տախտակը, որի վրա գրանցված էր «Մարդու իրավունքների դեկլարացիան», սեփական արժանապատվության զգացումով նկատեց. «Եվ այնուամենայնիվ դա ստեղծել եմ ես»:

«Բուրժուազիային հատուկ է յակոբինությունն ատելը,— ասում էր Վ. Ի. Լենինը: — Մանր բուրժուազիային հատուկ է նրանից վախենալը: Գիտակից բանվորներն ու աշխատավորները հավատում են, որ իշխանությունն անցնելու է հեղափոխական, ճնշված դասակարգին, որովհետև դա է յակոբինության էությունը, ճգնաժամից դուրս գալու միակ ելքը, փրկությունը քայքայումից և պատերազմից» (նույն տեղը, էջ 461):

Ներկայումս, երբ դրված է ամբողջ իշխանությունը խորհուրդներին հանձնելու խնդիրը, որը, ի դեպ, ամբողջովին չլուծվեց ժողովրդական դեպուտատների համագումարում, իսկական ժողովրդապետության հասնելու համար անհրաժեշտ է անդրադառնալ ֆրանսիական մեծ հեղափոխության փորձին, յակոբինյանների օրինակին, որի մասին Վ. Ի. Լենինը 1917 թվականի հունիսին գրում էր իբրև ոչ հնացած, ուսանելի օրինակի, մատնանշելով, որ այն կիրառելի է XX դարի հեղափոխական դասա-



կարգի վերաբերմամբ: Բայց XX դարի «յակոբինյանները» կապիտալիստներին չէին գլխատի, քանզի լավ օրինակին նմանվելը պատճենում չի նշանակում, գրում էր Վ. Ի. Լենինը և ավելացնում. «Բավական կլիներ ձերբակալել բանկային կապիտալի 50—100 մագնատների և տուզերի, գանձագողության և բանկային թալանչիության գլխավոր ասպետներին. բավական կլիներ մի քանի շաբաթով ձերբակալել նրանց, **որպեսզի բացահայտ դառնան նրանց արարքները,** որպեսզի բոլոր շահագործողներին ցույց տրվի, թե «ում է հարկավոր պատերազմը»: Բացահայտ դարձնելով բանկային արքաների արարքները, նրանց կարելի էր բաց թողնել, բանվորների վերահսկողությանը ենթարկելով կապիտալիստների թե՛ բանկերը, թե՛ սինդիկատները, թե՛ գանձարանի համար «աշխատող» բոլոր կապալառուներին» (նույն տեղը, էջ 380):

Այսպես շատ բարձր գնահատելով յակոբինյանների իշխանությունն իբրև ֆրանսիական հեղափոխության գագաթնակետ, Վ. Ի. Լենինը պարտադիր չէր համարում պայքարի նրանց մեթոդներն ընդօրինակելը, նկատի ունենալով տեռորի քաղաքականությունը, թեև կյանքում ստացվեց այլ բան: Բայց ֆրանսիական մեծ հեղափոխության արդիական նշանակությունն ընդգրկում է այդ իրադարձության ոչ միայն ուսանելի, դրական, այլև ստվերոտ, մերժելի կողմերը:

XVIII դարի ֆրանսիական մեծ հեղափոխության արդիական նշանակությունը կապված է նրա՝ որպես ինտելեկտուալ, գաղափարապես նախապատրաստված հեղափոխության, էության հետ: Հեղափոխության կարգախոսների, ընդունած փաստաթղթերի, գործիչների ելույթների ու ճառերի մեջ առկա է ժամանակի ամենաառաջադեմ գիտական մտքի շունչը՝ իհարկե թե՛ այդ մտքին, թե՛ բուն հեղափոխությանը, նրանում հասարակության տարբեր խավերին, հետևաբար և տարբեր սոցիալական շահեր ներկայացնող հոսանքներին հատուկ տարբերություններով ու հակասականությամբ: Վիկտոր Հյուգոն Վոլտերի 100-ամյակի առթիվ արտասանած ճառում ֆրանսիական մեծ հեղափոխությունն անվանել է XVIII դարի լուսավորիչների ոգու արտահայտությունը, ասելով, որ Դիդրոյի հետևում Դանտոնն էր, Ռուսոյի հետևում Ռոբեսպիերը, Վոլտերի հետևում՝ Միրաբոն, որ առաջինները ստեղծեցին երկրորդներին:

Որևէ հեղափոխության գաղափարախոսական, տեսական նախապատրաստությունը կենսական նշանակության հարց է, որը կարող է լուծվել մտքի ազատ շարժման, տեսակետների բախումների, այլընտրանքների ստեղծման շնորհիվ: Եթե հեղափոխությանը, իշխանությունների մինչև իսկ ծայրահեղ պահպանողականության պայմաններում, չի նախորդում այդպիսի նախապատրաստություն, ապա նա ընթանում է խիստ հիվանդագին, խարխափելով սեփական անորոշության մեջ, որը բազմապատկում է հակահեղափոխության հնարավորությունները:

Հայտնի է, որ այլախոհությունը բացարձակապես բացառված է եղել ստալինականության տասնամյակներին և խիստ հալածված լճացման տարիներին: Եվ արդյոք մտքի ազատության բացակայությունը չէ՞ պատճառը, որ վերակառուցումը զգալի չափով խարխափում է, ընթացքից փորձում գտնել իր խնդիրների լուծման գիտականորեն հիմնավորված ուղիներ ու միջոցներ, թեև անցյալի ավանդույթները և վարչահրամայական բյուրոկրատական ապարատի դեռևս չհաղթահարված ուժը հաճախ ի չիք են դարձնում այս ուղղությամբ գործադրվող ջանքերը: Վերակառուցման՝ որպես հեղափոխության, տեսականորեն, գաղափարապես նախապատրաստված չլինելը կարելի էր փոխհատուցել հիմա: Սակայն, ինչպես ցույց տվեց ժողովրդական դեպուտատների համագումարը, վերակառուցման չորրորդ տարում անխոհեմորեն մերժվեց երկրում կուտակված վիթխարի ինտելեկտուալ պոտենցիալը լիարժեք ձևով օգտագործելու հնարավորությունը, թերևս նրա այլախոհական, այլընտրական բնույթի պատճառով: Մինչդեռ հենց այլընտրական մոտեցումները երկրում տիրող ճգնաժամային իրավիճակին (տնտեսական դրությունից մինչև ազգամիջյան հարաբերությունների հարցը) քարացած, պաշտոնապես կաղապարված մտածողության կապանքներից ազատագրված այդ ինտելեկտուալ պոտենցիալի առավելություններն են, որով չափվում է նրա օգտակարության գործակիցը: Պատմությունն իր առաջընթացի համար պարտական է ըմբոստ, անհանգիստ, համարձակ, պրպտող նորարար մտքերին, ինչպիսին էր ֆրանսիական մեծ հեղափոխությունը նախապատրաստած XVIII դարի մատերիալիստ փիլիսոփաների մտածողությունը, որը եվրոպական քաղաքակրթությունը բարձրացրեց որակապես նոր աստիճանի:

Արդիականության համար շատ ուսանելի դասեր է պարունակում նաև ֆրանսիական մեծ հեղափոխության արտաքին քաղաքականությունը: Իհարկե, այն միա-

նշանակ չի եղել հեղափոխության տարբեր փուլերում: Արտաքին քաղաքականության հարցերում ժիրոնդիստներին և յակոբինյաններին բաժանել են սկզբունքային տարաձայնություններ: Այդ հարցերում տարակարծություններ եղել են նաև յակոբինյանների տարբեր հոսանքների՝ Դանտոնի, Էբերի և Ռոբեսպիերի կողմնակիցների միջև: Սակայն այն, ինչ ունի արդիական նշանակություն, կապված է 1793 թվականի յակոբինյան սահմանադրության և յակոբինյանների արտաքին քաղաքական գործունեության հետ, որտեղ հեղափոխական վճռականությունը հմտորեն զուգակցվում էր քաղաքական իրապաշտության, բանական զսպվածության և շրջահայաց չափավորության հետ: Հեղափոխության այդ ամենակարևոր փաստաթղթերից մեկում ասված էր, որ Ֆրանսիան չի միջամտում ուրիշ ժողովուրդների կառավարման ձևերին, բայց և բացառում է միջամտություններն իր գործերին: Ֆրանսիան ապաստան էր տրամադրում ազատության համար մարտնչողներին, բայց այդ հարցում մերժում էր բռնակալներին, հաշտություն չէր կնքում իր տարածքը զավթած թշնամիների հետ:

Ինչպես արդեն ասվեց, 1793 թ. սահմանադրությունը գործողության մեջ չմըտցըվեց: Բայց Ռոբեսպիերն իր արտաքին քաղաքական գործունեության մեջ փաստորեն ելնում էր սահմանադրության դրույթներից: Նա ժխտում էր Ֆրանսիայի սահմաններից դուրս ողջ Եվրոպայի դեմ պատերազմ մղելու էբերականների պահանջը, բայց և ժխտում էր անձնատուր լինելու գնով հաշտություն հայցելու դանտոնականների առաջարկը:

Հայտնի է, որ ծայրահեղ յակոբինականներ Էբերը և Շոմետը դեմ էին դիվանագիտությանը և գերադասում էին զինված հեղափոխական պրոպագանդան՝ Եվրոպայում միապետական-ֆեոդալական կարգերը տապալելու հույսով: Նրանք մինչև իսկ դեմ էին արտաքին առևտրին՝ գտնելով, որ հեղափոխական Ֆրանսիան իր համար անհրաժեշտ պարենը չպետք է ներմուծի արտասահմանից և պետք է ձեռք բերի երկրի ներսում՝ բռնագրավումների ու տեռորի միջոցով: Շոմետը շուտով հրաժարվեց իր տեսակետից: Սակայն Էբերը Պ կոսմոպոլիտ-օտարական քաղաքական վտարանդիները Կլոոցի գլխավորությամբ պահանջում էին հեղափոխական պատերազմ ողջ Եվրոպայի դեմ՝ բացարձակ միապետությունները տապալելու և համաշխարհային ֆեդերատիվ «Մարդկային ցեղի հանրապետություն» հաստատելու համար:

Հասարակական փրկության կոմիտեն Ռոբեսպիերի գլխավորությամբ վճռական պայքար ծավալեց այս վտանգավոր և արկածախնդրական քաղաքական գծի դեմ: Արտաքին քաղաքականության մեջ Ռոբեսպիերը վճռաբար մերժեց երկու ծայրահեղություններն էլ. դանտոնականների՝ կապիտուլյացիայի գնով հաշտության հասնելու առաջարկը և էբերականների՝ հանուն Եվրոպայի ազատագրման հեղափոխական պատերազմ մղելու պահանջը: Ռոբեսպիերն այն կարծիքին էր, որ հեղափոխության դիվանագիտության հիմքում պետք է ընկած լինեն արդարության, շիտակության և օրինականության սկզբունքները:

Ավելորդ է ասել, որ նման մոտեցումը ավելի քան արդիական է, քանզի սեփական անվտանգությունն ուրիշի անվտանգության հաշվին կառուցելու քաղաքականությունը հղի է լուրջ հետևանքներով ողջ մարդկության համար: Ի հակակշիռ Ֆրանսիայի թշնամիների, Ռոբեսպիերը ձգտում էր Եվրոպայի փոքր տերությունների դաշինք ստեղծել, սակայն ոչ հակառակ նրանց ազատորեն արտահայտված կամքի, կտրականապես մերժելով այս հարցում հարկադրանքը և նվաճողական պատերազմները: Նա ձգտում էր ազատագրել Ֆրանսիան զավթիչներից, բայց դեմ էր Ֆրանսիայից դուրս արհեստական միջոցներով հեղափոխություններ հրահրելուն: Ռոբեսպիերը մտածում էր պարենի հարցը լուծել նորմալ առևտրական հարաբերությունների ու ներմուծման միջոցով:

Երկրի ներսում անզիջում պայքարը հակահեղափոխության դեմ, ֆեոդալական հարաբերությունների լիակատար վերացումը գյուղում խանդավառեցին գյուղացիներին, թույլ տալով համալրել Ֆրանսիայի հեղափոխական բանակը և բարձրացնել նրա բարոյական ոգին ու մարտունակությունը: Սակայն Ռոբեսպիերին լիովին բավարարում էր Ֆրանսիայի ազատագրումը և նա դեմ էր հակաֆրանսիական դաշինքի նկատմամբ ձեռք բերված ռազմական գերակշռությունն օգտագործել երկրի սահմաններից դուրս պատերազմներ մղելու համար: Նա քաջ գիտակցում էր, որ հեղափոխության դրոշով մղված այդպիսի պատերազմները հեշտությամբ կվերածվեն զավթողական պատերազմների, որոնց ձգտում էին ֆրանսիական բուրժուազիան և նրա շահերի արտահայտիչ ժիրոնդիստները՝ շուկաներ ձեռք բերելու միտումով:



Պատահական չէ, որ ժիրոնդիստները կարևոր դեր խաղացին թերմիդորի 9-ի հեղաշրջման կազմակերպման, իրականացման գործում և դրանից հետո ստեղծված հակահեղափոխական իշխանության մեջ:

Թերմիդորյան հակահեղափոխության մեջ քիչ նշանակություն չունեցան նաև արտաքին քաղաքականության խնդիրները: Իսկ Նապոլեոնի օրինակը ցույց տվեց, թե որքան արդարացված էր Ռոբեսպիերի վախը հեղափոխական բանակը բռնագրավիչ ուժի վերածելու և հանուն հեղափոխության պաշտպանության պատերազմները զավթողական պատերազմների վերածելու հեռանկարի առթիվ:

Իր ամբողջ դասակարգային սահմանափակությամբ հանդերձ ֆրանսիական մեծ հեղափոխությունը հատկապես յակոբինյանների կառավարման օրոք, մշակեց և կիրառեց ազգի սուվերենության գաղափարի վրա հիմնված արտաքին քաղաքական մինգամայն նոր սկզբունքներ, որ դեռևս 1776 թվականին հռչակել էր ամերիկյան հեղափոխությունը և որոնք հետագայում մտան միջազգային իրավունքի մեջ և առ այսօր չեն կորցրել իրենց կենսականությունը: Դրանցից առանձնապես արդիական են ուրիշի ներքին գործերին չմիջամտելու, զավթողական պատերազմները մերժելու, ժողովուրդների կողմից իրենց կամքն ազատորեն արտահայտելու իրավունքի, պետությունների միջև նորմալ կապերի և առևտրական համագործակցության յակոբինյան սկզբունքները, որոնք, թեև դասակարգային կեղևի մեջ էին ներփակված, բայց այսօր ապացուցում են իրենց համամարդկային և անանց նշանակությունը:

Հետաքրքրական է նշել, որ Ռոբեսպիերը որպես հեղափոխական Ֆրանսիայի գլխավոր թշնամի համարում էր ոչ թե եվրոպական միապետություններին, այլ նրանց հետ հակաֆրանսիական դաշինքի մեջ մտած կապիտալիստական Անգլիային, որն ի դեմս բուրժուական Ֆրանսիայի տեսնելով վտանգավոր մրցակցի, գերադասում էր օրորոցում խեղդել հեղափոխական նորելուկին:

Ե՛վ թույլ չտալով, որ հաղթապանծ հեղափոխական բանակներն անցնեն Ֆրանսիայի սահմաններից այն կողմ, և՛ դեմ լինելով ուրիշ երկրներում հեղափոխություններ հրահրելուն, Ռոբեսպիերը փաստորեն հանդես էր գալիս խաղաղ գոյակցության օգտին, գաղափար, որը նյութականացվում է մեր օրերում:

Ֆրանսիական մեծ հեղափոխության թողած առավել նշանակալից և իր արդիական նշանակությամբ ամենակարևոր փաստաթուղթը 1789 թվականի օգոստոսի 20—26-ին Ազգային ժողովի ընդունած «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան» է, որը հռչակում էր մարդկանց իրավահավասարությունը և ազատ ապրելու իրավունքը՝ անկախ սոցիալական տարբերություններից: Դեկլարացիան հասարակության նպատակը հռչակում էր «համընդհանուր երջանկությունը»՝ համոզմունք հայտնելով, որ մարդն ունի սեփականությանը տիրելու, ուզած կրոնը դավանելու, իր մտքերն ազատորեն արտահայտելու, գրելու և տպագրելու, օրենքով պաշտպանված լինելու իրավունքը: Այն հաստատում էր անմեղության կանխավարկածը և գտնում, որ միայն դատարանը կարող է հաստատել մարդու մեղսագործության աստիճանը և համապատասխան պատժաչափ որոշել դրա համար: Դեկլարացիան երաշխավորում էր մարդու և քաղաքացու իրավունքները, բայց միաժամանակ շեշտում պատասխանատվությունն օրենքի առջև և հասարակության շահերի առաջնությունը: Դեկլարացիան հարցականի տակ էր դնում ստրկությունը և գաղութատիրության օրինականությունը:

Ի տարբերություն ամերիկյան «Անկախության դեկլարացիայի», որտեղ մարդը և նրա իրավունքները համարվում էին ի վերուստ, Արարչի կողմից տրված, ֆրանսիական մեծ հեղափոխության փաստաթուղթը մարդու իրավունքները համարում էր բնական և անկապտելի, քանզի գրված էր XVIII դարի լուսավորիչ—աթեիստների ուսմունքի ազդեցությամբ:

Թերևս «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիան» ֆրանսիական մեծ հեղափոխության թողած ամենախոր հետքն է պատմության մեջ: Նրա հիմնական դրույթները հետագայում այս կամ այն չափով, զանազան խմբագրություններով ու տարբերակներով արտացոլվել են բուրժուադեմոկրատական սահմանադրություններում: Դրա օրինակով, սակայն պրոլետարիատի հեղափոխական ըմբռնումների դիրքերից, Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո հռչակվեց Վ. Ի. Լենինի գրած «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան»: Ֆրանսիական մեծ հեղափոխության փաստաթղթի վերը նշված դրույթները կարելի է գտնել ՄԱԿ-ի 1948 թվականի դեկտեմբերի 10-ի «Մարդու իրավունքների համընդհանուր դեկլարացիայում», որի առաջին իսկ հոդվածն այդ փաս-

տաթղթի օրինակով հաստատում է, որ «բոլոր մարդիկ ծնվում են իրենց իրավունքներով ու արժանապատվությամբ ազատ և հավասար: Նրանք օժտված են բանականությամբ ու խղճով և միմյանց նկատմամբ պետք է վարվեն եղբայրության ոգով»: ՄԱԿ-ի փաստաթուղթն էլ իր հերթին ելակետ ծառայեց 1989 թ. հունվարի 19-ին Վիեննայում ընդունված «Ամփոփիչ փաստաթղթի» համար, որի տակ դրված են Եվրոպայի 33 երկրների, այդ թվում նաև ԽՍՀՄ-ի, ինչպես նաև ԱՄՆ-ի ու Կանադայի ներկայացուցիչների ստորագրությունները: «Ամփոփիչ փաստաթղթում» մարդու իրավունքները և ազատությունները, որոնք հռչակվել են դեռևս 200 տարի առաջ ֆրանսիական մեծ հեղափոխության կողմից, ճանաչված են իբրև համամարդկային արժեքներ, որոնց պահպանումը և հարգումը դիտվում է իբրև պետությունների նորմալ հարաբերությունների և համակողմանի համագործակցության անհրաժեշտ գործոն:

●

Երկու դարը պատմական առումով բավականաչափ ժամանակամիջոց է, որպեսզի այս կամ այն իրադարձությունն ապացուցի իր դարակազմիկ նշանակությունն ապագայի համար և մարդկությանը թողած իր արժեքների ու դասերի ուսանելիությունն ու օգտակարությունը: Երկուհարյուրամյա բարձունքից հետադարձ հայացք ձգելով XVIII դարի ֆրանսիական բուրժուական մեծ հեղափոխությունից հետո պատմության անցած ուղու վրա և մարդկության առջև ծառացած արդիական խնդիրներին համադրելով այդ հեղափոխության տեսությունն ու պրակտիկան, մենք լիիրավ ենք ասելու, որ ֆրանսիական մեծ հեղափոխությունը կատարել է պատմության լոկոմոտիվի խնդիրը: Նրա կարգախոսները, որոնք դասակարգային անողոք իրականության պատճառով այն ժամանակ հնչում էին իբրև գեղեցիկ իդեալ, արդիականության պայմաններում, երբ համամարդկայինը դառնում է առաջնային դասակարգայինի նկատմամբ, ստանում են նոր հնչեղություն և գործնական արժեք:

---



# ԿՍՏԵՂԾՎԻ ՆՈՐ ՍՊԻՏԱԿԻ ԼՈՒՍԵՂԵՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

## ՕԳՆՈՂ ՁԵՌՔԵՐ

Սկսվել է նոր Սպիտակի պատմությունը. հիմքը դրվեց արհավիրքի օրերին և դրվեց շատ ամուր, մարդկային պատմության մեջ չտեսնված ամուր: Բարեկամությունը՝ ահա այդ հիմքի շաղախը: Ապշած աշխարհի աչքի առջև՝ աշխարհը հեղեղվել էր այստեղ: Վրացերեն էին խոսում փլատակներում աշխատողները, խեղվածներին օգնող բժիշկները, հաց ու հագուստ բաժանողները, ճանապարհներին խցանված ավտոմեքենաների, ավտոկռունկների, էքսկավատորների վարորդները: Հետո վրացերենին զուգահեռ հնչեցին ռուսերենը, էստոներենը, լատիշերենը, ուկրաիներենը, ուզբեկերենը... Խորհրդային ժողովուրդների լեզուներին խառնվել էին իտալերենը, անգլերենը, ֆրանսերենը, գերմաներենը... Նոր Բաբելոն էր Սպիտակը: Բայց այդքան լեզուները ոչ թե իրար հակադրվելու, այլ միմյանց ձուլվելու էին եկել, և նաև ձուլելու նոր Սպիտակի պատմության հիմքը:

Երկրաշարժից ամիսներ են անցել: Կուսշրջկոմի գաղափարախոսական բաժնի վարիչ Մանվել Օհանյանի հետ մի խումբ լրագրողներ շրջում ենք գյուղերը: Ամենուր փլատակների մաքրում, նոր տների հիմնադրում, ճանապարհների, ֆերմաների վերականգնում, բարեկարգում: Այնքա՜ն շատ են անելիքները: Գիտեինք, և Մանվել Օհանյանն էլ վերստին պատմեց խորհրդային մարդկանց և օտարների օգնության մասին: Պահանջեց, որ «օտար» բառը գոնե աղետի վայրերում չօգտագործվի: Մեզ միասնական սովորեցրել՝ ով կարմիր գծից դուրս է, օտար է, թշնամի: Շատ էին մերձեցել նաև մերոնք՝ սփյուռքահայերը: Ղարաբաղյան շարժումը սթափեցրել էր բոլորիս, զարթեցրել հայրենասիրական զգացմունքներ, իսկ ծանր աղետը մեզ էլ ավելի մերձեցրեց:

— Վրանիս դուռը գիշերը ծեծեցին ու ներս մտան անծանոթ մարդիկ՝ մազոտ դեմքով,— պատմում է Մ. Օհանյանը:— Նրանք փայտ էին բերել, հաց, եփած միս: Ապշել էինք: Այդ ովքեր են, որ գիշերվա կեսին օգնության հասան ցրտից ու վշտից կուչ եկած սպիտակցիներիս: «Ղարաբաղցի ենք»,— ասացին ու լաց եղան: Տասն ամիս մենք գիշեր-ցերեկ նրանց պայքարի հետ էինք՝ գործադուլներ, հոգեկան լարվածություն, ուզում էինք ինչ-որ բանով օգնել նրանց: Բայց այնպես ստացվեց, որ իրենք եկան օգնության: Լուսաբացին իմացա, որ ղարաբաղցիները գիշերը փայտ ու սնունդ են տարել բոլոր վրանները: Հետո պարզվեց, որ նման ձևով օգնել են Լենինականին, Կիրովականին, Ստեփանավանին:

Կառուցվող, ապաքինվող Սպիտակի մասին խոսելիս, չենք կարող չանդրադառնալ սարսափի առաջին օրերին: Պետք է հիշել, որ այդ արյունամած մղձավանջի մեջ էլ փոխվեց մեր կյանքի հավատը:

Հանրապետական հիվանդանոցում էի դեկտեմբերի 7-ի գիշերը: Շտապօգնության մեքենաների, վիրավորների, բազմալեզու բժիշկների, իրար խառնված այդ քաոսի մեջ մարդկային բազմություն էր հերթի կանգնած. եկել էին արյուն հանձ-

ԴԱՆԻԵԼՅԱՆ ՄԱՎՐ ՍԻՐԱԿԱՆԻ— ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ

նելու: Դեկտեմբերի 8-ի առավոտյան արյան փոխներարկման ինստիտուտի աշխատողները չէին կարողանում ոտքի վրա մնալ: Ամբողջ գիշեր 1500 մարդուց արյուն էին վերցրել, շատերը արյուն հանձնելուց հետո նորից հերթի էին կանգնում: Լցվել էին արյան պահեստավորման բոլոր տարողությունները, բայց փողոցում հերթի կանգնած բազմությանը մարդկանց նոր խմբեր էին ավելանում:

Սպիտակի մեծ աղետի պատմության մեջ անմոռաց կմնան ապարանցիները, հատկապես կուսշրջկոմը և նրա առաջին քարտուղար Թամարա Ալոյանը: Երկրաշարժից կես ժամ անց Սպիտակից վերադարձող վարորդները սարսափած մտնում են նրա առանձնասենյակը:

— Սպիտակը չկա՜, Սպիտակը կործանվե՜լ է...

Թ. Ալոյանը շփոթվում է, չի ուզում հավատալ լսածին: Գրեթե վազելով մտնում են նոր մարդիկ, հայտնում նույն լուրը: Կուսշրջկոմի առաջին քարտուղարը այդ մասին իրազեկ է պահում Հայաստանի կոմկուսի Կենտկոմին, հանրապետության կառավարությանը՝ Սպիտակը չկա... Ապա հաղթահարելով օրհասի ապրումները, նա զանգում է շրջանի բոլոր տնտեսությունների, ձեռնարկությունների, կուսկազմակերպությունների ղեկավարներին.

— Որքան ավտոմեքենա, ավտոկռունկ կա, որքան մեխանիզմ, մարդկային ուժ՝ բոլորը դեպի Սպիտակ:

Դուրս է գալիս ավտոմայրուղի, անցնող ու դարձող բոլոր ավտոմեքենաները շրջում դեպի Սպիտակ:

Մեկ ժամ հետո ամբողջ թափով սկսվում է ապարանցիների օգնությունը: Մինչև երեկո նրանք հազարավոր մարդիկ են հանում փլատակներից: Հետո սկսում է վիրավորների, խեղվածների հոսքը Ապարանով դեպի Երևան: Առաջին օգնությունը պետք է կազմակերպել հենց այստեղ՝ շրջկենտրոնի հրապարակում: Այստեղ կենտրոնացվում են շրջանի բոլոր բուժաշխատողները, սկսում են գործել բացօթյա կարինետները, դեղորայքի կրպակները: Այստեղ էին առանձնացնում ողջերին ու ճաքինետները, դեղորայքի կրպակները: Այստեղ էին առանձնացնում ողջերին ու ճանապարհին մահացածներին: Արնաքամ եղածներին արյուն էին ներարկում: Երևանից արյուն բերելու հարկ չկար, մարդիկ պատրաստակամ արյուն էին տալիս:

Թամարա Ալոյանը կենտրոնական հրապարակ հանեց իր գրասեղանը, հեռախոսը, կուսշրջկոմի, շրջխորհրդի ապարատների աշխատողներին: Դեկտեմբերի 8-ի լուսաբացից կազմակերպվեց տաք ճաշի մատակարարումը, այստեղ բերվեցին խանութներում եղած բոլոր մթերքը, հագուստեղենը: Այդ օրերին աղետյալներին օգնեցին՝ ով ինչով կարող էր: Դժվար է նկարագրել ապարանցիների թափած ջանքերը. որքա՜ն մարդ փրկվեց նրանց շնորհիվ: Եվ այսօր, երբ ամեն ինչ հետևում է մնացել, և ի մի են բերում արածն ու չարածը, հիշատակում են անձնուրաց մարդկանց, բոլորը նրանց շարքում առաջինը տալիս են ապարանցիների փրկարարական աշխատանքների կազմակերպիչ Թամարա Ալոյանի անունը...

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Կուսակցության Սպիտակի շրջկոմում ասում են, որ կազմակերպչական աշխատանքները սկսվել են առաջին օրերից: Դրան ես չեմ կարողանում հավատալ: Հիշում եմ երկրաշարժի երկրորդ օրը. ի՞նչ էր կատարվում: Սպիտակ տանող ճանապարհի երկու կողմերի հարթություններում հարյուրավոր ավտոկռունկներ, բուլդոզերներ, բեռնատարներ էին կանգնած: Դրանք այստեղ են հասցվել երկրի տարբեր ծայրերից, արտասահմանից, և ահա մեկ-երկու կիլոմետր հեռավորության վրա օրերով կանգնում էին, հնարավոր չէր առաջ շարժվել: Երևանի գործարաններից, բուհերից հազարավոր երիտասարդներ էին ոտքով հասել այստեղ և, խմբված փլատակների շուրջը, չէին իմանում ինչպես և ինչով օգնեն:

— Այո՛, այդպես էր,— ասում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Նորայր Մուրադյանը,— ղեկավարներից շատերը մնացել էին փլատակներում, կային զոհեր, ծանր վիրավորներ: Դժվար էր ողջ մնացած ղեկավարներին մի տեղ հավաքել և որտե՞ղ հավաքել, փլվել էին թե՛ նրանց տները, թե՛ կուսշրջկոմի, շրջխորհրդի գործկոմի շենքերը: Ողջ մնացածներն իրենք պետք է հանդես բերեին անձնական նախաձեռնություն: Ահա այստեղ է, որ ճանաչվեցին կարող, բարդ ու ողբերգական իրավիճակում կողմնորոշվող մարդիկ:

Երկրաշարժի պահին Ն. Մուրադյանը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում նոր էր հաստատվում կուսշրջկոմի առաջին քարտուղարի պաշտոնում: Եվ



հաստատվեց: Աղետից մեկ ժամ անց տեղ հասավ, նայեց ավերված, սոդոմ-գոմոր Սպիտակին, որի հոգսերը մեծավ մասամբ ընկած են լինելու իր ուսերին...

... Ինչից սկսել: Նախ պետք է սթափվեր, զգաստանար և ամբողջանար կուսակցության շրջանային կոմիտեն: Զոհվել էին կոմիտեի անդամներ ու անդամության թեկնածուներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ, հիմնարկ-ձեռնարկությունների, սնտեսությունների ղեկավարներ, իսկ շատերին ծանր վիճակում տեղափոխել էին: Ուշ սթափվեցին: Երկրաշարժից մեկ ամիս հետո միայն տեղի ունեցավ կուսշրջկոմի պլենումը, որը պետք է նոր մարդկանցով ամբողջացներ շրջկոմի կազմը: Նորերն առաջադրելը դժվար չէր: Սովորական պայմաններում պետք է նշվեին նրանց ծառայությունները, արժանիքները՝ որպես կոմունիստի, որպես մարդու, քննարկեին, բանավիճեին: Իսկ հիմա ամեն ինչ բոլորի համար պարզ էր: Մարդկանց հոգում, ապրելակերպում, աշխատանքում ինչ անհայտ էր մնում տարիների ընթացքում, դրսևորվեց մեկ ամսում, ավելին՝ առաջին մի քանի օրում:

— Շատ բան միանգամից փոխվեց,— ասում է Ն. Մուրադյանը,— մարդկանց ճանաչում էի տասնյակ տարիների համատեղ աշխատանքում, բայց մի քանի ակնթարթում պարզվեց, որ սխալվել եմ: Հանդիմանել եմ մանր զանցանքների համար, իսկ երբ կյանքի ու մահու հարցերն էին ծառացած, վայրկյաններում աչքիս առջև հերոսացան, մաքրագործվեցին:

Այսօր էլ միշտ մարդաշատ է այն վագոն-տնակների շրջապատը, ուր տեղավորված են կուսշրջկոմը և շրջխորհրդի գործկոմը: Այստեղ են գալիս տեղացիներ, տարբեր վայրերից եկած շինարարները: Ու նրանք ունեն հազար ու մի հուզող հարցեր, որոնցից շատերը լուծվում են հենց տեղում՝ բացօթյա: Այդ խմբերի կենտրոնում գրեթե միշտ Պ. Ասատրյանն է՝ կուսշրջկոմի նորընտիր քարտուղարը: Մինչ այդ եղել է խոշոր եղջերավոր անասունների մատղաշների աճեցման միջտնտեսային ձեռնարկության դիրեկտորը: Դժվար աշխատանք էր, բայց հիմա ուրիշ է, հիմա հարցերը շատ են ու բազմազան և բոլորը չէ, որ պետք է քննարկվեն շրջանային շտաբի նիստերում, այլապես դրանք վերջ չեն ունենա:

— Դիմեք ընկեր Ասատրյանին, նա տեղում կլուծի,— իրար խորհուրդ են տալիս շինարարները:

Ընդունարանում հերթի սպասելու հարկ չկա, նա միշտ այստեղ է, մարդկանց բազմության մեջ:

Կազմակերպչական տաղանդ: Շատ սակավ գործածվող այս բնութագիրը Պ. Ասատրյանը վաստակեց փրկարարական աշխատանքների առաջին օրերի քաոսի մեջ: Նա էր հանձնարարություններ տալիս օտարերկրյա փրկարարներին, հախուռն ու ինքնամոռաց օգնության եկած հազարավոր երիտասարդներին, հույս էր ներշնչում հարազատներին կորցրած, շփոթված մարդկանց, խմբեր էր կազմում և ուղարկում այս կամ այն փլատակների մոտ:

Միայն անուն-ազգանունը հայտնելը բավական էր, որ կուսշրջկոմի պլենումը նրան ընտրեր շրջկոմի քարտուղար և բյուրոյի անդամ:

Այժմ մարդիկ սգում են իրենց կորուստները: Շա՜տ են նրանք, չափազանց շա՜տ: Բայց ավելին կլինեին, եթե այդ ծանր պայմաններում ճիշտ և արագ չգործեր ժողկրթբաժնի վարիչ Ալբերտ Կյուրեղյանը: Նա պլենումում ընտրվեց բյուրոյի անդամ և հաստատվեց շրջանային թերթի խմբագրի պաշտոնում: Սուգ, աղեկտուր ճիչեր էին փլված դպրոցների ու մանկապարտեզների շուրջը: Ոչ ոգևորելու, ոչ էլ վիշտը կիսելու տեղ էր: Այդ քառերը կորցրել էին իրենց նախնական իմաստը:

— Ողբալու ժամանակ կունենանք,— ասում էր Կյուրեղյանը,— հիմա փրկեցեք՝ որքան կարող եք արագ, լացի ժամանակ կունենանք:

Ամիսներ են անցել, հազար անգամ խոսվել է, բայց դեռ բառեր չեմ գտնում սպառիչ բնութագրելու Ֆահրադ Կարապետյանի գործունեությունը: Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու է, եղել է հողագիտության և ագրոքիմիայի ինստիտուտի հենակետի վարիչը, իսկ պլենումից հետո՝ կուսշրջկոմի ընդհանուր բաժնի վարիչ: Ծանր օրերին նա էր կազմակերպում աշխատանքների բաշխումը օգնության եկածների միջև: Արագ լեզու էր գտնում բազմալեզու մարդկանց հետ: Ոչ քնելու ժամանակ ուներ, ոչ էլ տեղ: Եվ ու՞մ քունը կտաներ: Գալիս էր ցավակցական հեռագրերի ու նամակների հեղեղ, քնելու հաշվին պատասխանում էր դրանց բոլորին:

Կուսշրջկոմի առաջին քարտուղար Ն. Մուրադյանը էլի կոմունիստների անուններ է թվարկում՝ Հովհաննես Գրիգորյան, Սմբատ Թովմասյան, Մանվել Օհան-

յան, Թամարա Դավթյան, Կորյուն Զաքարյան, Նորիկ Դանիելյան, Քաջիկ Մանուկյան...

— Ովքե՞ր են նրանք, ինչո՞վ աչքի ընկան:

— Աչքի ընկնելու միայն մեկ գործ կար,— ասում է Ն. Մուրադյանը,— փրկել՝ որքան կարելի է շուտ, որքան կարելի է շատ:— Իրենց հարազատների թաղմանն իսկ չկարողացան մասնակցել:

Հարազատների թաղմանը չմասնակցել... Սովորաբար այդպիսի մարդկանց դատապարտում են, պարսավում: Այստեղ ուրիշ էր: Այդ նախճիրի մեջ պետք էր ճիշտ որոշում ընդունել րոպեների ընթացքում, րոպեներ, երբ կողքիդ ավերված տունդ է, աչքիդ առջև՝ հարազատներիդ դիակները... Իսկ չորս կողմը փլատակների տակ մեռնող մարդիկ փրկություն են աղերսում:

## ԾԻԾԵՌՆԱԿԸ ԲՈՒՅՆ Է ՇԻՆՈՒՄ

Հիմա սպիտակցիները չգիտեն՝ իրենց ստեղծա՞ծն է երազ եղել, թե՞ աշխարհակործան արհավիրքը, ծանր, հոգեցունց, երազ, որից ամիսներ անց էլ չեն սթափվում:

Հիմա այսպես է՝ մոռացում... միայն աշխատանքում, այնպիսի աշխատանքում, որ դադար չլինի, մտածելու, հիշելու ժամանակ չլինի: Ելքը միայն դրանում է տեսնում շրջանային շտաբը, որը ղեկավարում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Ն. Մուրադյանը:

Հիմա տներ են կառուցում: Ով գիտե՝ որ դարի աղետներից մինչև այս աղետը կամուրջ է ձգում հին երգը՝ «Ծիծեռնակը բույն է շինում»: Սպիտակցիները հիշում են այդ երգի տողերը: Գիտեն, որ ծիծեռնակը ամեն մի շյուղ կպցնելիս հիշում է առաջվա բույնը, որ նորը նման լինի հնին: Սակայն իրենք հիշում են հին տունը միայն նրա համար, որ նորը հնի նման չլինի, սարսափում են այդ մտքից: Նրանք, ինչպես նաև օգնության եկած շինարարները, ուզում են այնպես կառուցել, որ նորերը լինեն ամուր, դիմանան արհավիրքին: Ահա թե ինչու Խնկոյան գյուղում կառուցված առաջին տան շահագործման հանձնմանը ներկայացուցիչներ էին եկել տարբեր գյուղերից, շրջկենտրոնից, մայրաքաղաքից:

Պենզացի շինարարները այն կառուցել էին բարձր որակով ու հարմարավետ, որից գոհ մնաց նրա տերը՝ աշխատանքի վետերան Պատվական Մանուկյանի ընտանիքը: Բայց հարմարավետությունը չէր, որ հետաքրքրում էր մարդկանց, այլ սեյսմակայունությունը: Եվ նրանք դրանում համոզվեցին:

Ծիրակամուտ գյուղում հենց առաջին օրվանից աշխատում են «Կրասնոդարագրոպրոմստրոյ» միավորման շինարարները: Նրանք աշխատում են շուրջօրյա, չէ՞ որ պետք է երկու տարում այստեղ իրացնեն 25 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ:

Եվ ահա դրվեց նաև ապագա Սպիտակ քաղաքի առաջին տան հիմնաքարը: Երկրաշարժից հետո շատ տներ են կառուցվել, որոնք ժամանակավոր են: Հենց ապագա քաղաքի տարածքում, Ապարանի կողմից Սպիտակ մտնող խճուղու ձախ կողմի հարթության վրա ամբողջացել է իտալական գյուղը, ուր տեղադրվել են հարյուրավոր բնակարաններ: Բայց այդ օրը՝ մարտի 18-ի հիմնադրվածը ամուր քարե տուն է լինելու, որի նախագծի հեղինակներն են ուզբեկ ճարտարապետները: Ապագա քաղաքի տեղում, որին հատկացված է 484 հեկտար տարածություն, հավաքվել էին շինարարական կազմակերպությունների ներկայացուցիչներ, շրջանի ղեկավարները և, կարող ենք արդեն այսպես անվանել՝ հին սպիտակցիները: Ուզբեկ շինարարները, իրենց սովորության համաձայն, դրամներ են նետում առաջին հիմնաքարի տակ, որ տունը շեն լինի, և բախտավոր լինեն նրա բնակիչները:

Աշխատանքը հունի մեջ է մտել: Նորվեգացիները Սպիտակում հիվանդանոց են կառուցում, չեխերը՝ դպրոց: Ծավալուն աշխատանքներ են թափին ընկել Ռոստովի «Սպիտակագրոարդշին» միավորմանը, որի շինարարները կառուցում են գյուղերը: Հաջող են սկսել աշխատանքը անդրկովկասյան «Խողովակաշարշին» և ԽՍՀՄ նավթի ու գազի շինարարության մինիստրության կազմակերպությունները: Ուզբեկստանի և Էստոնիայի շինարարները հիմնականում զբաղված են Սպիտակ քաղաքի կառուցմամբ: Սկզբում անբավարար էր հանրապետության պետշինի աշխատանքը: Շրջանային շտաբը հարց դրեց այն նույնպես հասցնել դրսից եկած շինարարների կազմակերպվածության մակարդակին:



Դիմում եմ կուսշրջկոմի առաջին քարտուղար Ն. Մուրադյանին.

— Առաջին օրերին, երբ աշխարհի տարբեր երկրներից և Խորհրդային Միության գրեթե բոլոր հանրապետություններից տասնյակ-հազարավոր մարդիկ էին եկել՝ մասնակցելու փրկարարական աշխատանքներին, ստեղծվել էր քաոս: Հիմա էլ շինարարներ են եկել բազմաթիվ վայրերից: Ի՞նչ է արվում, որ նման վիճակը չկրկնվի, և աշխատանքները կազմակերպվեն նպատակասլաց:

— Մեզ մոտ եկած կոմունիստների քանակն արդեն անցնում է 350-ից,— ասում է Ն. Մուրադյանը,— չնայած նրանց աշխատանքը մշտական չէ, բայց ստեղծել ենք կուսկազմակերպություններ, որոնց տրված է հանձնարարություններ կոնկրետ ժամկետներով:

Կուսակցության շրջանային կոմիտեն դարձել է շտաբ: Սկզբում շփոթված էին, նիստեր էին գումարում ամեն օր՝ ժամը 19-ից, որը երբեմն ավարտվում էր լուսադեմին: Ոչ թե հարցերն էին սպառվում, այլ՝ ժամանակը: Հետո սկսեցին հավաքվել շաբաթը երեք անգամ, իսկ հիմա՝ շաբաթը մեկ անգամ՝ դարձյալ երեկոները. քննարկվող պրոբլեմների նախապես արագ ուսումնասիրում, հստակ հարցադրումներ, հակիրճ որոշում, կոնկրետ հանձնարարություններ ու կատարման ժամկետ և ապա՝ զեկույց կատարման մասին: Այդ ոճը հետզհետե կատարելագործվում է:

## ՊՐՈԲԼԵՄՆԵՐ, ՊՐՈԲԼԵՄՆԵՐ...

Ամեն առավոտ վրաններից, յուրտերից, վագոն-տնակներից մարդիկ գալիս հավաքվում են շրջանի ղեկավարների կաբինետ-տնակների շուրջը, սպասում, որ իրենց աշխատանք տան, որևէ գործ հանձնարարեն: Սակայն օրերն անցնում են, իսկ նրանք տակավին պարապ են: Ես հիշում եմ՝ աղետի առաջին ծանր օրերին ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ, ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի նախագահ Նիկոլայ Իվանովիչ Ռիժկովը ավերակների շուրջը հավաքված մարդկանց ոգևորում էր, հույս տալիս, ասում, որ նրանք կանանց, երեխաներին, ծերերին, վիրավորներին ուղարկեն երկրի առողջարաններն ու պանսիոնատները, իրենք մնան այստեղ՝ իրենց տները կառուցելու: Եվ ահա այդ հանդիպումներից ամիսներ հետո նորից այստեղ եմ: Դեռ պարապ է շուրջ 1000 մարդ, մինչդեռ նրանք ուզում են կառուցել իրենց տունուտեղը ու նաև աշխատավարձ ստանալ, չէ՞ որ պետության տված օգնությունը անսպառ աղբյուր չէ: Ավերվել են գործարանների, ֆաբրիկաների, հիմնարկ-ձեռնարկությունների շենքերը, ֆերմաները: Գյուղի մարդկանց մի մասը սկսել է զբաղվել գյուղատնտեսական աշխատանքներով, իսկ մյուս մասը, ինչպես և Սպիտակ քաղաքի ամբողջ բնակչությունը պետք է շինարարությամբ զբաղվի: Սակայն չկան նախագծեր: Քաղբյուրոյի հանձնաժողովը նախագծային կազմակերպություններին բազմիցս հանձնարարություններ է տվել կոնկրետ ժամկետներով, սակայն նախագծերը ուշանում են: Բայց շինարարությունը պետք է առաջ տանել: Պետք է մարդկանց ոգևորել ոչ թե խոստումներով և ապագա ծրագրերով, այլ կատարված աշխատանքի արդյունքներով:

Որո՞նք են այդ արդյունքները: Քաղաքի շրջակա գրեթե բոլոր հարթ տարածությունները ծածկված էին փլվածքներից դուրս տարած աղբով. չէ՞ որ առաջին օրերի նպատակը միայն մարդկանց փրկելն էր: Հետո, երբ սթափվեցին, պարզվեց, որ այդ տարածությունները գյուղատնտեսական հողահանդակներ են ու նաև ապագա Սպիտակի տարածքը: Մեծ ջանքերի գնով դրանք մաքրեցին: Շրջանային շտաբի նիստում նշվեց, որ այդ փլվածքներից առանձնացրել են տասներկու հազար խորանարդ մետր քար և վերամշակման ուղարկել յոթ հազար տոննա մետաղ: Դա շինանյութերի մեծ պաշար է:

Աշխատանք շատ է կատարվել, բոլորը չես թվարկի: Բայց ավելի շատ են պրոբլեմները: Պետք է ծավալել անհատական բնակարանային շինարարություն: Բայց... շինանյութերի խանութներ կառուցել են, իսկ շինանյութեր չկան:

Երկու տարի ժամկետ է տրվել աղետի ենթարկված բնակավայրերի, այդ թվում Սպիտակի ու շրջանի գյուղերի վերականգնման ու կառուցման համար: Բայց հիմա էլ նոր ժամկետ՝ 2—3 տարի: Չկային գլխավոր պատվիրատու և գլխավոր կապալառու, ստեղծվեցին ուշացումով: Տեխնիկայի անբավարարության և աշխատանքի անկազմակերպվածության պատճառով լրիվ չեն մաքրվել փլատակները, և ահա կբարդանա սանիտարահամաճարակային իրադրությունը:

Շրջանային շտաբը առանձնացնում է հարցերը, մի մասի լուծումը հանձնարարում իր ենթակայության կազմակերպություններին, մյուս մասը ներկայացնում վերադաս մարմիններին: Գոնե այս տարվա հանձնվելիք օբյեկտների նախագծերն արագացնեն: ԽՍՀՄ նավթի ու գազի շինարարության մինիստրության Սպիտակում գտնվող շինարարները պետք է ապահովվեն ջրմուղի արտաքին ցանցերի, կոյուղու, ջերմամատակարարման օբյեկտների շինարարությունը: Աշխատում են, սակայն դարձյալ առանց նախագծերի:

Հարկ կա՞ արդյոք նշելու որ երկրաշարժի հետևանքների վերացման գործում գլխավոր հարվածային ուժը ավտոտրանսպորտն ու ճանապարհաշինարարական տեխնիկան է: Քաղբյուրոյի հանձնաժողովի նիստերից մեկում նշվեց, որ հանրապետության աղետի գոտում կան մոտ տասնհինգ հազար միավոր բեռնատար ավտոմեքենաներ, որոնցից զգալի բաժին է հատկացված Սպիտակին: Բայց ահա չկան նորոգման շրջիկ արհեստանոցներ, ախտորոշման միջոցներ, իսկ նորոգման հենակետերը հեռու են գտնվում տեխնիկայի կենտրոնացման վայրերից:

Ուզբեկ բարեկամները ստեղծել են շինարարական բազա, այդտեղ է պատրաստվում բետոնի շաղախը: Նրանք, ինչպես նաև էստոնացիները ապագա Սպիտակում դրել են առաջին քարե շենքերի բետոնյա հիմքերը: Իրենք են պատրաստում նախագծերը, իսկ շենքերի կառուցվածքները կբերեն իրենց հանրապետություններից: Ուզբեկներն այստեղ կկառուցեն 200 հազար, իսկ էստոնացիները՝ 20 հազար քառակուսի մետր բնակտարածություն և այլ օբյեկտներ: Նորից ուշանում են նախագծերը:

Պրոբլեմներ որքան ուզեք. դեռևս ջեռուցման համակարգերի նախագծերը պատրաստ չեն, չեն հերիքում երկաթուղու փակուղային գծերը, չի լուծվում ջրամատակարարման հարցը:

Լուծման կարոտ հարցերը շատ են, բայց պետք է գործել, կառուցել: Երկրաշարժից չորս ամիս հետո պարզվեց, որ Սպիտակի հատակագիծը «Սպիտակյան ծրագիր» անվանումով դարձել է միջազգային պրոբլեմ՝ որպես երկրաշարժի խորհրդանիշ: Ու նոր միայն հայտարարվել է նախագծի մշակման ազգային մրցույթ, ինչպես նաև քաղաքի կառուցապատման մոտահղացումների միջազգային մրցույթ՝ ճարտարապետության միջազգային ակադեմիայի հովանավորության ներքո:

Բայց մի՞թե պրոբլեմները միայն շինարարության ու նորոգման հետ են կապված: Ո՛չ, շատ դժվար է այստեղ առօրյան: Տնակ-առանձնասենյակում զրուցում եմ կուսշրջկոմի առաջին քարտուղարի հետ: Պարզվում է, որ նա ապագա ծրագրի մասին մտածելու ժամանակ քիչ ունի: Անընդհատ գալիս են զանազան հարցերով՝ արտաքուստ մանր թվացող, բայց կենսական և անհետաձգելի: Ջուրը Կիրովականից էին մեքենայով բերում, տասնյակ հազարավոր մարդկանց ջուրը՝ խմելու, ճաշ պատրաստելու, լվացվելու, լվացք անելու, լողանալու: Պետք է կարգավորել առևտրի-կենցաղսպասարկման հարցերը: Էլի՞ հարցեր, խնդրեմ. պետք է օգնել, օժանդակել այն մարդկանց, ովքեր աշխատում կամ աշխատանք են որոնում, ու նաև որոնում հարազատներին: Որտե՞ղ են նրանք՝ տարբեր քաղաքների առողջարաններու՞մ, պանսիոնատներու՞մ, հիվանդանոցներու՞մ, թե՞... քար լռություն է դեռ չքանդված փլատակներում:

## ԵՂԻՑԻ ԼՈՒՅՍ

Մի վագոն-տնակ էր տրամադրված շրջանային «Լուսարձակ» թերթի ու ռադիոյի խմբագրություններին: Ավերվել են խմբագրության ու տպարանի շենքերը: Հիմա իրենց տեղերում են խմբագրությունների աշխատողները: Դե ինչ է մնում՝ ծանոթանալ, ինչպես լինում է սովորաբար, ստեղծել աշխույժ զրույցի տրամադրություն: Սակայն այդպես չէ, պետք է շատ զգույշ լինել: Ամիսներ են անցել, բայց դեռ բորբոքված են վերքերը և նյարդերը ոչ թե թմրում, այլ հետզհետե ավելի զգայուն են դառնում: Թերթի բաժնի վարիչ Արթուր Նալբանդյանը պատմում է.

— Զոհվել են խմբագիր Սմբատ Գալստյանը, նրա տեղակալ Սոնյա Ամիրխանյանը, պատասխանատու քարտուղար Վանուշ Աթանեսյանը, շրջանային ռադիոհաղորդումների խմբագիր Ռուզան Կարապետյանը, հաղորդավար Սիդա Հովսեփյանը, հաշվապահ Ալվարդ Հովակիմյանը:

Դեռ չէին սթափվել ծանր մղձավանջից, երբ կուսշրջկոմը որոշեց, որ թերթը պետք է լույս տեսնի: Պետք է ստեղծել ոչ թե ապրելու պատրանք, այլ հավաստիք, համոզմունք: Օգնության հասան «Ավանգարդի» խմբագրության աշխատողները, Կիրովականի տպարանը:

— Նյութերը պետք է գրեին «Ավանգարդի» տղաները,— ասում է Ա. Նալբանդյանը,— բայց կուսշրջկոմից ասացին, որ հենց առաջին համարի որևէ նյութի տակ պետք է մարդիկ տեսնեն խմբագրության աշխատողներից գոնե մեկի ստորագրությունը: Ես ի վիճակի չէի գրիչ բռնել, բայց կուսշրջկոմում նորից համոզեցին, որ դա խիստ անհրաժեշտ է:

Թերթն սկսեց լույս տեսնել նախկինի կեսի չափ՝ երկու էջով: Իսկ ռադիո՞ն... կուսշրջկոմի պրոպագանդայի բաժինն սկսեց բարձրախոսով հաղորդումներ կազմակերպել շրջկենտրոնում: Հետո նշանակվեց նոր ռադիոխմբագիր: Նյութերը պատրաստում են, ձայնագրում և շրջիկ մասնագիտացված մեքենայով հաղորդում մարդաշատ վայրերում: Օգտագործվում են ծայրագույն հնարավորությունները կյանքը նորմալ հունի մեջ դնելու համար: Ի՞նչ են տպագրում, ի՞նչ են հաղորդում: Ահա մի հատված ռադիոյի առաջին նյութից, որի հեղինակն է առանց դպրոցի և առանց աշակերտների ուսուցչուհի, ներկայումս ռադիոխմբագիր Մելանյա Մաթևոսյանը: «Աղետի չորրորդ օրն էր: Ավերված քաղաքը մռայլ էր, արցունքոտ: Մարդիկ միանման էին: Դեմքերին ահավոր սարսափ էր, ու հոգիները՝ խռովված: Ապրելու հույս կա՞ր, չգիտեի: Քայլերս տարան այն կողմը, որտեղ մարդիկ ավելի շատ էին: Վրանում շարժվելու տեղ չկար, երբեմն հորդորող, երբեմն հրամայական մի ձայն էր թագավորում այնտեղ: Ձայնը կանացի էր ու ծանոթ: Ինձ թվում էր, թե սպիտակցին ուժ չի ունենա աշխատելու: Երկար չտևեց տատանումս ու տեսա ձայնի տիրոջը՝ քաղխորհրդի գործկոմի նախագահի տեղակալ Ասյա Դավթյանին: Կայծակի արագությամբ մտքովս անցավ՝ մենք ապրում ենք, մենք պետք է ապրենք:

Աչքերիս առջև դարերից եկող հայ կնոջ կերպարն էր, իսկական կոմունիստի կերպարը: Վրանից դուրս գալուց առաջ մտածեցի, որ եթե երբևէ մտնեմ դասարան, անպայման աշակերտներիս կպատմեմ իսկական մարդու մասին, որը, ինչպես ժողովուրդն է ասում, սևը ներսն էր արել, սպիտակը՝ դուրս: Եվ թող աշակերտներս հավատան նրա նման, չէ որ հավատը նաև բարոյական ուժ է:

Այսօր արդեն չմոռացվող ու տանջալից օրեր են անցել, քաղաքը քիչ-քիչ շունչ է քաշում, քաղաքն ապրում է... Քայլերս դարձյալ տանում են այն կողմը, որտեղ մարդիկ շատ են: Հեռվից էի նայում այդ անկյուն մտդուն ու լսում ձայնը, որը մեկ խորհրդատու էր, մեկ հորդորող: Վիշտը ակոսներ էր դրոշմել դեմքին: Աչքերը թախծոտ էին ու մտախոհ, բայց անկյուններում լույս կար...»:

Լույս... Ամենակարևորը ռադիոյի խմբագրի և այս դիմանկարի հեղինակի՝ Մելանյա Մաթևոսյանի համար, որը փլատակներից փրկվելուց հետո նոր իմաստով ընկալեց լույսը, ընկալեց այնպես, ինչպես դարերի խորքից եկող մարգարեությունը՝ եղիցի լույս...

... Մի փոքրիկ լույս, մի փոքրիկ հավատ: Ընդամենը սրանք էին Սպիտակի նոր պատմության հիմքը: Շռայլ լույսը, մեծ և ամուր հավատը հետո եկան, եկան և ամրապնդեցին այդ պատմության հիմքը, որի վրա հիմա խարսխվում են և՛ տուններ, և՛ փաբրիկաներ ու գործարաններ: Կամբողջանան դրանք, հասակ կառնեն երեխաները, որ երբևէ թովոացել են մանկապարտեզներում, դպրոցներում ու նաև «Հեքիաթ» պիոներական ճամբարում և գալիք երեխաներին կպատմեն Հին Սպիտակի հեքիաթը: Կպատմեն, թե ինչպես դպրոցների ու մանկապարտեզների փլատակներից հազարավոր երեխաներ հրեշտակների երամներ դարձան ու համբառնեցին երկինք... Նրանց երգեր կձոնվեն, և կգրվեն տխուր-տխուր զրույցներ, որոնք կմիաձուլվեն Նոր Սպիտակի լուսեղեն պատմությանը:

---

# ԱՅՎԱԶՈՎՍԿՈՒ ՖԵՆՈՄԵՆԸ

## I. ԱՅՎԱԶՈՎՍԿԻՆ ԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ

1835 ԹՎԱԿԱՆԻՆ տասնութամյա ակադեմիական Հովհաննես (Իվան) Հայվազովսկու հետ (նկարիչը 1841 թվականին փոխեց իր Հայվազովսկի ազգանունը՝ Այվազովսկու, բարեհնչունության համար, իսկ գլխավորը՝ նախնիների ազգանունը՝ Այվազյան, վերականգնելու նպատակով) դժբախտություն պատահեց։ Նրան՝ Պետերբուրգի գեղարվեստի ակադեմիայի սանին, բարձրագույն հրամանագրով օգնական կարգեցին ֆրանսիացի նկարիչ Ֆիլիպ Տաններին, որ հաստատվել էր մայրաքաղաքում։

Տանները Այվազովսկուն ուղարկում էր պետերբուրգյան տեսարաններ ընդօրինակելու, որոնք նրան անհրաժեշտ էին մեծաքանակ պատվերները կատարելու համար։ Նա պատանուն հանձնարարում էր ներկեր պատրաստել, մաքրել ներկապնակը։ Կյանքն անտանելի դարձավ։ Բայց մի օր երիտասարդ նկարչին իր մոտ է կանչում գեղարվեստի ակադեմիայի պրեզիդենտ Ալեքսեյ Նիկոլաևիչ Օլենինը, որն առանձնահատուկ հույսեր էր կապում Այվազովսկու հետ, և նրան առաջարկում նկարել ծովային տեսարան։ Տաններից գաղտնի Այվազովսկին նկարեց «Օդը ծովի վրա» էտյուդը, որը ներկայացվեց ակադեմիական ցուցահանդեսում և առաջ բերեց դիտողների հիացմունքը։ Ակադեմիան պատանի ծովանկարչին արծաթե մեդալ շնորհեց։

Մոլեգնած Տանները գանգատվեց Նիկոլայ Առաջինին։ Նա լավ էր որոշել հարվածի ուղղությունը։ Ռուսական կայսրը պահանջում էր, որ իր պետության մեջ ստորադրյալները անառարկելիորեն կատարեն իրենց պետերի կամքը, և դաստիարակին առանց տեղյակ պահելու նկարելը գնահատեց իբրև ենթակայության և կարգապահության խախտում։

Ցարի կարգադրությամբ նկարը հանվեց ցուցահանդեսից։ Այվազովսկու դրությունը դարձավ վտանգավոր. նրա վրա ծանրացել էր ցարի անբարյացակամությունը։ Լուրը տարածվեց Պետերբուրգի լուսավորյալ շրջաններում։ Պատանի նկարչին իր աղքատ խցում առաջինը մխիթարելու եկավ Վասիլի Ժուկովսկին։ Նշանավոր բանաստեղծը փորձեց բարեխոսել ցարի մոտ շնորհազրկված ակադեմիականի համար, բայց Նիկոլայ Առաջինը ցասումով կտրեց նրա խոսքը։

Ժուկովսկուց անմիջապես հետո գեղարվեստի ակադեմիայում հայտնվեց Իվան Անդրեևիչ Կռիլովը։ Ամբողջ կյանքում Այվազովսկին հիշում էր այն խոսքերը, որոնցով Կռիլովը դիմեց իրեն. «Ե՛կ, ե՛կ ինձ մոտ, սիրելիս... Ես տեսել եմ քո նկարը ցուցահանդեսում. ի՜նչ լավն է, հրա՜շք։ Ծովի ալիքներն իմ հոգին առան ու բերեցին քեզ մոտ, գովելի՛դ իմ...»։

Իսկ դրանից շատ չանցած Այվազովսկուն ցարի մոտ պաշտպանեց արքայական ընտանիքի մերձավոր, գեղարվեստի ակադեմիայի պրոֆեսոր Ալեքսանդր Իվանովիչ Զաուերվեյդը, որը վտանգելով սեփական դիրքը, կարողացավ Նիկոլայ Առաջինին ապացուցել արվեստում իր առաջին քայլերն անող նկարչի անմեղությունը։

Շնորհազրկումն ավարտվեց։ Ամբողջ վերապրածից հետո պատանի Այվազովսկին ներքուստ վերափոխվեց։ Նա հասկացավ, որ կարճ ժամանակում վաստակել է հայրենիքի իսկական զավակների բարեհաճությունը։ Ավելի ու ավելի հաճախ էին նրան հրավիրում Օլենինը և Տոմիլովը։ Օլենինի սալոնը հայտնի էր նրանով, որ այնտեղ հավաքվում էին մայրաքաղաքի ամենաուսյալ անձինք, և Օլենինների մոտ հրավիրված լինելը համարվում էր պատիվ։ Սակայն Այվազովսկուն ավելի շատ ձգում էր Տոմիլովը։ Ալեքսեյ Ռոմանովիչ Տոմիլովը պատանի հասակից հրապուրվել էր գեղեցիկ արվեստներով։ Ամբողջ կյանքի ընթացքում նա հավաքում էր կտավներ, նկարներ, գրավյուրներ, քանդակներ, գրքեր։ Նրա գեղարվեստական ընտրանին լայնորեն հայտնի էր. այդ հավաքածուում կային անտիկ մարմարիոն, եվրոպական վարպետների ստեղծագործություններ։ Միայն Ռեմբրանդտը ներկայացված էր 334 օֆորտներով։ Ռուսական արվեստից այնտեղ կային Ա. Լոսենկոյի, Ա. Եգորովի, Ֆ. Ռոկոտովի, Վ. Բորովիկովսկու, Օ. Կիպրենսկու, Ս. Շչեդրինի և այլոց ստեղծագործությունները։ Այվազովսկին Տոմիլովի տուն մուտք գործեց Պետերբուրգ ժամանելուն պես։ Նա իր հետ Ղրիմից հանձնարարական նամակ էր



բերել և անմիջապես ընդունվեց ամենայն սիրալիրությամբ։ Արքայական անբարեհաճության մի քանի ամիսներից հետո, երբ Այվազովսկին խուսափում էր հասարակությունից, նա նորից վերադարձավ բարի, լուսավորյալ տանտիրոջ հյուրընկալ հարկի տակ, արվեստի դյութիչ կերտվածքների մոտ, որոնց այնքա՜ն կարոտել էր։

Անսպասելիորեն մի ուրախալի իրադարձություն մոռանալ տվեց մնացած ամեն ինչ։ Տասնչորսամյա բացակայությունից հետո Պետերբուրգ վերադարձավ Կարլ Պավլովիչ Բրյուլովը, որը լեգենդ էր դարձել տակավին կենդանության օրոք, հատկապես իրեն դաստիարակած ակադեմիայի պատերի ներսում։ Դեռևս չէին մոռացվել 1834 թվականի օգոստոսյան օրերը, երբ ակադեմիայի անտիկ դահլիճում ցուցադրվում էր օտար ափերից բերված «Պոմպեյի վերջին օրը» կտավը։

Այն ժամանակ Այվազովսկին մի ամբողջ շաբաթ ամեն օր հայտնվում էր շլացուցիչ նկարի առջև։ Եվ ամեն անգամ նա ստիպված էր մի ակնթարթ փակել աչքերը, նրան ասես կուրացնում էին կայծակների ֆոսֆորային փայլատակումներն ու հրաբխի բոսորագույն հրացոլքը մրրկալի երկնքի ֆոնին։ Բոլորը հափշտակված կարդում էին Բրյուլովի նկարի մասին Գոգոլի գրած հոդվածը, ուր գրողը Բրյուլովի կերտվածքը Միքելանջելոյի և Ռաֆայելի ստեղծագործություններից վեր էր դասում։

Եվ այժմ, ահա, նա հանդիպելու էր հենց իր՝ «Պոմպեյի վերջին օրը» արարողի հետ։ Այդ տոնը կայացավ 1836 թվականի հունիսի 11-ին։ Ակադեմիայում էր հավաքվել ողջ ստեղծագործական Պետերբուրգը՝ պրոֆեսորներ, գեղանկարիչներ, պատվավոր հյուրեր, ակադեմիականներ։

Շուտով Բրյուլովը դարձավ արվեստի ակադեմիայի պրոֆեսոր, դիմանկարի և պատմական դասարանների ղեկավար։ Գեղանկարիչը մարդամոտ էր։ Նրա արվեստանոցում լինում էին Պուշկինը, Գլինկան, Ժուկովսկին, Վենեցիանովը, ինչպես նաև ակադեմիականներ։ Բրյուլովն իրեն մերձեցրեց Այվազովսկուն։ Նա սիրում էր կրկնել. «Ուրվագծել պետք է իմանալ նախքան գեղանկարիչ լինելը, քանզի գծանկարը գեղանկարի հիմքն է. մեխանիզմը անհրաժեշտ է զարգացնել վաղ տարիքից, որպեսզի գեղանկարիչը, սկսելով խորհել և զգալ, հաղորդի իր մտքերը ճիշտ, առանց որևէ դժվարության, որպեսզի մատիտը վազի մտքի կամոք. միտքը փոխվում է՝ մատիտը ևս պետք է շրջվի... Էլ միջոց չի լինի սովորելու, երբ կգա ստեղծելու ժամանակը։ Մի կորցրեք ոչ մի օր առանց ձեռքը հնազանդության վարժեցնելու։ Արեք մատիտի հետ նույնը, ինչ անում է իսկական արտիստը կնտնտոցի, ձայնի հետ՝ այն ժամանակ միայն կարելի է դառնալ ըստ ամենայնի գեղանկարիչ»։ Այվազովսկին համապատասխանում էր այս իդեալին։ Դեռ նկարչի մանկության օրերին թեոդոսիացի ճարտարապետ Կոխը՝ Այվազովսկու առաջին ուսուցիչը, կրկնում էր իր աշակերտին. «Դու պետք է իմանաս, որ կերպարվեստում սկզբնականը գծանկարն է։ Գծանկարը նախորդում է ներկերով գեղանկարչի զբաղվելուն»։ Եվ երբ մի քանի տարի անց Այվազովսկու գծանկարները ուղարկվեցին Պետերբուրգ՝ նրան գեղարվեստի ակադեմիայում տեղավորելու համար, պրեզիդենտ Օլենինը հիացած էր «իսկապես շնորհալի երեխա Հայվազովսկու» նկարելու հմտությամբ։

Ինչ վերաբերում է ակադեմիականներին ուղղված պրոֆեսոր Բրյուլովի կոչին՝ մշտապես վարժվել, ապա Այվազովսկու աշխատասիրության մասին ակադեմիայում շրջում էին անեկդոտ հիշեցնող պատմություններ։ Իր կյանքի ընթացքում մեծ ծովանկարիչը վրձնել է վեց հազարից ոչ պակաս կտավ, իսկ դա հնարավոր է միայն աշխատանքով, «ոչ մի օր» չկորցնելով։

Սակայն կար մեկ հանգամանք, թերևս, ամենաէականը, որը Բրյուլովին տրամադրում էր Այվազովսկու նկատմամբ։ Աշակերտական այն սակավ աշխատանքներում արդեն, որ տեսել էր Բրյուլովը, առանձնապես ծովային փոթորիկների պատկերներում, ակադեմիայի նոր պրոֆեսորը ուշադրություն դարձրեց մարդու և տարերքի գոտեմարտին։ Առաջին պահին դա կարող էր թվալ «Պոմպեյի վերջին օրվա» ազդեցության հետևանք, բայց Բրյուլովի խորաթափանց հայացքը նկատեց ոչ թե պարզ ընդօրինակություն, այլ յուրօրինակ աշխարհընկալում։ Բրյուլովն իսկույն ճանաչեց իր համախոհին։ Եվ նա իրեն մոտեցրեց Այվազովսկուն։

Պատանի ծովանկարչի համար սկսվեց նոր կյանք։ Ամեն անգամ նա Բրյուլովի արվեստանոցն էր մտնում որպես սրբավայր։ Այստեղ օրեցօր ոչ միայն արարվում էր արվեստի հրաշքը, այստեղ տանտերն ինքը և իր լուսավորյալ հյուրերը խորհրդածում էին գրականության, թատրոնի, երաժշտության շուրջ։ Այվազովսկու միտքը կրթվում էր, ներաշխարհը՝ հարստանում։ Կերպարվեստ սովորող սկսնակ ակադեմիականը դառնում էր գեղանկարիչ։

Այդ տարի տեղի ունեցավ ևս մեկ իրադարձություն, որն իր լույսը սփռեց Այվազովսկու ամբողջ կյանքի վրա։ 1836 թվականի սեպտեմբերի 27-ին ակադեմիայում բացվեց աշնանային ցուցահանդեսը, որը հույժ ներկայացուցչական էր. ցուցադրված էին Ա. Իվանովի «Քրիստոսի հայտնությունը Մարիամ Մագդաղինացուն», Կիպրենսկու դիմանկարները, Վորոբյովի և Լեբեդևի բնապատկերները, Բրունիի «Պղնձե օձի» նկարները, Պիմենովի «Վեգ խաղացող տղան», Լոգանովսկու «Գամ խաղացող տղան» քանդակները, Այվազովսկու ծովանկարներն ու այլ առաջնակարգ գործեր։ Ցուցահան-

դես այցելեց Ա. Ս. Պուշկինը։ Շատ տարիներ անց Այվազովսկին վերհիշում էր. «... 1836 թ., մահից երեք ամիս առաջ, հենց սեպտեմբերին Պուշկինը, կնոջ՝ Նատալյա Նիկոլաևնայի հետ, եկավ գեղարվեստի ակադեմիա, նկարների մեր սեպտեմբերյան ցուցահանդես։ Իմանալով, որ Պուշկինը ցուցահանդեսում է և անցել է անտիկ սրահ, մենք, աշակերտներս, վազեցինք այնտեղ և խմբով շրջապատեցինք սիրելի բանաստեղծին։ Նա կնոջը թևանցուկ արած կանգնել էր շնորհալի բնանկարիչ Լեբեդևի կտավի առջև ու երկար դիտում, հիանում էր նրանով։ Նրան ուղեկցող մեր ակադեմիայի տեսուչ Կրուտովը, տեսնելով ինձ, բռնեց ձեռքս ու ներկայացրեց Պուշկինին որպես ոսկե մեդալ ստացող (ես այդ տարի ավարտում էի ակադեմիան)։ Պուշկինը շատ բարեհամբույր ինձ դիմեց և հարցրեց, թե՝ որտեղ են նկարներս։ Ես ցույց տվի։ Որքան հիշում եմ, դրանք էին՝ «Ամպերը օրանիենբաումյան ափի մոտ» ու նաև՝ «Ձուխոնցիների խումբը»։ Իմանալով, որ ես ծնունդով Ղրիմից եմ, Պուշկինը հարցրեց. «Իսկ ո՞ր քաղաքից ես»։ Հետո նա հետաքրքրվեց, թե՝ վաղո՞ւց եմ այստեղ ու չե՞մ հիվանդանում, արդյոք, հյուսիսում։ Այն ժամանակ, մեր զրույցի ընթացքում, ես նրան լավ զննեցի և նույնիսկ հիշում եմ, թե ինչ էր հագել նրա գեղեցկուհի կինը։ Մենք, աշակերտներով, թանկագին հյուրերին ճանապարհեցինք մինչև շքամուտք։ Հիմա կարող եմ մատների վրա հաշվել այն մարդկանց, ովքեր հիշում են բանաստեղծին։ Նրանցից շատ քչերն են մնացել, իսկ ես, նույնիսկ, բարեհաճորեն ընդունվել եմ նրա կողմից և հրավեր ստացել քնքուշ ու սիրալիր գեղեցկուհի Նատալյա Նիկոլաևնայից, որը, չգիտես ինչու, նմանություն էր գտնում իր պանծալի ամուսնու երիտասարդ տարիների նկարների ու իմ միջև։

Այդ ժամանակվանից բանաստեղծը, որին ես առանց այդ էլ սիրում էի, դարձավ իմ մտածմունքների, ներշնչանքի, երկար զրույցների ու հարցուփորձերի առարկան...»։

Պուշկինին հանդիպելուց ուղիղ երկու ամիս անց, 1836 թվականի նոյեմբերի 27-ին, Այվազովսկին ներկա էր Գլինկայի «Իվան Սուսանին» օպերայի (որը Նիկոլայ Առաջինի կողմից վերանվանվել էր «Կյանքը ցարի համար») պրեմիերային։ Այդ երեկո բացվեց ռուսական երաժշտության արշալույսը։ Օպերայի մասին խոսեցին, վիճում էին, մերժում, հիանում։ Միխայիլ Գլինկայի ամենամոտ բարեկամը Բրյուլովն էր։ Այվազովսկին աչքի էր ընկնում երաժշտականությամբ, ոգեշնչված ջութակ էր նվագում. առանձնապես լավ էին ստացվում արևելյան մեղեդիները։ Մի անգամ Բրյուլովը Այվազովսկուն տարավ իր բարեկամներ Նեստոր ու Պլատոն Կուկոլնիկների մոտ։ Նրանց տանը հավաքվում էր «միաբանությունը»՝ նկարիչներ, երգիչներ, գրողներ։ Գլինկան հաճախ էր այցելում Կուկոլնիկներին։ Բրյուլովը Այվազովսկուն ներկայացրեց Գլինկային։ Այդ երեկո Այվազովսկին երկարորեն ջութակ էր նվագում, հմայելով նույնիսկ Գլինկային։ Ավելի ուշ իր «Նոթերում» Գլինկան կնշի. «Հայվազովսկին, որ հաճախ էր այցելում Կուկոլնիկին, ինձ երեք եղանակ հաղորդեց. հետագայում դրանցից երկուսը ես օգտագործեցի Լեզգինկայի համար, իսկ երրորդը՝ «Ռուսլան և Լյուդմիլա» օպերայի 3-րդ գործողության Ռատմիրի տեսարանի andante-ի համար»։

Իսկ ավարտվում էր այդ տարին Այվազովսկու համար հաղթանակով։ «Художественная газета»-ում տպագրվեց քննական տեսություն աշնանային գեղարվեստական ցուցահանդեսի մասին։ Այդ տեսության մեջ զգալի տեղ էր հատկացվել Այվազովսկու կտավներին։ Հոդվածը վերջանում էր հետևյալ խոսքերով. «Հայվազովսկու ստեղծագործությունները այժմ ապշեցնում են, խփում են աչքերին։ Խոստովանենք, մենք սպասում ենք, որ դրանք շուտով չեն պարունակի այդքան սուր էֆեկտներ, բայց, դրա փոխարեն, խոր կտպավորվեն դիտողի հոգու մեջ»։ Այս ամենը ասվում էր մի նկարչի մասին, որ հազիվ էր բոլորել իր տասնինը տարին։

Նոր, 1837 թվականը սկսվեց ողբերգությամբ։ Վախճանվեց Պուշկինը։ Այդ օրերին Այվազովսկին, վիշտը խլացնելու համար, հաճախ մեկնում էր Կրոնշտադտ։ Ձմեռային ծովը մոլեգնում էր, անզսպորեն լեռնանում։ Պատանի նկարչի հոգու աղաղակը ձուլվում էր ալիքների շառաչին։ Նա ձեռնամուխ եղավ «Ծովափը գիշերին» նկարին։ Կտավի վրա պատկերված է հենց ծովափին կանգնած մի պատանի, որը ձեռքերն առաջ է մեկնել՝ ողջունելով մոտալուտ փոթորիկը։ Երբ Այվազովսկին նկարը բերեց Բրյուլովին, Կարլ Պետրովիչը երկար դիտում էր այն, իսկ ապա մտասույզ արտասանեց.

Կորավ՝ իր փառքը թողած աշխարհին,
Ազատությունն իր կորուստը սգաց,
Աղմկի՛ր, դու ծով, ծփա՛ զայրագին.
Նա քո երգիչն էր, քեզանով դյութված*։

Բրյուլովը հասկացավ. դա Այվազովսկու առաջին տուրքն էր Պուշկինի հիշատակին։

Շուտով տեղի ունեցան իրադարձություններ, որոնք փոխեցին ակադեմիական Այվազովսկու կյանքի ընթացքը։ Սեպտեմբերին նրան շնորհվեց առաջին աստիճանի ոսկե մեդալ, և գեղարվեստի ակադեմիան բացառիկ հաջողությունների համար Այվազովսկուն երկու տարով ինքնուրույն աշխատանքի ուղարկեց Ղրիմ։ Սակայն դեռ չէր հասցրել ինչպես հարկն է հիմնավորվել հայրենի Թեոդոսիայում, երբ նրա մոտ

* Բանաստեղծությունների թարգմանությունները Ն. Զարյանի։



եկավ Սևծովյան առափնյա գծի պետ գեներալ Ռաևսկին։ Նա առաջարկեց ուղեկցել կովկասյան ափերը՝ հետևելու լեռնցիների դեմ նավատորմի ռազմական գործողություններին և վրձնելու Սև ծովի արևելյան ափերի արտակարգ գեղեցկությունը։

Այդ նավարկության ընթացքում Այվազովսկին ծանոթացավ ու ամբողջ կյանքում մտերմացավ ծովապետներ Մ. Պ. Լազարևի, Պ. Ս. Նախիմովի, Վ. Ա. Կոռնիլովի, Ա. Ի. Պանֆիլովի հետ։ Բայց այդ օրերի ամենամեծ իրադարձությունը ծանոթությունն ու զրույցներն էին Սիբիրից գործող բանակ որպես շարքային փոխադրված աքսորական դեկաբրիստների՝ Օդոևսկու, Լորեռի, Նարիշկինի հետ։ Ռուսական ազատության այդ նահատակները, որ տասնչորս տարվա ընթացքում սաստիկ կարոտել էին կերպարվեստին, երաժշտությանը, թատրոնին, հափշտակված լսում էին Այվազովսկու պատմությունները Բրյուլովի «Պոմպեյի վերջին օրը» կտավի, Գլինկայի օպերայի, «Ռևիզորի» բեմադրության, գեղարվեստի ակադեմիայի վերջին ցուցահանդեսի, Պուշկինի մասին... Տարիներ անց իր «Ինքնակենսագրության» մեջ Այվազովսկին կվերհիշի հանդիպումները դեկաբրիստների հետ։

Ժամանակն արագ է գլորվում։ Անդուլ աշխատանքում սրընթաց անցան ղրիմյան երկու տարիները։ Եկավ Պետերբուրգ վերադառնալու ժամանակը, իսկ այնտեղից գեղարվեստի ակադեմիայի որոշմամբ Այվազովսկին վարպետությունը կատարելագործելու ուղարկվեց արտասահման։

Կարճ ժամանակում Այվազովսկին Եվրոպայի լավագույն ծովանկարչի հռչակ ձեռք բերեց։ Նա շրջագայեց Իտալիայով, եղավ Ֆրանսիայում, Անգլիայում, Հոլանդիայում, Իսպանիայում և այլ երկրներում։ Նրա արտասահմանյան անձնագրում վիզայի հարյուր երեսունհինգ նշում կար։ Այվազովսկին հանդիպումներ ունեցավ բազմաթիվ ականավոր մարդկանց հետ։ Նրան ընդունում էին թագավորների ու մեծատոհմ ազնվականների պալատներում։ Հռոմի պապն ինքը ունկնդրություն տվեց նրան և «Քաոս» նկարի համար պարգևատրեց ոսկե մեդալով։ Բայց ահա թե ինչն է հատկանշականը. ինչպես և ոչ մեկը ռուս նկարիչներից, բարեհամբույր ընդունելություն գտնելով օտար ափերում, Այվազովսկին ռուս մարդկանց շրջապատը գերադասում էր եվրոպական հասարակությունից։ Վենետիկում ծանոթանալով Գոգոլի հետ, այնուհետև Հռոմում այնքան մտերմացավ, որ նրանց անհնար էր բաժանել։ Նույնքան սերտ էին Այվազովսկու կապերը ռուս նկարիչների ամբողջ գաղութի՝ Պետերբուրգի գեղարվեստի ակադեմիայի և գեղանկարիչների խրախուսման ընկերության թոշակառուների հետ, որոնք կատարելագործման էին ուղարկվել Իտալիա։

Հռոմ հասնելուց շատ չանցած Այվազովսկին գրում էր Պետերբուրգ. «Ես տեսա Ռաֆայելի և Միքելանջելոյի գործերը. տեսա Կոլիզեումը, Պողոս-Պետրոս եկեղեցին... Նայելով հանճարների ստեղծագործություններին, զգում ես քո չնչինությունը։ Այստեղ մեկ օրը տարի արժե։ Ես, ինչպես մեղու, մեղր եմ ծծում ծաղկանոցից, որպեսզի տամ իմ շնորհակալ հարկը մայր Ռուսաստանին»։ Այվազովսկին արժանապատվությամբ էր կրում ռուս նկարչի կոչումը։ Ահա թե ինչ էր այդ մասին պատմում «Ինքնակենսագրության» մեջ Իվան Կոնստանտինովիչն ինքը. «1844 թվականի սկզբին ես երկրորդ անգամ մեկնեցի Փարիզ, բայց այդ ուղևորությունն ակամայից պատճառ դարձավ, որ արագացնեմ վերադարձն իմ հայրենիք։ Թերթերից մեկում իմ գալուստից շատ չանցած տպագրված հոդվածում անկոչ բարերար մեկը նկատում է, որ ինձ Ֆրանսիայի մայրաքաղաք է հրապուրել փարիզցիների գրկաբացությունը, սիրալիրությունը ու հոգածությունը... Թերթի հոդվածի տոնից ինձ կարելի էր կասկածել միանգամայն հանցավոր ցանկության մեջ՝ ընդունել ֆրանսիական հպատակություն...»։ Այնուհետև Այվազովսկին ավելացնում է, որ դա դրդեց իրեն «կրճատել արտասահմանում մնալու իմ ժամանակը երկու տարով»։

Պետերբուրգը Այվազովսկուն դիմավորեց որպես հաղթողի։ Նա ընտրվեց ակադեմիկոս (Այվազովսկին գեղարվեստի վեց ակադեմիաների անդամ էր՝ Պետերբուրգի, Հռոմի, Ֆլորենցիայի, Շտուտգարտի, Ամստերդամի, Փարիզի) և կցվեց ծովային գլխավոր շտաբին՝ առաջին գեղանկարչի կոչումով։ Պետերբուրգյան արիստոկրատներն ու ցարն ինքը իրար հերթ չտալով նկարների պատվերներ էին տալիս նրան։ Եվ հանկարծ Այվազովսկին, բոլորի համար անսպասելի, որոշում է ընդունում թողնել Պետերբուրգն ու մշտական բնակություն հաստատել հայրենի քաղաքում՝ Թեոդոսիայում։ Աշխարհահռչակ գեղանկարչի այս վճռում փոքր չէր Վ. Գ. Բելինսկու դերը։ Այվազովսկին Բելինսկուն ծանոթ էր ավելի վաղ, իսկ այժմ, արտասահմանից վերադառնալուց հետո, նրանց կապերն ավելի ամրապնդվեցին։ «... Վ. Գ. Բելինսկին,— գրում էր Այվազովսկին նոյեմբեր 29, 1889 թվակիր նամակում,— ես շատ անգամ հանդիպել եմ Պետերբուրգի գրական շրջաններում և մի քանի անգամ հրավերով այցելել եմ իրեն Լիգովսկայա փողոցում, Ա. Պուշկինի հետ իմ ծանոթությունից տարիներ անց, մահից քիչ առաջ մեծ քննադատի արտասահմանից վերադառնալուց հետո... Անսահման խղճահարություն առաջացրեց իմ մեջ հոգևոր ուժերով ու աշխատանքի տենչով լի և արդեն մահվան դատապարտված այդ մշակը, որը խմբակային թեժ զրույցներում ներշնչում էր ինձ այնքան առաքինի, գեղեցիկ գաղափարներ։

... Ի՜նչ հեռու են այդ օրերը, ինչ շատ բան է փոխվել այն ժամանակվանից, երբ ես Գոգոլի

գակցական միաձուլման» բերումով, հնարավորություն է տալիս նրան մեծ վարպետությամբ պատկերելու Ռուսաստանի ծովային ճակատամարտերը։ Սա փայլուն ապացույցն է այն բանի, որ «արյան կանչից» բացի, գոյություն ունի պատմական-հոգևոր հարազատություն։ (Ի դեպ, այն հետագայում հայ ժողովրդի հետ ազգակցականորեն միաձուլեց հրեա Ֆրանց Վերֆելին)։

Սակայն արվեստում Այվազովսկու տեղը օբյեկտիվորեն որոշելու փոխարեն, որոշ գեղարվեստական թանգարաններում, ինչպես, օրինակ, Թեոդոսիայի պատկերասրահում, նրան վերագրում են բացառապես ռուսական արվեստին, պահոցներից չհանելով Այվազովսկու հայկական սյուժեներով նկարները։ Իսկ Հայաստանի պատկերասրահը Ավազովսկու աշխատանքները լայնորեն ներկայացնում է հայկական կերպարվեստի բաժնում՝ «Բայրոնի այցը Մխիթարյաններին Ս. Ղազար կղզում» կտավից բացի իր տրամադրության տակ չունենալով գեղանկարչի հայկական սյուժեներով այլ ստեղծագործություններ։ Իսկ այդպիսի նկարներ Հայաստանում չկան էլ։ Վաղուց կարելի էր երևանյան հավաքածուից մի քանի ծովանկարներ փոխանակել Թեոդոսիայում գտնվող այնպիսի կտավների հետ, ինչպես «Հայ ժողովրդի մկրտությունը», «Խրիմյան Հայրիկը Էջմիածնի շրջակայքում», «Հայ մարտիկի երդումը» և այլն։ Ավաղ, այս հարցը ոչ ոքի դեռևս չի հուզում, ինչպես և չի հուզում Հայաստանի պատկերասրահում Այվազովսկու ընտրանու անհավատալի բարձիթողի վիճակը։

Եվ միաժամանակ ձայներ են լսվում, մամուլում, ռադիոյով, հեռուստատեսությամբ հաղորդումներ են տրվում Հայաստանում Այվազովսկու թանգարան ստեղծելու մասին։ Ինչպե՞ս են պատկերացնում նման թանգարանի ստեղծումը գործի նախաձեռնողները։ Առայժմ միակ պրոբլեմը շենքն է։ Իսկ հետո՞։ Կմերկացնենք պատկերասրահի դահլիճները, կտավները կտեղափոխենք մեկ այլ կտուրի տակ, ձեռք կբերենք Այվազովսկու էլի մի քանի պատահական նկար, կարևոր չէ՝ բնօրինակներ, քիչ թե շատ վարպետությամբ արված պատճեններ կամ էլ, նույնիսկ, նմանակումներ կլինեն դրանք. կարևորն այն է, որ կստեղծենք մի նոր հիմնարկ՝ ոչ այվազովսկիագետ աշխատակիցների իր հաստիքներով, քանի որ ոչ ոք չի պատրաստել այվազովսկիագետներ՝ ո՛չ պատկերասրահը, ո՛չ էլ Հայաստանի գիտությունների ակադեմիայի արվեստի ինստիտուտը։ Արտասահմանյան ուղևորություններ կատարելու հնարավորություն կստեղծվի, և դրանց արգասավորությանը հավասարարժեք կլինի հանրապետության թանգարանային գործիչների և մինիստրության աշխատակիցների այժմյան ճամփորդությունների արդյունավետությանը։

Ավելի քան հինգ տարի առաջ Հայաստանի ղեկավար մարմիններին Այվազովսկու կենտրոնի ստեղծման առաջարկություն արվեց, որը և պետք է նախապատրաստեր Այվազովսկու պրոֆեսիոնալ թանգարանի կազմակերպումը։ Մշակվեց կենտրոնի ծրագիրը, որը պաշտպանեց Հայաստանի ԳԱ արվեստի ինստիտուտը։ Սակայն կենտրոնի փոխարեն Այվազովսկու թանգարանի ստեղծման որոշում ընդունվեց։ Այդ որոշումը ուժի մեջ է...

Այվազովսկին բացառիկ երևույթ է համաշխարհային կերպարվեստում, բոլորի կողմից ճանաչված լավագույն եվրոպական ծովանկարիչը XIX դարում։ Նա ռուսական արվեստի հպարտությունն է։ Նա թանկ է հայ ժողովրդին։ Հիշենք գեղարվեստական գործունեության 50-ամյա հոբելյանի կապակցությամբ Պետերբուրգի հայերի կողմից Այվազովսկուն մատուցված ուղերձի խոսքերը. «Դուք մարմին ու արյուն եք ստացել հայ ժողովրդից... Դուք միշտ եղել եք այն ժողովրդի հպարտությունը, որի ծոցից ելել եք»։

Սրան հենց պետք է հավատարիմ մնանք և, պահպանելով նրա գեղարվեստական ժառանգությունը՝ արժանին մատուցենք մեծ գեղանկարչին։ 1992 թվականին, երեք տարի հետո, լրանում է Այվազովսկու ծննդյան 175-ամյակը։ Լավ կլինի հոբելյանի օրերին այցելել Երևանում կանգնեցված Այվազովսկու արձանին ու խոնարհվել նրան։

**ԼԵՎ ՎԱԳՆԵՐ**

Հանձնվել է շարելու 26.06.89 թ.։ Ստորագրվել է տպագրելու 18.07.89 թ.։ ՎՖ 06128։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 12 292։ Պատվեր № 818։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.